## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ 1978

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

**ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՈՐՈՇՈՒՄ ԵՆ ԸՆԴՈՒՆԵԼ «ՍԵՎԱՆԱ ԼՃԻ ԲՆԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ԵՎ ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»:**

Որոշման մեջ նշվում է, որ վերջին տարիներս Հայկական ՍՍՀ-ում մի շարք միջոցառումներ են իրականացվել Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման ու ռացիոնալ օգտագործման նպատակով:

Ավարտվում է Արփա գետի հոսքի մի մասը Սևանա լիճ շուռ տալու կառուցվածքների շինարարությունը, կատարվում է ոռոգման սիստեմների վերակառուցում, շահագործման են հանձնվել մի շարք ջրամբարներ ու ջրհան կայաններ, դադարեցվել է Սևանա լճից էներգետիկ նպատակներով ջրի բացթողումը: Սևանա լճի ջրերը աղտոտումից զերծ պահելու համար կառուցվում են Սևան—Հրազդան մագիստրալային կոյուղու կոլեկտորը, մաքրման կառուցվածքներ, կեղտաջրերի հեռացման կոլեկտոր և իրականացվում են այլ միջոցառումներ:

Դրա հետ մեկտեղ որոշման մեջ նշվում է, որ Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և դրանց ռացիոնալ օգտագործման նպատակով իրականացվող միջոցառումները դեռևս անբավարար են լճի էկոլոգիական ռեժիմը վերականգնելու համար:

Սևանա լճի բնական ռեսուրսները պահպանելու և ռացիոնալ օգտագործելու նպատակով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ընդունել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի առաջարկությունը 1979—1985 թվականներին Սևանա լճի ջրի մակարդակի բարձրացումն ու նրա էկոլոգիական ռեժիմի բարելավումն ապահովող ջրամբարներ և այլ ջրատնտեսական օբյեկտներ կառուցելու մասին:

ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությանը հանձնարարված է՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի հետ համատեղ այդ նպատակներով ապահովել համապատասխան ջրամբարների և այլ ջրատնտեսական օբյեկտների կառուցումը:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությանը պարտավորեցրել են՝

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՍՍՀՄ անտառային տնտեսության պետական կոմիտեի, ՍՍՀՄ երկրաբանության մինիստրության, ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրության, ՍՍՀՄ հիդրոօդերևութաբանության և բնական միջավայրի վերահսկման պետական կոմիտեի և մյուս շահագրգռված մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ 1979—1982 թվականներին մշակել Սևանա լճի ավազանի բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կոմպլեքսային սխեմա, դրանում նախատեսելով ջրամբարների, ջրատնտեսական, ձկնատնտեսական և ջրապահպանական օբյեկտների առավել արդյունավետ օգտագործման միջոցառումներ.

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրության և ՍՍՀՄ էներգետիկայի ու էլեկտրիֆիկացիայի մինիստրության հետ համատեղ 1979—1980 թվականներին մշակել ձվադրության վայր հանդիսացող Գավառագետ, Ծակքար, Արգիճի, Վարդենիս, Մակենիս, Մասրիկ, Ձկնագետ և Լիճք գետերի գետաբերանների ափերի ուղղման և ամրացման աշխատանքների համար անհրաժեշտ նախագծային փաստաթղթեր:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի հետ համատեղ մշակել 12 ջրհան կայանների կառուցման նախագծային-նախահաշվային փաստաթղթեր՝ նպատակ ունենալով գործող ջրանցքներին ջուր մատակարարել անմիջականորեն Սևանա լճից և դադարեցնել ջուր վերցնելը ձվադրության վայր հանդիսացող գետերից:

1981—1985 թվականներին իրականացնել հիշյալ գետերի գետաբերանների ափերի ուղղման և ամրացման, ինչպես նաև ջրհան կայանների շինարարության աշխատանքների կոմպլեքս:

ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրությանը հանձնարարված է ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրային տնտեսության և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի պատվերով իրականացնել Որոտան գետի հոսքի մի մասը Արփա գետը շուռ տալու հիդրոտեխնիկական կառուցվածքների կոմպլեքսի, Հերհերի և Հոկտեմբերյան ջրամբարների ու Հրազդան գետի ջրամբարի նախագծումն ու շինարարությունը.

1979 թվականին Սևանի հիդրոէլեկտրակայանի ջրընդունիչը սարքավորել ձկնապաշտպան հարմարանքով, քննության առնել Հրազդան գետի նախագծվող ջրամբարի կառուցվածքների կազմում հիդրոակումուլացնող էլեկտրակայան կառուցելու հնարավորությունը, ի նկատի առնելով այդ էլեկտրակայանի միաժամանակյա օգտագործումը գետի ազատ հոսքի մի մասը Սևանա լիճ շուռ տալու համար:

Որոշումը Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին պարտավորեցնում է մշակել և իրականացնել մինչև 1985 թվականը Սևանա լճի ջրերի աղտոտումը լիովին դադարեցնելու միջոցառումների կոմպլեքս, որի համար ապահովել անհրաժեշտ ջրապահպանական օբյեկտների և կոյուղու կառուցվածքների շինարարությունը, ինչպես նաև մշակել և իրականացնել միջոցառումներ Սևանա լճի ավազանի գետերի ու մյուս ջրամբարների աղտոտումը կանխելու միջոցառումներ:

ՍՍՀՄ պետպլանին հանձնարարված է 1979—1985 թվականների տարեկան պլանների նախագծերում Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի համար նախատեսել կապիտալ ներդրումների հատկացում Սևանա լճի ավազանի ջրապահպանական օբյեկտների կառուցման համար:

ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրությունը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մասնակցությամբ 1979—1981 թվականներին պետք է մշակեն Սևանա լճի ավազանի ձկնաբուծարանները վերակառուցելու նախագծային-նախահաշվային փաստաթղթեր, նախատեսելով մինչև 1985 թվականը բուծման լճակների կարողությունները հասցնել այնպիսի ծավալի, որն ապահովի լճի առավելագույն հագեցումը Սևանի «Իշխանի» կենսակայուն մանրաձկներով:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարված է ապահովել, որ հանրապետության կազմակերպությունները 1981—1985 թվականներին ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրության հետ կնքվող կապալային պայմանագրերով կատարեն ձկնաբուծարանների վերակառուցման աշխատանքները, իսկ ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությանը՝ բուծման լճակներ կառուցել հիշյալ բուծարանների համար:

Որոշմամբ նախատեսված է, որ ՍՍՀՄ երկրաբանության մինիստրությունը 1979—1983 թվականներին հետազոտություններ կկատարի պարզելու ստորերկրյա ջրերի կապը Սևանա լճի հետ՝ նպատակ ունենալով ի հայտ բերել այդ ջրերը ժողովրդական տնտեսության մեջ օգտագործելու հնարավորություններ, առանց վնաս հասցնելու լճի ջրային ռեսուրսներին:

ՍՍՀՄ անտառային տնտեսության պետական կոմիտեն պետք է ապահո-



վի Սևանա լճի ավազանում 7.000 հեկտար տարածության վրա գոյություն ունեցող անտառային տնկարկների վերակառուցման, ինչպես նաև գյուղատնտեսության մեջ չօգտագործվող, բայց անտառատնկումների համար պիտանի 8.000 հեկտար հողատարածությունների անտառապատման աշխատանքների ավարտումը մինչև 1985 թվականը:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարված է ՍՍՀՄ անտառային տնտեսության պետական կոմիտեի հետ համատեղ սահմանել հիշյալ աշխատանքների կատարման հաջորդականությունը, ինչպես նաև ապահովել ժամանակին հողերի հատկացումը այդ նպատակի համար:

ՍՍՀՄ հիդրոօդերևութաբանության և բնական միջավայրի վերահսկման պետական կոմիտեին առաջարկված է ընդլայնել Սևանա լճի հիդրոօդերևութաբանական ռեժիմի ուսումնասիրման աշխատանքները, ի նկատի ունենալով մինչև 1982 թվականը ճշգրտել լճի ջրային հաշվեկշիռը, ինչպես նաև ուժեղացնել վերահսկողությունը լճի և նրա մեջ թափվող գետերի գետաբերանների ջրի որակի նկատմամբ, սկսած 1980 թվականից ձեռնամուխ լինել Սևանա լճի ավազանում մթնոլորտային տեղումները արհեստականորեն ավելացնելու փորձնական աշխատանքների կանոնավոր կատարմանը:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային պարտավորեցրել են Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՍՍՀՄ պետշինի, ՍՍՀՄ հիդրոօդերևութաբանության և բնական միջավայրի վերահսկման պետական կոմիտեի, ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրության, ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրության, ՍՍՀՄ ձկնատնտեսության մինիստրության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր գեոդեզիայի և քարտեզագրության գլխավոր վարչության և մյուս այն մինիստրությունների ու գերատեսչությունների մասնակցությամբ, որոնց ձեռնարկությունները ու կազմակերպությունները գտնըվում են Սևանա լճի ավազանում, մշակել, իսկ ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին՝ 1979 թվականի առաջին եռամսյակում հաստատել Սևանա լճի ջրի առավելագույն մակարդակի որոշման, ջրի որակի պահպանման, նրա ավազանի բնական հարստությունների ռացիոնալ օգտագործման ու վերարտադրության հետ կապված կոմպլեքսային հետազոտությունների անցկացման 1979—1985 թվականների աշխատանքների ծրագիրը:

ՍՍՀՄ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությանը, ՍՍՀՄ հիդրոօդերևութաբանության և բնական միջավայրի վերահսկման պետական կոմիտեին և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առաջարկված է ուժեղացնել վերահսկողությունը Սևանա լճի ավազանի ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և բոլոր ջրօգտագործողների կողմից այդ ավազանի գետերն ու մյուս ջրամբարները թափվող կեղտաջրերի մաքրման պահանջների կիրառման նկատմամբ, իսկ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրությանը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առաջարկված է ուժեղացնել վերահսկողությունը կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների, ինչպես նաև քաղաքացիների կողմից թունաքիմիկատների և հանքային պարարտանյութերի կիրառման սահմանված կանոնների պահպանման և Սևանա լիճ այդ նյութերի թափվելը կանխելու մյուս միջոցառումների իրականացման նկատմամբ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հաստատ վստահություն են հայտնել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը, տեղական կուսակցական, սովետական, գյուղատնտեսական և ջրատնտեսական մարմինները, արդյունաբերական, շինարարական և մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարները, հանրապետության բոլոր աշխատավորները ակտիվ մասնակցություն կցուցաբերեն Սևանա լճի ավազանի ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և դրանք աղտոտումից պաշտպանելու, ինչպես նաև Սևանա լճի եզակի բնական կոմպլեքսի պահպանման միջոցառումների իրականացմանը:

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՍԽՐԱՆՔՆԵՐՈՎ ՄԱՐՄՆԱՎՈՐԵՆՔ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹՅՈՒՆԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նշանակալի հաջողությունների հասավ տասներորդ հնգամյակի երրորդ՝ հարվածային տարում։ Ոգեշնչված ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումներով, սովետական մարդիկ ուժ ու եռանդ չեն խնայում հերոսական գործերով բազմապատկելու մեր մեծ հայրենիքի փառքը։ Երկրում ծավալված սոցիալիստական մրցությունն ամենուրեք նշանավորվում է արժեքավոր նոր նախաձեռնություններով, որոնց նպատակն է բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, բարելավել տնտեսական գործունեության որակական ցուցանիշները, արագացնել արտադրական նոր կարողությունների գործարկումն ու յուրացումը։ Հնգամյակի երրորդ տարվա պլանների և սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարումը համոզիչ ցուցադրում է կոմունիստական կուսակցության վիթխարի կանխագծումները լիովին կենսագործելու սովետական մարդկանց կամքն ու վճռականությունը։

Ավարտվող տարին սովետական ժողովրդի բեղմնավոր աշխատանքի տարի էր, ՍՍՀՄ նոր Սահմանադրության գործողության առաջին տարին, երկրի տնտեսական հզորության հետագա աճի, գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ կատարված նպատակասլաց աշխատանքի տարի, աշխատանք, որին նոր թափ հաղորդեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հուլիսյան պլենումի որոշումները։ Դա կուսակցության ու պետության արտաքին քաղաքական ակտիվ գործունեության տարին է, քաղաքականություն, որ նպատակամղված է միջազգային լարվածության թուլացման հետագա խորացմանը, սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը, խաղաղության ամրապնդմանը։

Սոցիալիստական հասարակարգը հարաճուն էկոնոմիկայի հասարակարգ է՝ զերծ կապիտալիզմի համար անխուսափելի այնպիսի արատներից, ինչպիսիք են ճգնաժամերն ու գործազրկությունը, ինֆլյացիան ու գների անզուսպ աճը։ Վերջին քառորդ դարում մեր երկրի ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպը 2 անգամ ավելի բարձր էր, քան ԱՄՆ-ում, իսկ ՏՓԽ-ի անդամ երկրներում՝ 1,7 անգամ ավելի բարձր, քան «ընդհանուր շուկայի» երկրներում։

Մեր պլանների հիմնական խնդիրը եղել և մնում է նոր հասարակարգի հետագա զարգացումն ու ամրապնդումը, էկոնոմիկայի համակողմանի վերելքի հիման վրա ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացումը։ Առաջնահերթ խնդիրն է՝ բոլոր ուժերը մոբիլիզացնել հնգամյա պլանի և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։ Յուրաքանչյուր ձեռնարկություն և միավորում պետք է անհրաժեշտ ամեն բան անի՝ բարձրացնելու աշխատանքի կազմակերպման մակարդակը, ապահովելու աշխատանքային և տեխնոլոգիական խստիվ կարգապահությունը, յուրաքանչյուր կոլեկտիվում հաստատելու ստեղծագործական մթնոլորտ, որը կնպաստի եղած ռեզերվների լրիվ օգտագործմանը, պլանային առաջադրանքների կատարմանը՝ թե՛ արտադրության ընդհանուր ծավալներով և թե առաջադրված նոմենկլատուրայով ու մատակարարման ժամկետներով։ Պլանները մշակելիս և դրանց կատարման



ընթացքում հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացնել աշխատանքի արտադրողականության աճի, էներգիայի, վառելիքի, հումքի և նյութերի տնտեսման ապահովման վրա, հիմնական արտադրական ֆոնդերի խնայողաբար օգտագործման, արտադրանքի որակի բարելավման, ավելի մեծ արդյունքի ձեռք բերման վրա։

Հանրապետության արդյունաբերությունն արտադրանքի թողարկման և իրացման անցած տասն ամսվա պլանը կատարել է 102,1 տոկոսով։ Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճը կազմել է իրացման առումով՝ 8,7, արտադրության ծավալի առումով՝ 8 տոկոս։

Այժմ հանրապետության 65 արտադրամիավորումների ու ձեռնարկությունների կոլեկտիվներ, ավելի քան 80 հազար բանվորներ արդեն կատարել են հնգամյակի երեք տարվա առաջադրանքները, իսկ երեք հազար առաջավորներ՝ անհատական հնգամյա պլանները։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործման համար ջանք ու եռանդ չեն խնայում նաև մեր հանրապետության գյուղի աշխատավորները։ Կատարված է հացամթերման առաջադրանքը։ Աննախադեպ հաջողության են հասել հանրապետության խաղողագործները։ Պլանով նախատեսված 207 հազարի դիմաց արդեն վերամշակող ու առևտրական կազմակերպություններին է հանձնվել 227 հազար տոննա խաղող։ Այդ ցուցանիշին հանրապետությունը հասել է առաջին անգամ։ Նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է մսի, կաթի, ձվի և բրդի արտադրությունը, ավելացել է անասունների գլխաքանակը։ Առկա հաջողությունները վկայում են, որ Հայաստանի աշխատավորները բարձր ցուցանիշներով կեզրափակեն հնգամյակի երրորդ տարին, լավ նախադրյալներ կստեղծեն գալիք տարվա և ամբողջությամբ վերցրած՝ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Ավարտվող տարին առանձնահատուկ կարևորություն ունեցավ հանրապետության աշխատավորության համար. 1978-ը նշանավորվեց որպես հոբելյանական, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյա տարելից։ Այդ պատմական հոբելյանը նշվեց որպես ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության իսկական տոն։ Համաժողովրդական տոնահանդեսների ապոթեոզը եղավ բոլոր հանրապետությունների ներկայացուցիչների մասնակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստը, որին ներկա էր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ ընկեր Դ. Ֆ. Ուստինովը։ Հանդիսավոր նիստը վերածվեց ռուս ժողովրդի նկատմամբ հայ ժողովրդի սիրո և երախտագիտության վառ ցույցի, նոր ուժով դրսևորեց ՍՍՀՄ ժողովուրդների ինտերնացիոնալ սերտ եղբայրությունը։

Սովետական Հայաստանի աշխատավորները, հայ ժողովուրդը ցնծությամբ և օրինական հպարտությամբ ընկալեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության՝ տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում հայ ժողովրդի ձեռք բերած հաջողությունների համար և ի նշանավորումն Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի՝ Հայկական ՍՍՀ-ն Լենինի շքանշանով պարգևատրելու վերաբերյալ հրամանագիրը։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ հանրապետության աշխատավորներին, բոլոր կոմունիստներին հասցեագրած ջերմ ու սրտառուչ նամակում բարձր են գնահատված հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ջանքերը կոմունիստական շինարարության ճակատում։

Արտահայտելով հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների զգացմունքներն ու խոհերը, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ հայ ժողովուրդը, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները անհուն երախտագիտության իրենց խոսքն են ուղղում կոմունիստների մեծ կուսակցությանը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեին, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նա-

խագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևին՝ Սովետական Հայաստանի, նրա աշխատավոր ժողովրդի նկատմամբ ցուցաբերած նոր, ջերմ հոգատարության համար։

Մեր մեծ հայրենիքում, սոցիալիստական շինարարության ընթացքում իրականացվեց լիակատար կուլտուրական հեղափոխություն։ Ներկայումս հիմնականում ավարտվել է անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթությանը։ Ժողովրդական տնտեսությունն ունի որակյալ կադրեր, որոնք ունակ են գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում լուծելու արտադրության զարգացման ամենաբարդ խնդիրները։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվը կազմում է ավելի քան 35 միլիոն մարդ, դա 48 անգամ ավելի է, քան 1928 թվականին, առաջին հնգամյակի սկզբում։

Հանրապետության ժողովրդական տնտեսության, գիտության, մշակույթի և մյուս բոլոր բնագավառներում այժմ աշխատում են ավելի քան մեկ միլիոն բանվոր-ծառայողներ։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված են բարձրագույն կրթությամբ ավելի քան 130 հազար և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 100 հազար մասնագետ։ Ազգային եկամտի մոտ 70 տոկոսը ստացվում է արդյունաբերական արտադրանքից։

Խոր, որակական տեղաշարժեր են կատարվել երկրի բնակչության սոցիալական կառուցվածքում։ Սովետական հասարակության առաջատար ուժը՝ բանվոր դասակարգն այսօր կազմում է երկրի զբաղված բնակչության երկու երրորդը և իր շարքերում ունի մոտավորապես 75 միլիոն մարդ։ Իրենց գերակշիռ մեծամասնությամբ դրանք կրթված, տեխնիկան իմացող, քաղաքականապես հասուն մարդիկ են, որոնց աշխատանքն իր բնույթով մոտենում է ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքին։ Բանվոր դասակարգին իր սոցիալական դրությամբ և կրթական մակարդակով ավելի ու ավելի է մերձենում կոլտնտեսային գյուղացիությունը։ Այժմ գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված յուրաքանչյուր հինգերորդ մարդը մեխանիզատոր է։ Սովետական մտավորականության ջոկատները իրենց ուժերն ու գիտելիքները նվիրաբերում են ժողովրդի կյանքի բարգավաճմանը։ Սովետական գիտության ու տեխնիկայի փայլուն հաղթանակը եղավ «Սալյուտ—6»—«Սոյուզ» ուղեծրային գիտահետազոտական կոմպլեքսով տևական տիեզերական թռիչքը, որը կատարեցին ՍՍՀՄ տիեզերագնաց օդաչուներ Վ. Կովալյոնոկը և Ա. Իվանչենկովը։

Մեր հանրապետության ողջ հասարակական-քաղաքական կյանքը, ինչպես և երկրում ամենուրեք, տոգորված է կուսակցության XXV համագումարի գաղափարներով։ Կոմունիստների, աշխատավորների բոլոր ջանքերը նպատակամղված են նրա պատմական որոշումների կատարմանը, տասներորդ հնգամյակում երկրի սոցիալական ու տնտեսական զարգացման ծավալուն ծրագրի իրականացմանը։

Կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումները, ՍՍՀՄ նոր Սահմանադրության հռչակումը, համագումարի մշակած կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության կենսագործման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի տիտանական կազմակերպչական ու քաղաքական գործունեությունը, կուսակցական, տնտեսական և կուլտուրական շինարարության, միջազգային հարաբերությունների հարցերի վերաբերյալ ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններն ու ելույթները մշտապես սնում են մասսաների հասարակական-քաղաքական, ստեղծագործական ակտիվությունն ու եռանդը, նրանց մոբիլիզացնում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար։

Հանրապետության կոմունիստները, ողջ աշխատավորությունը գոհունակությամբ ընդունեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի Խոպան խորագիրը կրող հուշագրությունը, որը լայնորեն ուսումնասիրում են արտադրական կոլեկտիվներում, քաղաքական ուսուցման ցանցում, ուսումնական հաստատություններում։ Այս բովանդակալից ու խորիմաստ պատումում արտացոլված են խոպանի նվաճման հերոիկան, նոր հողերի յուրացման գործում կուսակցության ու ժողովրդի պատմական սխրանքը։



Ողևորիչ են Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերն ընթացիկ հնգամյակում։ Հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալը կմեծանա 43—47 տոկոսով, գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ 22—24 տոկոսով, կիրականացվի մեծ ծավալի կապիտալ շինարարություն, է՛լ ավելի կբարելավվեն աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանները, զգալիորեն կբարձրանա բնակչության բժշկական սպասարկման մակարդակը, լայնորեն կզարգանան ժողովրդական կրթությունն ու կուլտուրան, որը կնպաստի նոր մարդու հետագա համակողմանի ձևավորմանը, նրա ներդաշնակ զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը։ Տասներորդ հնգամյակի կարևորագույն արդյունքը կհանդիսանա աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացումը։

Ընթացիկ հնգամյակում հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերը, մասշտաբային ու բազմապլան խնդիրները, դրանց որակապես նոր բնույթը, բնականաբար, պահանջեցին և պահանջում են աշխատանքի որակի հետագա բարձրացում կենսագործունեության բոլոր ոլորտներում, էկոնոմիկայի ղեկավարման կատարելագործում, քաղաքական և կազմակերպչական աշխատանքի ոճի ու մեթոդների լիովին համապատասխանեցում ծառացած խնդիրների մակարդակին։

Տնտեսական և սոցիալական զարգացման գործում հանրապետության հաջողություններն ապահովվում են Հայաստանի կոմունիստական կուսակցության՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ու կոփված ջոկատներից մեկի, կազմակերպչական, գաղափարաքաղաքական մեծ աշխատանքով։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունը շատ բան է անում բարձրացնելու մասսաների ակտիվությունն ու նախաձեռնությունը, նրանց մոբիլիզացնում կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության ողջ կուսակցական կազմակերպության գործունեությունն ըստ արժանվույն է գնահատվում կուսակցության Կենտրոնական կոմիտեի կողմից, արժանանում նրա մշտական աջակցությանը։

Միայն վերջին երեք տարում ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունել են մի շարք կարևոր որոշումներ, որոնք նպատակամղված են մեր հանրապետության զարգացման ամենահրատապ հարցերի լուծմանը, նպաստելով տնտեսական և կուլտուրական շինարարության գործի հետագա բարելավմանը։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, հանրապետությունում ոռոգելի հողագործության ընդլայնման և նրա արդյունավետության բարձրացման, Երևան քաղաքում մետրոպոլիտենի կառուցման, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու և նրա վերապրոֆիլացման մասին հայտնի որոշումները դրա վառ ու համոզիչ վկայությունն են։ Այդ իրոք պատմական փաստաթղթերը ուղղված են տնտեսական, սոցիալական, դեմոգրաֆիական, էկոլոգիական բնույթի լայն մասշտաբի պրոբլեմների լուծման նպատակին և անգնահատելի նշանակություն ունեն։

Այդ ծրագրային փաստաթղթերում ճշտորեն ու գիտական հիմնավորվածությամբ սահմանված է հանրապետության սոցիալական և տնտեսական հետագա զարգացման ուղղությունը, նախատեսված են ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի կառուցվածքի բարելավման ռեալ նախադրյալները, դրանք հստակորեն սահմանում են տնտեսական շինարարության առաջնահերթ խնդիրները, հնարավորություն են ընձեռում՝ լուծելու սոցիալական բնույթի մի շարք հանգուցային պրոբլեմներ, նպատակամղված են հանրապետության նյութական և աշխատանքային ռեսուրսների առավել խնայողական և ռացիոնալ օգտագործմանը, բնության և շրջակա միջավայրի պահպանությանը, հանրապետության աշխատավորների նյութական և հոգևոր կյանքի հետագա ծաղկմանը։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ընդունեցին ևս մի բացառիկ կարևոր, հիրավի պատմական որոշում՝ «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին»։ Այդ որոշմամբ որակապես նոր, կոմպլեքսային լուծում է ստանում Սևանի պրոբլեմը։ Խնդիր է դրվում բարձրացնել լճի ջրի մակարդակը, այն հաշվով, որ վերականգնվի նրա էկոլոգիական ռեժիմը։ Լայն ճակատով աշխատանքներ կկատարվեն ավազանի բնական հարստությունների վերարտադրությունն ապահովելու, լիճը Սևանի «Իշխան» ձկան տեսակով հարստացնելու, լճափերն անտառապատելու և լիճը աղտեղությունից զերծ պահելու նպատակով։

Շեշտելով կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորների ձեռք բերած հաջողությունները, հարկ է ասել, որ մենք կարող էինք ավելի մեծ նվաճումների հասնել, ավելի լավ ցուցանիշներ ունենալ, եթե ավելի լրիվ օգտագործեինք ունեցած բոլոր հնարավորությունները, ժողովրդական տնտեսության առանձին օղակներում տեղ չգտնեին մեր աշխատանքին խանգարող լուրջ թերություններ և վրիպումներ, եթե մեր կենսագործունեության բոլոր բնագավառներում հաստատվեին ավելի մեծ կազմակերպվածություն և կարգ ու կանոն։

Նոր հաջողությունների գրավականը հանձնարարված գործի, պլանային առաջադրանքների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման նկատմամբ պատասխանատվության գիտակցումն է յուրաքանչյուր աշխատողի, կոլեկտիվի, սկզբնական կուսակցական կազմակերպության կողմից։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունն իր խնդիրն է համարում քաղաքական և տնտեսական բոլոր հնարավորությունների լիակատար օգտագործման, սոցիալիստական մրցության լայն ծավալման միջոցով հասնել հանրապետության բոլոր աշխատավորների ջանքերի մոբիլիզացմանը՝ հնգամյակի առաջիկա երկու տարվա տնտեսական զարգացման պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անշեղ կատարման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հետևողական բարձրացման համար։

Քաջ գիտակցելով, որ մեր հանրապետությունը ՍՍՀՄ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղկացուցիչ մասն է, մենք պետք է անշեղորեն ապահովենք մյուս տնտեսական շրջանների նկատմամբ մեր մատակարարումների պլանների անվերապահ և ժամանակին կատարումը։

Անհրաժեշտ է ի հայտ բերել և արագ վերացնել եղած թերությունները, ամենուրեք բարձրացնել կարգապահությունը, հետևողականորեն անողոք պայքար մղել ամեն կարգի բացասական դրսևորումների դեմ։ Մեր խնդիրն է բոլոր կադրերին դաստիարակել կուսակցական սկզբունքայնության, ձեռք բերված արդյունքների նկատմամբ քննադատական վերաբերմունքի ոգով։ Հասնել այն բանին, որ նրանք տիրապետեն աշխատանքի լենինյան ոճին, ղեկավարման արվեստին, աշխատեն ստեղծագործաբար, նախաձեռնությամբ, գտնեն մեր զարգացման բարդ խնդիրների լուծման նոր մեթոդներ ու եղանակներ, ավելի համարձակորեն հրաժարվեն աշխատանքին խանգարող հնացած մեթոդներից, որ նրանց պրակտիկայից լիովին բացառվեն բարեհոգության և գոռոզամտության դրսևորումները։

Այսօր կուսակցությունը նոր ուժով է առաջադրում աշխատանքի բոլոր տեղամասերում պահանջկոտությունը բարձրացնելու, մեր առաջընթացին խանգարող ամեն բանի նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունք ցուցաբերելու, ընդհանուր գործի շահերի համար այնպիսի մի հզոր զենք լիովին օգտագործելու խնդիրը, ինչպիսին են քննադատությունը և ինքնաքննադատությունը։

Այս տարվա սեպտեմբերին Բաքու քաղաքում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը հատկապես շեշտեց. սովետական մարդիկ անհաշտ են այնպիսի երևույթների նկատմամբ, որոնք մեզ խանգարում են առաջ ընթանալ, ժողովրդին ու պետությանը խաբելու բոլոր ձևերի նկատմամբ։ Նրանք խիստ են վերաբեր-



վում նման փաստերին, և դա լավ է։ Աշխատավորների քննադատական ահազանգումներին անհրաժեշտ է ամենալուրջ նշանակություն տալ։ Եվ կուսակցության ու ժողովրդի շահերի համար չկա ավելի վնասակար բան, քան թերությունները սքողելու փորձերը, արդարացի քննադատությունից խույս տալը, այն լռության մատնելը, մանավանդ՝ քննադատության ճնշելը, քննադատությամբ հանդես եկողներին հետապնդելը։ Ցավոք, նման երևույթների դեռևս հանդիպում ենք։ Կուսակցության ու պետության ղեկավարի այս դիտողությունն ունի սկզբունքային նշանակություն։ Վերջին հաշվով դա մեր հասարակական զարգացման, մեր առջև ծառացած կոմունիստական շինարարության մեծ խնդիրների լուծման համար առավել բարենպաստ պայմանների ստեղծման հարցն է։

Հանրապետությունում հաջողությամբ անցան սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները։ Արդ հաջողությամբ են ընթանում կուսակցության քաղաքային ու շրջանային կազմակերպությունների կոնֆերանսները։ Անշուշտ, դրանք չափազանց կարևոր իրադարձություն են ո՛չ միայն կուսակցական կազմակերպությունների, այլև աշխատանքային կոլեկտիվների, ողջ կուսակցության կյանքում։ Հաշվետու-ընտրական ժողովները, կոնֆերանսները վկայում են, որ կոմունիստները հանգամանորեն քննարկում են հաշվետու ժամանակաշրջանում կուսկազմակերպությունների, նրանց կոմիտեների, բյուրոների ու քարտուղարների կատարած աշխատանքը, պատշաճ շահախնդրությամբ վերլուծում արտադրության կուսակցական ղեկավարման, քաղաքական-գաղափարական և կուսակցական-կազմակերպական աշխատանքի հարցերը, սահմանում առաջիկա խնդիրները։

Մեր երկրում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի տնտեսական և քաղաքական գլխավոր արգասիքը զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումն է, աշխարհում առաջին համաժողովրդական պետության ստեղծումը։ Մեր կյանքում հաստատված սոցիալական հավասարության և արդարության սկզբունքները դարձել են այն զորեղ կռվանները, որոնց վրա խարսխվում է մեր դեմոկրատիան։ Բոլոր քաղաքացիների, դասակարգերի ու սոցիալական խմբերի քաղաքական հավասարությունը, պետական և հասարակական գործերի կառավարմանը մասնակցելու նրանց իրավունքը իրողություն են, մեր հասարակարգի ռեալ նվաճումը։ Սոցիալիզմն օրենսդրորեն և գործնականորեն ապահովում է մարդու աշխատանքի իրավունքը։ Սովետական մարդկանց կյանքում արմատավորվել են յուրաքանչյուրի հանգստի, առողջության պահպանման իրավունքը, ծերության ժամանակ, հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովության, կրթության, բնակարանի և այլ իրավունքներ։

Սոցիալիստական հասարակարգի մեծագույն նվաճումներից են մեր երկրի ազգերի և ազգությունների իսկական հավասարությունն ու բարեկամությունը, որոնք զոդված են արմատական շահերի, գաղափարախոսության, նպատակի միասնությամբ։ Այդ ամուր հիմքի վրա կազմավորվել է մարդկանց պատմական նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրություն՝ սովետական ժողովուրդը։

Սոցիալիստական ապրելակերպի բնույթին անհարիր են կապիտալի աշխարհի սոցիալ-քաղաքական ու տնտեսական ցնցումները, որոնք աշխատավորների շրջանում անվերջ հարուցում են տագնապ, վախ ու հոռետեսություն վաղվա օրվա նկատմամբ։ Մեր էկոնոմիկայի անշեղ վերելքը, սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացումն ու կատարելագործումը, ժողովրդի շահերի նկատմամբ կուսակցության անդուլ հոգատարությունն ապագայի հանդեպ սերմանում է խորին վստահության զգացում։ Մեր հասարակարգի անկյունաքարը կոլեկտիվիզմն է։ Կոլեկտիվում են դրսևորվում մարդկանց շատ հատկություններ, անձնական «եսից» վեր բարձրանալու ունակությունը, երբ խոսքը վերաբերում է հասարակական շահերին։ Սոցիալիստական հասարակության մեջ մարդու գործունեության չափանիշը նրա բարեխիղճ, հանրօգուտ աշխատանքի արդյունքներն են, պատասխանատվության զգացումը ոչ միայն իր կո-

լենկտիվի, այլև ողջ երկրի գործերի համար։ Անշուշտ, անհատի հոգևոր հարստության բնորոշ հատկանիշներից են քաղաքական բարձր կուլտուրան, ակտիվ կենսադիրքորոշումը, սովետական հայրենասիրությունը՝ զուգորդված սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետ։

Հասուն սոցիալիզմի արդի փուլում կուսակցության ու ժողովրդի ստեղծարար գործունեության վիթխարի հաջողություններն ամրակայվեցին ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։ Հիմնական օրենքում տրված է զարգացած սոցիալիզմի հասարակության ամբողջական պատկերը, հասարակություն, որտեղ աշխատավորները լայնորեն օգտվում են սոցիալիստական նվաճումներից և որն ապահովում է մարդու ռեալ իրավունքներն ու պարտականությունները կյանքի բոլոր բնագավառներում։

Մեր կուսակցության ու կառավարության արտաքին քաղաքական կուրսն իրականացվում է՝ հաշվի առնելով ժամանակակից իրադրության դրական ու բացասական կողմերը, նպատակ ունենալով վնասազերծելու միջազգային մթնոլորտը։ Կուսակցությունը ելնում է այն իրողությունից, որ խաղաղ գոյակցության, լարվածության թուլացումը խորացնելու սկզբունքների հաստատումը ոչ թե ժամանակավոր պրոցես է, այլև զարգացման օրինաչափ միտում։

Մենք վստահորեն ենք նայում ապագային, մեր հասարակության առջև բացված են հետագա համակողմանի սոցիալ-տնտեսական առաջընթացի հորիզոններ։ Մեր հայրենիքի, սովետական ժողովրդի միջազգային հեղինակության անշեղ աճն անբաժանելի են կոմունիստական կուսակցության՝ սոցիալիստական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի գործունեությունից։ Կուսակցությունը գիտականորեն է իրականացնում իր պատմական մեծ առաքելությունը՝ ժողովրդին առաջ տանել դեպի կոմունիզմ, «ուղղություն տալ,— ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը,— և կազմակերպել նոր հասարակարգը, լինել բոլոր աշխատավորների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը...»։

Մեր հասարակական կյանքում չկա մի այնպիսի ոլորտ, որտեղ չդրսևորվի կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի ուղղություն տվող ներգործությունը։ Կենտրոնական կոմիտեի բազմաբովանդակ գործունեության մեջ զուգակցվում են հետևողականությունն ու հաջորդայնությունը կուսակցության գլխավոր կուրսի իրականացման ասպարեզում, պատմական փորձի ուշադիր հաշվառումը, կյանքի առաջադրած խնդիրների ստեղծագործական լուծումը։ Օրինաչափ է, որ կոմունիստական շինարարության մասշտաբների և խնդիրների բարդության աճի համեմատ, աճում է նաև կուսակցության ղեկավար դերը։

Հանդիսանալով սովետական քաղաքական սիստեմի միջուկը, ՍՄԿԿ-ն կոորդինացնում է նրա բոլոր օղակները՝ մեր պետության քաղաքական հիմքը կազմող ժողովրդական դեպուտատների սովետների, աշխատավորների ամենամասսայական կազմակերպության՝ արհեստակցական միությունների, իր 60-ամյակը բոլորած լենինյան կոմերիտմիության և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությունը։ Կուսակցությունը սովետական ժողովրդին, բոլոր կազմակերպություններին համախմբում է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման համար մղվող պայքարում։

Մեր ժողովրդի պայքարի ու առաջընթացի տարեգրության մեջ նշանակալի տեղ ունի անցնող 1978 թվականը՝ տասներորդ հնգամյակի հարվածային տարին։ Ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության զարգացման բնագավառում ձեռք բերած նվաճումների համար Սովետական Հայաստանը հնգամյակի առաջին երկու տարում անընդմեջ պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։ Բոլոր հիմքերը կան հաստատելու, որ ավարտվող տարում և տասներորդ հնգամյակի առաջիկա տարիներին հանրապետության աշխատավորները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ամուր կպահեն համամիութենական դրոշը։

---



# ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

**Ա. Գ. ԴԱՎԹՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՍՀՄ ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ իրենով պսակեց հասուն սոցիալիստական հասարակության վերաբերյալ մարքսիստական-լենինյան կոնցեպցիայի զարգացման նպատակով տարվող ամբողջ աշխատանքը։ Նրա տեսական հարստության բացահայտումը մեծ, բազմապլանային աշխատանք է, որի համար անհրաժեշտ են բոլոր մասնագիտությունների հասարակագետների ջանքերը։ Տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է կուսակցության սկզբունքային տեսական հետևություններից մեկը, որն օրենսդրորեն վավերագրված է Սահմանադրության մեջ։ Դա զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմի բնութագրումը և քաղաքական-իրավական նորմերում դրա հստակ արտացոլումն է։

Դժվար է գերագնահատել այդ տեսական-ստեղծագործական խնդրի նշանակությունը։ Այն պահանջում էր նախապես լուծել մի ամբողջ շարք տեսական հարցեր, որոնք վերջին տարիներին հանգամանորեն քննարկվում էին մեր փիլիսոփայական, տնտեսական և գիտական կոմունիզմի տեսությանը վերաբերող գրականության մեջ։ Դրանք են՝ սովետական քաղաքական սիստեմի զարգացման հիմնական փուլերն ու գործոնները, նպատակները, խնդիրներն ու ֆունկցիաները՝ հասուն սոցիալիզմի փուլում, ՍՄԿԿ-ի՝ որպես ղեկավարող և ուղղություն տվող ուժի, դերը քաղաքական սիստեմում, այդ սիստեմի, հասարակության քաղաքական կազմակերպության և պետության, մյուս քաղաքական կատեգորիաների հարաբերակցությունը, հասարակության քաղաքական սիստեմի և տնտեսական ու սոցիալ-կուլտուրական սիստեմների փոխհարաբերությունը, դրանց հետագա զարգացման ուղղությունները կոմունիզմին անցնելիս և այլն։

Սոցիալիստական հասարակությունը մի բարդ և զարգացած սոցիալական սիստեմ է՝ բաղկացած միմյանց հետ կապակցված և փոխադարձորեն պայմանավորող նյութական, սոցիալական ու հոգևոր տարրերի հսկայական բազմազանությունից։ Դրան համապատասխան, այն կարելի է ուսումնասիրել՝ կիրառելով մարքս-լենինյան տեսության մեթոդաբանական միջոցներից մեկը՝ սիստեմային մեթոդը։

Հասարակությունն իր գոյության բոլոր փուլերում ներկայացել է որպես մի ամբողջական, իրեն վերարտադրող սիստեմ։ Նրա, որպես ամբողջականության, պահպանումը իրականացվում է կառավարման միջոցով։ Վերջինիս բարձրագույն տիպը քաղաքական կառավարումն է։ Այս կապն ըմբռնելու դեպքում միայն կարելի է հասկանալ քաղաքականությունը՝ որպես հասարակական երևույթ։ Քաղաքականության, ուստի և քաղաքական սիստեմի տեղն ու դերը բացահայտելու բանալին տալիս է էկոնոմիկայի որոշիչ և քաղաքականության առաջնության վերաբերյալ լենինյան արմատական դրույթը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 88)։

Հասարակության քաղաքական սիստեմը, պայմանավորվելով նրա էկոնոմիկայով և սոցիալ-դասակարգային կառուցվածքով, միաժամանակ հզոր ներազդեցություն է ունենում դրանց վրա։ Մեր երկրում այն ձևավորվեց և ընդհուպ մինչև հասուն սոցիալիզմի կառուցումը զարգացավ որպես պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմ։ Սովետական հասարակության՝ զարգացած (հասուն) սոցիալիզմի փուլը թևակոխելուն զուգընթաց քաղաքական սիստեմը դարձավ համաժողովրդական։

Զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմը, որի էությունը տրված է ՍՍՀՄ նոր Սահմանադրության առաջին գլխում, սոցիալական մեխանիզմ է, քաղաքական երևույթների՝ հայացքների, նորմերի, հաստատությունների ու միավորումների, հարաբերությունների ու նրանց սուբյեկտների միասնական ու բարդ կոմպլեքս, որը մարմնավորում է բանվոր դասակարգի և նրա կուսակցության կողմից գլխավորվող ժողովրդի իշխանությունը և վերջինիս ձեռքին գործիք է պետական ու հասարակական գործերի ղեկավարման ու կառավարման, սոցիալիստական նպատակների ու կոմունիստական իդեալների կենսագործման համար։

Զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի կառուցվածքային տարրերն են. հասարակության քաղաքական կազմակերպությունը՝ կոմունիստական կուսակցության կողմից գլխավորվող պետական և հասարակական կազմակերպությունների ամբողջությամբ, դրանց, ինչպես նաև սոցիալիստական հասարակության դասակարգերի, ազգերի, սոցիալական խմբերի, կոլեկտիվների, անհատի հարաբերությունները, վերջիններս կարգավորող քաղաքական և իրավական նորմերը, քաղաքական կյանքի բարոյականությունն ու էթիկան, քաղաքական գիտակցությունն ու մասսաների քաղաքական կուլտուրան։

Այսպիսով, զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմը, լինելով հասարակության բաղադրատարրերից մեկը, իր հերթին կազմված է բազմաթիվ ենթասիստեմներից, որոնցից յուրաքանչյուրն իրեն հատուկ ֆունկցիա է կատարում։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԵՎ ԲԱՆԱՎՈՐ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅՈՒՄ հաճախ «քաղաքական սիստեմ» և «քաղաքական կազմակերպություն» հասկացությունները օգտագործվում են որպես սինոնիմ։ Մինչդեռ, ինչպես տեսանք, նրանց միջև գոյություն ունի ամբողջի և մասի հարաբերություն։ Զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպությունը պետական և հասարակական կազմակերպությունների ամբողջությունն է, որի օգնությամբ ժողովուրդն իրականացնում է իր իշխանությունը, պետական և հասարակական գործերի կառավարումը։ Դրա, հետևաբար նաև քաղաքական սիստեմի հիմնական հաստատություններն են՝ համաժողովրդական պետությունը և կոմունիստական կուսակցությունը։

Այժմ, ինչպես արձանագրված է ՍՍՀՄ Սահմանադրության 1-ին հոդվածում, «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը համաժողովրդական սոցիալիստական պետություն է, որն արտահայտում է երկրի բանվորների, գյուղացիների և մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների կամքն ու շահերը»։

Համաժողովրդական պետությունը գործում է նոր պայմաններում, երբ սոցիալիզմը զարգանում է իր սեփական հիմքի վրա։ Այն օգտվում է պրոլետարիատի դիկտատուրայի բոլոր նվաճումներից, իր գործունեության մեջ հիմնվում դրանց վրա։ Սակայն համաժողովրդական իշխանությունը ոչ թե պրոլետարիատի դիկտատուրայի լոկ կրկնությունն է, այլ զարգացած սոցիալիզմին համարժեք իշխանության նոր փուլ, երբ ավելի է մեծանում նրա ստեղծարար դերը։ Այժմ պետության ջանքերն ուղղված են սովետական կարգերի առավելությունների բազմակողմանի բացահայտմանը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ նրանց զուգակցմանը, կոմունիզմի կառուցմանն անհրաժեշտ նախադրյալների ստեղծմանը։ Ահա թե ինչու մեզանում «կոմունիզմի կառուցման հիմնական գործիքը սովետական սոցիալիստական համաժողովրդական պետությունն է» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 2, էջ 782)։



Սոցիալիստական դեմոկրատիայի արդի բուրժուական քննադատները անհանգստացած են այն բանից, որ, իբր, սովետական Սահմանադրությունը անվերապահորեն մի կողմ է նետել «պետության մահացման» կոմունիստական սկզբունքը։ Նեղ աշխարհայացքի տեր բուրժուական մտածողը, իհարկե, դժվարությամբ կարող է ըմբռնել մեր պետական և հասարակական զարգացման դիալեկտիկան, հասկանալ, որ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման համեմատ տեղի է ունենում մեր պետականության աստիճանական վերաճումը կոմունիստական հասարակական ինքնավարության։ «Այդ պրոցեսը, իհարկե, տևական է, բայց առաջ է գնում անշեղորեն» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ Սահմանադրության մասին, «Հայաստան» հրատ., 1978, էջ 60)։

Օրենսդրորեն ամրապնդելով զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմը, մեր երկրի Հիմնական օրենքն այդ սիստեմում առանձնացնում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության տեղն ու դերը։ Սահմանադրության 6-րդ հոդվածում նշված է, որ ՍՄԿԿ-ն սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժն է, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը։ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։ Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին։ Կուսակցությունն առանձնապես հոգում է պետական ապարատի հետագա կատարելագործման, նրա աշխատանքի կուլտուրայի, հասարակական կազմակերպությունների ակտիվության բարձրացման համար։

Սովետական քաղաքական սիստեմի բուրժուական քննադատների շրջանում լայնորեն տարածված է այն թյուր պնդումը, թե, իբր, կոմունիստական կուսակցությունը գերազանցում է իր իրավասությունը, որ, իբր, նա փոխարինում, դիմազրկում է պետական և հասարակական կազմակերպություններին։ Սակայն այդ հերյուրանքներին լավագույն պատասխան է նոր Սահմանադրության 6-րդ հոդվածի այն դրույթը, որ «Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում»։

Կուսակցությունը հետևողականորեն կենսագործում է ՍՄԿԿ XXV համագումարի այն դրույթը, որ «Կոմունիստական շինարարության ասպարեզում մեր ամբողջ աշխատանքի կարևոր ուղղությունը սովետական հասարակության քաղաքական սիստեմի համակողմանի զարգացումն է։ Խոսքը վերաբերում է սոցիալիստական պետականության կատարելագործմանը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, պետական ու հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդմանը, հասարակական կազմակերպությունների գործունեության ակտիվացմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 121)։

Այդ պրոցեսի կենտրոնում են սոցիալիստական ժողովրդապետության ներկայացուցչական մարմինները՝ սովետները։ Սահմանադրության մեջ ժողովրդական դեպուտատների սովետների՝ որպես սոցիալիստական համաժողովրդական պետության քաղաքական հիմքի, բնորոշումը հաստատում է, որ, նախ՝ դրանք ամենամասսայական կազմակերպություններն են, որոնք ընդգրկում են ամբողջ ժողովրդին, իրենց ձեռքում կենտրոնացնում են պետական իշխանությունն ամբողջությամբ վերցրած, երկրորդ, ժողովրդի անունից և նրա մասնակցությամբ կարևորագույն ֆունկցիաներ են կատարում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, վերահսկում են մյուս բոլոր պետական մարմիններին։ Երրորդ, սովետները սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպության հիմքն են կազմում։

Այժմ սովետների ամբողջ սիստեմում ընդգրկված են ավելի քան 2,2 միլիոն դեպուտատներ։ Համարյա 30 միլիոն սովետական քաղաքացիներ, որոնք սովետների ակտիվն են, կամավոր օգնում են պետության կառավարման

բարդ գործին։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում առավել խոր և լայնորեն է դրսևորվում սովետների առանձնահատկությունը որպես միաժամանակ և՛ պետական, և՛ հասարակական այնպիսի կազմակերպությունների, որոնք մարմնավորում են պետականությունն ու դեմոկրատիան, դրանով իսկ ցուցադրելով հասարակության և պետության ամրապնդվող միասնությունը։

Սոցիալիստական կարգի բնորոշ առանձնահատկություններից է այն, որ ժողովրդի մասնակցությունը հասարակության կառավարմանը իրականացվում է ո՛չ միայն պետական մարմինների, այլև հասարակական կազմակերպությունների միջոցով։ Վերջիններս հետզհետե ավելի մեծ ազդեցություն են ունենում պետական իշխանության ու կառավարման մարմինների աշխատանքի վրա։ Այդպիսի կազմակերպություններից են սովետական արհմիությունները, որոնք իրենց շարքերում ունեն 113,5 մլն մարդ։ Արհմիությունները, որ Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, կառավարման դպրոց են, տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց, աշխատում են կուսակցության ղեկավարությամբ և մյուս հասարակական կազմակերպությունների ու սովետական պետության հետ սերտ համագործակցած։ Դրանք կատարում են կարևոր ներքին ֆունկցիա՝ կառավարման, աշխատավորների օրինական շահերի ներկայացման ու պաշտպանության, սոցմրցության ծավալման և այլն։ Արհմիությունները ակտիվ գործունեություն են ծավալում նաև միջազգային բանվորական ու արհմիութենական շարժման միասնության ամրապնդման նպատակով։

Սովետական հասարակության քաղաքական սիստեմում կարևոր դեր է խաղում լենինյան կոմերիտմիությունը, որն իր շարքերում ընդգրկում է 36 մլն պատանիների ու աղջիկների։ ՀամԼԿԵՄ-ը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, այն շարժափոկն է, որի օգնությամբ կոմունիստական կուսակցությունն իրականացնում է իր կապը երիտասարդության հետ։ Կոմերիտմիությունը կարևորագույն ֆունկցիա է կատարում՝ դաստիարակելով երիտասարդության մեջ դասակարգային-քաղաքական գիտակցականություն, ներգրավելով նրան պրակտիկ կոմունիստական շինարարության ոլորտը։ Լինելով կոմունիստական կուսակցության ռեզերվն ու մերձավորագույն օգնականը, այն ակտիվորեն մասնակցում է նաև երկրի կառավարմանը, տնտեսական շինարարությանը։ Կոմերիտմիության աշխատանքի հաջողության գրավականը կուսակցական ղեկավարությունն է։

Սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպման ոչ-պետական կազմակերպություններից են զանազան կոոպերատիվ կազմակերպությունները։

Սոցիալիստական հասարակության քաղաքական կյանքում կարևոր դեր են խաղում և պետական ու հասարակական գործերի քննարկմանն ու ու լուծմանը ակտիվորեն մասնակցում են աշխատավորական կոլեկտիվները։ Այժմ ՍՍՀՄ-ում գոյություն ունեն ավելի քան 2 մլն կոլեկտիվներ՝ ինքնուրույն բալանսով։ Միասին վերցրած՝ դրանք հսկայական ուժ են և ընդգրկում են աշխատունակ բնակչության բացարձակ մեծամասնությունը։ Լայն է աշխատավորական կոլեկտիվների գործունեության շրջանակը. Նրանք մասնակցում են արտադրության և սոցիալական զարգացման պլանավորմանը, ձեռնարկությունների ու հիմնարկությունների կառավարման, աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման հարցերի լուծմանը, զարգացնում են սոցմրցությունը, իրենց անդամներին դաստիարակում կոմունիստական բարոյականության ոգով և այլն։ Այս բոլորը հաշվի առնելով, Սահմանադրության նախագծի քննարկման ընթացքում հարկ համարվեց աշխատանքային կոլեկտիվներին վերաբերող հոդվածը տնտեսական սիստեմից (գլուխ II) փոխադրել սոցիալիզմի քաղաքական սիստեմի մեջ (գլուխ I, հոդվ. 8)։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական դեմոկրատիայի ծավալմանը համընթաց տեղի է ունենում բոլոր հասարակական կազմակերպությունների իրավունքների ընդլայնման պրոցես։ Նրանք առաջադրում են դեպուտատության թեկնածուներ բոլոր մակարդակների սովետների համար, ուժեղացել է նրանց ազդեցությունը կադրերի ընտրության և տեղաբաշխման



գործում։ Ակտիվացել է հասարակական կազմակերպությունների իրավաստեղծ գործունեությունը։ Արհմիություններին, կոմերիտմիությանը և այլ հասարակական կազմակերպությունների, հանձինս նրանց համամիութենական և հանրապետական մարմինների, իրավունք է վերապահվում օրինագծեր մտցնելու ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների Գերագույն սովետներ։ Պրակտիկա է դարձել պետական բարձրագույն մարմինների որոշումների ընդունումը հասարակական կազմակերպությունների կենտրոնական և հանրապետական մարմինների հետ համատեղ։ Պետական մարմինները ուշադիր կերպով հաշվի են առնում հասարակական կազմակերպությունների կարծիքը նոր իրավական նորմերի ընդունման և հների վերանայման առնչությամբ։

Հասարակական կազմակերպությունների մասնակցությունը պետական գործերին արտահայտվում է, այնուհետև, այն բանում, որ նրանց ներկայացուցիչները մտնում են մինիստրությունների կոլեգիաների, կոմիտեների, վարչությունների և այլ մարմինների կազմում։ Վերջերս ՍՍՀՄ արհմիությունների կենտրոնական խորհրդի նախագահը և ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղարը ընտրվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության անդամ։

Այսպիսով, սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպությունն աչքի է ընկնում իր օղակների բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրը յուրահատուկ ֆունկցիաներ է իրականացնում։ Դա պայմանավորված է ինչպես նյութական և հոգևոր արտադրության ասպարեզում լուծվող խնդիրների, այնպես էլ սոցիալական հարաբերությունների բարդությամբ ու բազմազանությամբ։ Սակայն նրանց հարաբերական ինքնուրույնությունը չի բացառում, այլ, ընդհակառակն, ենթադրում է պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների ու հաստատությունների սերտ միասնությունը՝ նրանց սոցիալական բնույթի, լուծելիք գլխավոր խնդիրների, կազմակերպական-քաղաքական սկզբունքների և զարգացման գծի ընդհանրության հիման վրա։

Այս ամենից հետևում է նաև, որ սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմում հենց քաղաքական կազմակերպությունն է, որ հանդես է գալիս որպես կառավարման սուբյեկտ։

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ քաղաքական կազմակերպության բոլոր օղակների կողմից միասնական խնդիրների իրականացման պրոցեսում դերերի և կոչման տարբերությունները պայմանավորում են նրանց միջև փոխադարձ կապերի բազմազանությունը, որը հանդես է գալիս ղեկավարման, օգնության և աջակցության, փոխադարձ համագործակցության, վերահսկողության և այլ հարաբերությունների ձևով։

Սոցիալիստական հասարակության սոցիալական հանրությունների՝ դասակարգերի, ազգերի, կոլեկտիվների հարաբերությունների և նրանց կազմակերպությունների գործունեության հիման վրա ձևավորվում են սոցիալիստական հասարակության քաղաքական հարաբերությունները՝ սոցիալիզմի քաղաքական սիստեմի մյուս կարևոր բաղադրատարրը։ Իհարկե, ոչ բոլոր հարաբերություններն են, որ քաղաքական բնույթ ունեն։ Այն հարաբերություններն են պատկանում քաղաքական ոլորտին, որոնք վերաբերում են իշխանության նվաճմանը, կազմակերպմանն ու օգտագործմանը, քաղաքական հաստատությունների ստեղծմանն ու նրանց գործունեությանը, քաղաքական գաղափարախոսության ձևավորմանը, զարգացմանն ու կենսագործմանը, սովետական մարդկանց քաղաքական դաստիարակությանն ու պետության նկատամամբ նրանց որոշակի վերաբերմունքի մշակմանը։

Քաղաքական հարաբերությունները դրսևորվում են քաղաքական ստեղծագործության տարբեր տեսակներում։ Դրանցից հիմնականն են՝ կոմունիստական շինարարության նկատամամբ կուսակցական և պետական ղեկավարությունը, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների գործունեությունը։ Քաղաքական գործունեության այդ տեսակները մասսաների քաղաքական ստեղ-

ծագործության բարձրագույն ձևն են։ Քաղաքական հարաբերությունների տեսակներ են նաև մասսաների քաղաքական կամքի անմիջական արտահայտման զանազան ձևերը. բնակչության ակտիվ մասնակցությունը սովետների դեպուտատների ընտրությանը, ընտրողների պատվիրանները, դեպուտատին ետ կանչելը և այլն։ Բավական է նշել, որ միայն վերջին երկու տարում սովետները կատարել են ընտրողների ավելի քան 700 հազար պատվիրան։ 1976 թ. միայն տեղական սովետների դեպուտատների հաշվետվության առիթով անց են կացվել ավելի քան 3.435 հազար ժողովներ, որոնց մասնակցել է 186 մլն քաղաքացի։ Նույն սովետներն այդ տարում քննարկել և լուծել են պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության 822 հազար հարցեր, այդ գործին մասնակից դարձնելով ավելի քան 1.470 հազար դեպուտատների։ Դրան պետք է ավելացնել նաև սոցիալիստական դեմոկրատիայի այնպիսի անմիջական դրսևորումները, ինչպիսիք են օրինագծերի համաժողովրդական քննարկումները։ Վերջին տարիներս ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլաններից, մեր օրենսդրության խոշոր ակտերից ոչ մեկը (օրինակ՝ ամուսնության և ընտանիքի, կենսաթոշակների, բնության պահպանության հարցերի վերաբերյալ) չի ընդունվել առանց դրանց նախագծերի համաժողովրդական քննարկման։

Զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմի գործունեության անհրաժեշտ պայմաններից են նաև սոցիալիստական իրավունքը և օրինականությունը, որոնք կարևոր գործիք են հասարակական կարգի և քաղաքական կյանքի դեմոկրատական հիմքերի պաշտպանության համար։

Նորմատիվ սիստեմի կորիզն են կազմում կուսակցական դիրեկտիվները, նրա հիմքը՝ սոցիալիստական իրավունքը։ Բացի այդ, գործում են նաև հասարակական կազմակերպությունների նորմերը, ինչպես նաև քաղաքական կյանքի ավանդույթները, բարոյականությունը, որոնք նույնպես կարգավորում են քաղաքական հարաբերությունները։ Քաղաքական սկզբունքներն ու նորմերը, որպես կանոն, արտահայտվում են իրավունքի սահմանադրական սկզբունքների և նորմերի, այսինքն՝ իրավաքաղաքական նորմերի ձևով և ծառայում են որպես պետական ու հասարակական կյանքի իրավական հիմք։

Սովետական պետությունն անընդհատ կատարելագործում է հասարակական հարաբերությունների իրավական կարգավորումը, միաժամանակ հետևում է գործող օրենսդրության և այլ իրավաբանական ակտերի պահպանմանը, որպես սոցիալիզմի հիմքերի անձեռնմխելիության կարևոր պայման։ Արդի փուլում նոր կոդիֆիկացիայի և օրենքների կատարելագործման մասշտաբների մասին է վկայում այն փաստը, որ 1956 թ. սկսած միայն ՍՍՀՄ Գերագույն սովետն ընդունել է 60 կարևորագույն օրենսդրական ակտեր, որոնք երկար ժամանակ կապահովեն զարգացած սոցիալիզմի քաղաքական հարաբերությունների իրավական կարգավորումը (տե՛ս «XXV съезд КПСС и вопросы теории государства и права» М., 1977, стр. 215).

Սովետական օրենսդրության հետագա զարգացման ամուր հիմք ստեղծեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը։ Այդ աշխատանքն այսուհետ ևս կընթանա զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի իրավական հիմքերի հետագա ամրապնդման, հասարակական հարաբերությունների իրավական կարգավորման, ՍՍՀՄ քաղաքացիների իրավունքների և պարտականությունների, դրանց անշեղ ապահովման գլխավոր երաշխիքների ամրապնդման ուղիով։

Սոցիալիզմի քաղաքական սիստեմի անհրաժեշտ կառուցվածքային տարրեր են նաև մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունն ու մասսաների քաղաքական կուլտուրան, որոնք ձևավորում են քաղաքական գիտակցությունը։ Վերջինս իրենից ներկայացնում է քաղաքական գաղափարախոսության և դասակարգային հոգեբանության դիալեկտիկական միասնություն։

Գիտական մարքս-լենինյան գաղափարախոսությունը, որպես քաղաքականության կառուցվածքային տարր, ապահովում է կուսակցականության լենինյան սկզբունքի կիրառումը քաղաքականության մեջ և, դրա միջոցով՝ հասարակական գործունեության բոլոր բնագավառներում։ Այն սոցիալիստական



հասարակության գաղափարաքաղաքական միասնության տեսական հիմքն է և հանդես է գալիս որպես սոցիալիստական հասարակական սիստեմի ամբողջականության պահպանման ու ամրապնդման հոգևոր նախադրյալ՝ դեպի կոմունիզմ նրա զարգացման մեջ։

Յուրաքանչյուր սովետական մարդու գիտակցականության ու գաղափարատեսական պատրաստականության մակարդակի բարձրացումը զարգացած սոցիալիստական հասարակության մեջ՝ կարևոր պայման է բնակչության այն հիմնական մասսայի ծավալի մեծացման, որը հանդես է գալիս որպես սոցիալ-պատմական ստեղծագործության անմիջական սուբյեկտ։ Հասարակության անդամների բարձր հասարակական գիտակցականությունն ու պատասխանատվությունը, որ նվաճվում է հնի, իր դարն ապրածի դեմ անհաշտ պայքարում, նոր հասարակական հարաբերությունների սիստեմի անխզելի տարրն են, կոմունիզմի կառուցման անհրաժեշտ կուլտուրական պայմանը։

Գիտական գաղափարախոսության ստեղծումը, իհարկե, ինքնին դեռ ամեն բան չի վճռում։ Անհրաժեշտ է դրանով համակել աշխատավոր մասսաներին, դարձնել նրանց վարքագծի նորմ։ Այդ նպատակով պահանջվում է հաղթահարել հին հասարակությանը բնորոշ խզումը գաղափարախոսության և մասսաների հոգեբանության միջև։ Այդ պրոցեսի հիմքն են կազմում սոցիալիստական հասարակարգի բնույթը, որպես անհրաժեշտ արտաքին պայման, միջավայր և կոմունիստական կուսակցության հետևողական գաղափարադաստիարակչական գործունեությունը։

Վերը նշված գործոնների ազդեցությամբ ձևավորվեց սովետական մարդը, որպես մեր երկրում սոցիալիզմի կառուցման համար մղված վաթսունամյա պայքարի կարևոր հանրագումարներից մեկը։ Սովետական մարդու քաղաքական բարձր գիտակցականության և կուլտուրայի հոյակապ արդյունքն է ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որն ամփոփում է միլիոնների հարուստ փորձը, գիտելիքները, պետական իմաստությունը։ Սահմանադրության համաժողովրդական քննարկման մասշտաբները վկայում են, թե որքան բարձր է սովետական քաղաքացիների քաղաքացիական ակտիվությունը, սովետական ապրելակերպի դեմոկրատիզմը, այն, որ «զարգացած սոցիալիզմի մեր հասարակությունը դարձել է նաև զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակություն» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ Սահմանադրության մասին, էջ 86)։

Սոցիալիստական հասարակության քաղաքական կյանքի բոլոր երևույթները փոխկապակցության ու փոխենթարկվածության պայմաններում կյանքի են կոչում մի կուռ, դինամիկ քաղաքական սիստեմ, որի ֆունկցիաները որակապես տարբերվում են նրա բաղադրամասերի՝ պետության, կուսակցության, հասարակական կազմակերպությունների ֆունկցիաներից։

Լինելով հասարակության ենթասիստեմներից մեկը, զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմը կրում է տնտեսական, սոցիալ-կուլտուրական և այլ սիստեմների ազդեցությունը։ Վերջինս դրսևորվում է քաղաքական սիստեմի առաջադրած նպատակներում ու խնդիրներում, որոնք անմիջականորեն արտացոլում են էկոնոմիկայի և հասարակության սոցիալ-կուլտուրական կյանքի պահանջմունքները։ Դրանով էլ պայմանավորվում են զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի, որպես միասնական ամբողջության, ֆունկցիաները՝ հասարակության նպատակների ու խնդիրների որոշումը, տնտեսական, սոցիալական, կուլտուրական և այլ քաղաքականության մշակումը, ժողովրդի շահերից ելնելով՝ ծրագրերի կազմումը, այդ բոլորի իրականացման համար հասարակության գործունեության կազմակերպումը, ռեսուրսների մոբիլիզացումը, հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության ամրապնդումը, արժեքների արդարացի բաշխումը դասակարգերի, ազգերի, և այլ սոցիալական խմբերի միջև՝ հաշվի առնելով նրանց, ինչպես նաև ամբողջ հասարակության և առանձին անհատի շահերը։

Քաղաքական սիստեմն իրականացնում է նաև կարևորագույն արտաքին ֆունկցիա։ Այստեղ այն փոխգործողության մեջ է մտնում այլ քաղաքական սիստեմների՝ սոցիալիստական համագործակցության, զարգացող և կապի-

տալիստական երկրների հետ։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը վավերացնում է զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի խնդիրներն ու ֆունկցիաները միջազգային հարաբերությունների բնագավառում։ Այստեղ առաջին անգամ լիակատար կերպով և ինքնուրույն բաժնով սահմանվում է ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը, որը նպատակամղված է ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման միջազգային բարենպաստ պայմանների ապահովմանը։

Այսպիսով, եթե ամփոփ ձևով արտահայտելու լինենք քաղաքական սիստեմի էությունը, կարելի է ասել՝ իշխանություն, քաղաքականություն և կառավարում։ Այս են քաղաքական սիստեմը բնութագրող գլխավոր պարամետրերը։

Արդի բուրժուական քաղաքագետները ջանք չեն խնայում վարկաբեկելու սովետական քաղաքական սիստեմը, պետական և հասարակական կազմակերպությունները։ Համանման փորձերը, սակայն, կանխավ դատապարտված են ձախողման, քանի որ կառուցված են սխալ մեթոդաբանական հիմքերի վրա։ Նրանց համար այս կամ այն քաղաքական սիստեմի գնահատման մեջ կարևորը արտաքին, ձևական այնպիսի հատկանիշներն են, ինչպես, օրինակ, կուսակցությունների քանակը, ընտրությունների անցկացման արարողությունը և այլն։ Մինչդեռ ամեն մի քաղաքական սիստեմի, տվյալ դեպքում զարգացած սոցիալիզմի քաղաքական սիստեմի առավելությունները դրա դինամիզմն է՝ զարգանալու միտումները, կառուցվածքի կատարելությունը, ինչպես նաև հասարակության մյուս ենթասիստեմների (տնտեսական, սոցիալական և կուլտուրական) ոլորտների վրա նրա վերափոխող ազդեցությունը։ Սոցիալիստական վերափոխումների ու կոմունիստական շինարարության հաջողությունը մեր երկրում մեծապես ապահովվել են սովետական քաղաքական սիստեմի կառուցվածքով ու գործունեությամբ։

Տնտեսական ու սոցիալ-կուլտուրական առաջընթացի ասպարեզում զարգացած սոցիալիզմի երկրի վիթխարի նվաճումները համոզիչ վկայությունն են այն բանի, որ ՍՍՀՄ քաղաքական սիստեմը դինամիկ, բարձրարդյունավետ սոցիալական մեխանիզմ է, որը պաշտպանում և իրականացնում է աշխատավոր մասսաների շահերը, ձգտումներն ու կամքը։

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՄԱՆ ԾԱԳՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

**Լ. Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԸ երկու համաշխարհային սիստեմների՝ կապիտալիզմի ու սոցիալիզմի միջև մղվող սուր ու անզիջում գաղափարախոսական պայքարի ժամանակաշրջան է։ Պրոգրեսի ու ռեակցիայի ուժերի պայքարը երբեք չի հասել այնպիսի սրության, ինչպես մեր օրերում։ Պատմության կողմից դատապարտված մասնավոր սեփականատիրական աշխարհը, որը անխուսափելիորեն առաջ է բերում սոցիալական և ազգային անհավասարություն ու ճնշում, բնավ հակված չէ կամավոր զիջելու իր դիրքերը։ Ջգտելով պահպանել ու երկարաձգել իր գոյությունը՝ այն օգտագործում է բոլոր միջոցները՝ տնտեսական սանկցիաներն ու քաղաքական շանտաժը, ռազմական ավանտյուրաներն ու գաղափարախոսական դիվերսիաները։ Այդ է վկայում ԱՄՆ-ի ներկայիս կառավարության հրահրած գաղափարախոսական ճնշման այսպես կոչված «մարդու իրավունքների» պաշտպանության կամպանիան։

Այս առնչությամբ հույժ կարևոր է տեսականորեն իմաստավորել ու հիմնավորել գաղափարախոսական պայքարի պրակտիկան, պարզաբանել դրա էությունը, տեղը դասակարգային պայքարի համակարգում։ Գաղափարախոսությունը հասարակական գիտակցության էական կողմն է, որտեղ հասարակական կեցությունն արտացոլվում է՝ բեկվելով դասակարգային շահերի պրիզմայով։ Հետևաբար, գաղափարախոսության ըմբռնումը հասարակական կեցության և հասարակական գիտակցության փոխհարաբերության վերաբերյալ դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի ուսմունքի տարրերից է։ Ավելին, առանց ըմբռնելու գաղափարախոսության հասկացության բովանդակությունն ու իմաստը՝ հնարավոր չէ լրիվ ըմբռնել բուն իսկ մարքս-լենինյան փիլիսոփայությունը։

Վերջապես, չի կարելի մոռանալ, որ գաղափարախոսության վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքը բուրժուական «մարքսագետների» և ռևիզիոնիստների կողմից մշտապես ենթարկվում է հարձակումների, թյուր մեկնաբանությունների և ուղղակի աղավաղումների։ Գաղափարական պայքարը ներթափանցում է հասարակական կյանքի բոլոր բնագավառները, տարածվում բուն իսկ գաղափարախոսության հասկացության վրա. վերջինս էլ դառնում է սուր գաղափարախոսական վեճի առարկա։

Գաղափարախոսության ուսումնասիրությունը կարելի է կատարել տարբեր եղանակներով։ Օրինակ, ճանաչողության փորձը ցույց է տալիս, որ այս կամ այն երևույթի էությունը հասկանալի է դառնում այն ժամանակ, երբ քննվում է դրա գենեզիսը՝ ծագումն ու զարգացումը։ Հենց այդ սկզբունքն էլ կիրառվում է ներկա հոդվածում։ Տվյալ դեպքում հեղինակի նպատակն է լուսաբանել հետևյալ հարցերը. նախամարքսյան փիլիսոփայության ո՞ր գաղափարները պետք է վերագրել գաղափարախոսության մասին մարքսիստական ուսմունքի

նախապատմությանը։ Ճի՞շտ է, արդյոք, որ մարքսիզմի հիմնադիրները գաղափարախոսությունն ըմբռնում էին որպես իրականության պատրանքային արտացոլում, ո՞րն է գաղափարախոսության մասին մարքսիստական ուսմունքում լենինյան ավանդը։

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ԵՎ ԸՆԴՀԱՆՐԱՊԵՍ հասարակական գիտակցության մարքսիստական կոնցեպցիան, ինչպես հայտնի է, արմատապես տարբերվում է նախորդ բոլոր այն ուսմունքներից, որոնք շոշափում են գիտակցության էության հարցը։ Սակայն դա չի նշանակում, թե իբր գաղափարախոսության մարքսիստական ըմբռնումը չունի իր նախապատմությունը։ Փիլիսոփայության պատմության մեջ մարքսիզմի կատարած հեղաշրջումը նախապատրաստված էր իմացության ողջ նախընթաց զարգացմամբ։ Մարքսի ուսմունքը, ինչպես գրել է Վ. Ի. Լենինը, «առաջ եկավ իբրև փիլիսոփայության, քաղաքատնտեսության ու սոցիալիզմի խոշորագույն ներկայացուցիչների ուսմունքի ուղիղ և անմիջական շարունակությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 19, էջ 4)։

Գաղափարախոսության հարցին նվիրված գրականության մեջ գոյավորվել է մի շատ կայուն ավանդույթ՝ շարադրանքի պատմական մասն սկսել՝ հիշատակելով այն, որ «գաղափարախոսություն» («իդեոլոգիա») տերմինը շրջանառության մեջ է դրվել XVIII դարի վերջին—XIX դարի սկզբին ֆրանսիական սենսուալիզմի ուշ շրջանի ներկայացուցիչների կողմից (Դեստյուտ դը Տրասի, Վոլնեյ, Կաբբանիս և ուրիշներ)։ Այդ տերմինն օգտագործվել է, մասնավորապես, Դեստյուտ դը Տրասիի ժամանակին հայտնի Գաղափարախոսության տարրերը աշխատությունում։

Չնայած այս հետազոտական ավանդույթի հաստատունությանը, այնուամենայնիվ, ավելորդ չէ մի անգամ ևս քննել այն հարցը, թե գաղափարախոսության վերաբերյալ ֆրանսիական փիլիսոփաների ու գիտնականների այդ պատկերացումը նախորդե՞լ է արդյոք գաղափարախոսության մարքսիստական ըմբռնմանը։

Հայտնի է, որ վերոհիշյալ ֆրանսիական մտածողների տեսակետից «գաղափարախոսությունը» պարզապես մի որոշ «գաղափարների տեսություն» է, ուսմունք է գաղափարների ծագման, ընդհանրապես՝ մարդկային մտածողության օրենքների մասին։ Բայց դա նշանակում է, որ նրանք գաղափարախոսությունը պատկերացնում էին որպես իմացաբանություն, որպես ճանաչողության տեսություն։ Կարելի է ասել, որ գաղափարախոսության տվյալ հասկացությունը դեռևս հեռու էր մարքսիստական ըմբռնումից։

Գաղափարախոսության մարքսիստական ըմբռնման նախապատմության որոնումներն ավելի բեղմնավոր կլինեն, եթե դիմենք դասական փիլիսոփայությանը։ Ճիշտ է, ժամանակակից գաղափարների ու պատկերացումների արմատներն ու կանխարկումներն այստեղ գտնելու համար պետք է կարողանալ ճիշտ վերծանել հին փիլիսոփայության փոխաբերություններն ու այլաբանությունները, մի փիլիսոփայություն, որը դեռևս չէր մշակել իր սեփական լեզուն և այդ պատճառով հաճախ բացատրվում էր առօրյա լեզվով։

Օրինակ, երբ XVII դարի մատերիալիստական փիլիսոփայության դասական Ֆ. Բեկոնը զարգացնում էր «կուռքերի» մասին իր հայտնի ուսմունքը, ապա այստեղ ըստ երևույթին կարելի է տեսնել գաղափարախոսության վերաբերյալ ժամանակակից որոշ պատկերացումների հեռավոր սաղմերը։ Չէ՞ որ, իրոք, Բեկոնը «կուռքերը» բնութագրում է որպես այնպիսի «ուրվականներ», որոնք մշտապես խաբում են մեզ, ընդ որում, ոչ թե մասնավոր, այլ ընդհանուր հարցերում, «դրանց խաբկանքը մտքի այնպիսի սխալ ու աղավաղված կանխատրամադրվածության արդյունք է, որը վարակում ու խեղաթյուրում է ինտելեկտի բոլոր ընկալումները» (Ф. Бекон. Сочинения в двух томах, т. 1, М., 1971, стр. 322)։ Եվ այսպես, «կուռքը» մտքի այնպիսի «կանխատրամադրվածություն» է, որը հանգեցնում է ամբողջ իրականության աղավաղված ընկալմանը։



Ուշադրության արժանի է այս հարցում Ֆ. Բեկոնի հայացքների տարբերությունը դասական էմպիրիզմի ավելի ուշ շրջանի ներկայացուցիչ Լոկի հայացքներից։ Լոկը, ինչպես հայտնի է, մարդկային հոգին համեմատում էր մաքուր տախտակի հետ (tabula rasa), որն արտացոլում է միայն այն, ինչ իր վրա ներգործում է դրսից, այսինքն՝ ոչինչ չի ավելացնում իրենից։ Ի տարբերություն դրա՝ Ֆ. Բեկոնը հակված էր մարդու միտքը համեմատելու ոչ թե հարթ, հավասար, մաքուր մակերևույթի հետ, այլ ավելի շուտ մի կախարդական հայելու հետ, որը լի է ֆանտաստիկական ու խաբուսիկ տեսիլքներով (նույն տեղը)։

Հետաքրքրական է, որ, այսօրվա առումով, գաղափարախոսության հասկացությանն ավելի շատ համապատասխանում է մթագնած, կախարդական հայելու բեկոնյան պատկերը, քան լոկյան (tabula rasa)-ն, թեպետև վերջինս ունեցել է իր ժամանակի համար աճագին պրոգրեսիվ նշանակություն՝ ցույց տալով այն հանգամանքը, որ ճանաչողության ողջ բովանդակությունը վերցվում է դրսից։

Այժմ անդրադառնալով XIX դարի սկզբին, մի ժամանակաշրջանի, որն անմիջականորեն նախորդում է մարքսիզմի ծագմանը, թվում է, կարելի է պնդել, որ գաղափարախոսության մարքսիստական ըմբռնման նախապատմությանը կարելի է վերագրել ոչ թե Դեստյուտ դը Տրասիի և Կաբբանիսի ուսմունքները, այլ ավելի շուտ այն պատկերացումները, որ զարգացրել են XIX դարի առաջին կեսի ֆրանսիական և անգլիական պատմաբանները, այդ թվում՝ Ֆրանսիայում Բուրբոնների իշխանության ռեստավրացիայի շրջանի (1814—1830) պատմաբանները՝ Գիզոն, Մինիեն, Թիերին։ Վերջին տարիների նամակներից մեկում Ֆ. Էնգելսը գրել է. «Եթե պատմության մատերիալիստական ըմբռնումը հայտնագործեց Մարքսը, ապա Թիերին, Մինիեն, Գիզոն, մինչև 1850 թ. անգլիական բոլոր պատմաբաններն ապացուցում են, որ այդ բանին ձգտել են շատերը...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 651)։

Իրոք, ֆրանսիական և անգլիական պատմաբանները դեռ մինչև Մարքսը գիտակցել են դասակարգերի պայքարի կարևորագույն նշանակությունը հասարակության ողջ կյանքի, մասնավորապես, հոգևոր կյանքի զարգացման համար։ Հայտնի է, սակայն, ռեստավրացիայի շրջանի պատմաբաններին հատուկ անհետևողականությունը։ Այս կամ այն գաղափարի գերիշխելու պատճառը նրանք համարում էին որոշակի «ունեցվածքային հարաբերությունների» տիրապետությունը։ Իսկ երբ հարկ էր լինում բացատրելու բուն այդ հարաբերությունները, նրանք դիմում էին «մարդկային բնության» վերաբերյալ մշուշապատ դատողությունների, որ ժամանակին փայլուն կերպով ցույց է տվել Գ. Վ. Պլեխանովն իր Պատմության նկատմամբ մոնիստական հայացքի զարգացման հարցի շուրջը նշանավոր աշխատությունում։ Այնուամենայնիվ չի կարելի ժխտել, որ գաղափարախոսության ըմբռնման ձևավորման մեջ Մարքսի այդ նախորդներն ունեն որոշակի պատմական ծառայություն։

Կասկածից դուրս է, որ մարքսիզմը մշակել է գաղափարախոսության վերաբերյալ սկզբունքորեն այլ, որակապես նոր մի ըմբռնում։ Դա ցույց է տալիս, որ այն ստեղծվել է առաջին անգամ Մարքսի կողմից մշակված՝ պատմության մատերիալիստական ըմբռնման հիման վրա, որը մեծագույն հայտնագործություններից մեկն է մարդկային մտքի պատմության մեջ։

Ճիշտ է, պետք է ընդունել, որ բուրժուական տեսական միտքն իր խճճված ուղիներով մոտեցել է գիտակցության ու հոգևոր մշակույթի ձևերի պատմականության ու սոցիալական պայմանավորվածության ըմբռնմանը։ Այնուամենայնիվ գաղափարախոսության մարքսիստական կոնցեպցիան այդ բուրժուական տեսություններից տարբերվում է ոչ թե ինչ-որ մանրամասնություններով, այլ էությամբ, հիմնականով. այն տարբերվում է բուն սոցիալական պայմանավորվածության միանգամայն նոր ըմբռնմամբ, բուն սոցիալականության այլ բացատրությամբ։ Այդ առումով գաղափարախոսության ժամանակակից գիտական ըմբռնումը հնարավոր է դարձել միայն այն փիլիսոփայության շնորհիվ, որն առաջին անգամ հասարակական կեցության և հասարակական գի-

տակցության հարաբերակցության հարցի հետևողական, մատերիալիստական, վերջնական լուծումն է տվել։

Այս հանգամանքը, իհարկե, չի կարելի հասկանալ ձևականորեն, թե իբր անհրաժեշտ է եղել նախ մշակել պատմության մատերիալիստական ըմբռնումը և միայն դրանից հետո և այդ հիման վրա մշակել գաղափարախոսության ըմբռնումը։ Որոշ առումով, ընդհակառակը, գաղափարախոսության գիտական ըմբռնման մշակումը, հասարակական կեցության գաղափարախոսական արտացոլման գաղտնիքի բացահայտումը եղել է պատմական մատերիալիզմի հիմնավորման անհրաժեշտ օղակներից մեկը։ Պատահական չէ, որ Մարքսի և Էնգելսի՝ պատմական մատերիալիզմի հիմնական դրույթների շարադրանքը պարունակող առաջին երկը կոչվում է Գերմանական գաղափարախոսություն, իսկ այդ երկի առաջին բաժիններից մեկը կոչվում է «Գաղափարախոսությունն ընդհանրապես, գերմանականը մասնավորապես»։

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՀԱՍԿԱՑՈՒԹՅԱՆ վերլուծությանը նվիրված մեզ մոտ հրապարակված գրականության մեջ (տե՛ս Г. М. Гак. Учение об общественном сознании в свете теории познания, М., 1960; В. Я. Ядов. Идеология как форма духовной деятельности общества, М., 1961; М. Х. Игитханян. Научная концепция идеологии и ревизионизм, М., 1972), գոյություն ունի տարակարծություն այն հարցի շուրջ, թե մարքսիզմի հիմնադիրներն ինչպես են մեկնաբանել այդ հասկացությունը։ Որոշ հեղինակներ պնդում են, որ Մարքսի ու Էնգելսի մոտ «գաղափարախոսությունը» միշտ ըմբռնվում է նեգատիվ իմաստով՝ որպես իրականության պատրանքային, աղավաղված արտացոլում։ Իսկ պրոբլեմի ուրիշ հետազոտողներ պնդում են, որ դրա հետ մեկտեղ Մարքսի ու Էնգելսի երկերում առկա է գաղափարախոսության և մի այլ, պոզիտիվ ըմբռնում։ Այսպես, օրինակ, Գ. Մ. Գակը հիշյա՞լ աշխատությունում նշում է, որ «Մարքսը և Էնգելսը «գաղափարախոսություն» տերմինը կիրառել են նաև կեղծ գիտակցության բնութագրության համար» (էջ 48), դրանով իսկ ստիպելով ենթադրելու, որ դա այդ տերմինի միակ (և, հնարավոր է, հիմնական) կիրառությունը չէ։ Այս տարակարծությունը, դժբախտաբար, պատահական չէ, այն արտացոլում է տվյալ հարցի մշակման վիճակը մեր գրականության մեջ։

Պարզելու համար, թե ինչպիսին են եղել Մարքսի և Էնգելսի բուն հայացքներն այս հարցում, մեջբերենք նրանց ասույթները, որ արտահայտել են իրենց կյանքի տարբեր շրջաններում։ Գերմանական գաղափարախոսության (1846) մեջ ասված է. «Եթե ամբողջ գաղափարախոսության մեջ մարդիկ ու նրանց հարաբերությունները լինում են գլխիվայր դրված, ինչպես մութ խցիկի մեջ...» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 18)։ Նույն աշխատությունում Մարքսը և Էնգելսը բացատրություն են տալիս, որ իրենք «գաղափարախոսներ» են անվանում դասակարգի այն մտածող ներկայացուցիչներին, որոնք «իրենց ապրուստի գլխավոր աղբյուրն են դարձնում այդ դասակարգի՝ իր իսկ մասին պատրանքների մշակումը...» (Նույն տեղը, էջ 51)։

Նույնպիսի բացատրություն է տրվում նաև դասական Անտի-Դյուրինգ-ում (1878 թ.). «գաղափարախոսը», այսինքն՝ «նա, ով սիստեմներ է կառուցում, պետք է անհամար բացեր լրացնի իր սեփական ճերյուրանքներով, այսինքն՝ իռացիոնալ ֆանտազիայի մեջ ընկնի» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967, էջ 454)։ «Գաղափարախոսի» համար, գրել է Ֆ. Էնգելսը, մի ինչ-որ չափով դեռ կարող է պարզ լինել մտածողության հարաբերությունը կեցության նկատմամբ բնության մեջ, բայց նրան երբեք պարզ չի լինում այդ հարաբերությունը հասարակության մեջ, պատմության մեջ (տե՛ս նույն տեղը, էջ 453)։

Վերջապես, ուշ շրջանի նամակներից մեկում (1893 թ.) գաղափարախոսության մարքսիստական ըմբռնումը Ֆ. Էնգելսը ձևակերպել է հետևյալ կերպ. «Գաղափարախոսությունը մի պրոցես է, որ կատարում է, այսպես կոչված՝ մտածողը, թեև գիտակցությամբ, բայց կեղծ գիտակցությամբ։ Իսկական դրդիչ ուժերը, որոնք նրան շարժման մեջ են դնում, մնում են նրան անհայտ, հակառակ դեպքում դա չէր լինի գաղափարախոսական պրոցես» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 640)։



Բերված քաղվածքներից կարելի է եզրակացնել, որ Մարքսը և Էնգելսը «գաղափարախոսություն» անվանում էին ընդհանրապես իդեալիստական աշխարհայացքը, մասնավորապես պատմության իդեալիստական ըմբռնումը, ընդսմին, առանձնապես «պատկերացումների արտադրության» պրոցեսի իդեալիստական մեկնաբանությունը։ Հասկանալի է, որ իր այդ կիրառմամբ «գաղափարախոսություն» բառը նրանց մոտ ուներ բացահայտորեն նեգատիվ, արհամարհական իմաստ։

Հարցի այդպիսի մեկնաբանման դեմ երբեմն առարկում են՝ վկայակոչելով, մասնավորապես, այն հանգամանքը, որ մի շարք դեպքերում Մարքսը և Էնգելսը «գաղափարախոսություն» ասելով նկատի են ունեցել հասարակական գիտակցությունը, իսկ «գաղափարախոսության ձևեր» ասելով՝ հասարակական գիտակցության ձևերը, իսկ վերջիններս նրանք չէին կարող համարել իրականության անպայման կեղծ արտացոլումներ։

«Գաղափարախոսություն» տերմինի այդպիսի օգտագործում մարքսիզմի հիմնադիրների մոտ, թվում է, իրոք կա, օրինակ, Քաղաքատնտեսության քննադատության շուրջը գրքի առաջաբանում (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 690)։ Այստեղ Մարքսը, ի թիվս այլ հարցերի, խոսում է այն մասին, որ անհրաժեշտ է տարբերել երկու բան՝ նյութական հեղաշրջումն արտադրության տնտեսական պայմաններում և այն գաղափարախոսական ձևերը, որոնցով մարդիկ գիտակցում են սոցիալական կոնֆլիկտները և պայքարում դրանց լուծման համար։ Այստեղ Մարքսի միտքն այն է, որ եթե նյութական հարաբերություններում տեղի ունեցող հեղաշրջումը կարող է հավաստվել և ուսումնասիրվել բնագիտական ճշգրտությամբ, ապա այդ բանը ոչ մի կերպ չի կարելի ասել գաղափարախոսական վերնաշենքում տեղի ունեցող հեղաշրջման, գաղափարախոսական ձևերի վերափոխումների մասին, որոնց միջոցով կատարվում է հասարակության մեջ տեղի ունեցող փոփոխությունների էության իմաստավորումը։ «Ինչպես որ չի կարելի առանձին մարդու մասին դատել այն հիման վրա, ինչ ինքն է մտածում իր մասին, ճիշտ այդպես էլ չի կարելի հեղաշրջման նման դարաշրջանի մասին դատել ըստ վերջինիս գիտակցության» (Նույն տեղը)։

Դեռ ավելին, այն սոցիալ-պատմական կոնցեպցիան, որը կուրորեն վստահել է այս կամ այն դարաշրջանի ինքնագիտակցությանը, «հարկադրված է եղել ընդունելու այդ դարաշրջանի պատրանքները» (Նույն տեղը, էջ 44)։

Իսկ ինչպե՞ս է մարքսիզմը բացատրում այն հանգամանքը, որ «հեղաշրջման դարաշրջանի գիտակցությունը» անցյալում միշտ եղել է պատրանքային։ «Գերմանական գաղափարախոսության» մեջ կարելի է գտնել ուղղակի պատասխան այդ հարցին. «Եթե այդ անհատների իրական հարաբերությունների գիտակցական արտահայտությունը պատիր է, եթե նրանք իրենց պատկերացումների մեջ իրենց իրականությունը գլխիվայր են դնում, ապա դա նորից նրանց նյութական գործունեության եղանակի սահմանափակության և սրանից բխող նրանց սահմանափակ հասարակական հարաբերությունների հետևանք է» (Նույն տեղը, էջ 17)։ Այսպիսով, Մարքսը և Էնգելսը ո՛չ միայն հավաստում են ինքնագիտակցության պատրանքային բնույթը անցյալի բոլոր սոցիալական հեղաշրջումների ժամանակ, այլև բացատրում են, թե ինչու այն պետք է լիներ պատրանքային, «գաղափարախոսական» և չէր կարող այլ կերպ լինել։

Բայց մարքսիստական տեսության հեղափոխական էությունն էլ հենց այն է, որ գիտականորեն ապացուցվում են այն նույն «սահմանափակ հասարակական հարաբերությունների» լիակատար վերացման հնարավորությունն ու պատմական անհրաժեշտությունը, որոնք դառնում են պատրանքային ինքնագիտակցության աղբյուր։ Այդ հեղափոխական գործողությամբ էլ հենց կնշա-

նավորվի «ամեն մի գաղափարախոսության վերջը», այսինքն՝ հասարակական գիտակցության այն ձևերի տիրապետության վերջը, որոնք անհրաժեշտաբար պետք է ունենան պատրանքային բնույթ: Հենց այն պատճառով, որ Մարքսը և Էնգելսը «գաղափարախոսություն» տերմինի տակ նկատի ունեին պատրանքային, անխուսափելիորեն աղավաղված դասակարգային գիտակցությունը, «ամեն մի գաղափարախոսության վերջը» իրականում նշանակում է ոչ թե ամեն մի գաղափարախոսության չքացում, այլ տիրապետող կեղծ դասակարգային գիտակցության չքացում:

Եվ այսպես, «գաղափարախոսություն» տերմինը Մարքսը և Էնգելսը օգտագործում են բացառապես նեգատիվ իմաստով՝ կեղծ, աղավաղված դասակարգային գիտակցությունը նշելու համար: Տվյալ տերմինի այդպիսի կիրառման պատճառը, ըստ երևույթին, այն է, որ մարքսիզմի հիմնադիրներն այն կիրառել են բացառապես բուրժուազիայի, ինչպես և մյուս շահագործողական դասակարգերի գաղափարախոսությունը քննադատելիս:

Բայց տերմինից և նրա օգտագործումից պետք է տարբերել հասկացությունը: Վերանալով «գաղափարախոսություն» տերմինից և այն բանից, թե ինչպես են այն օգտագործել Մարքսը և Էնգելսը, տեսնենք. նրանք կարծո՞ւմ էին, թե այս կամ այն դասակարգի դիրքերից հասարակական կեցության արտացոլումն անխուսափելիորեն պետք է լինի կեղծ, պատրանքային, «ֆետիշիստական»: Ոչ մի կասկած չկա, որ այս հարցը կարող է միայն բացասական լուծվել: Հակառակ դեպքում նրանք իրենց վրա չէին վերցնի բանվոր դասակարգի գիտական գաղափարախոսության մշակման միսիան:

Հակառակ բուրժուական և ռևիզիոնիստական աղավաղումների, մարքսիզմի հիմնադիրներն ամենևին այն կարծիքին չէին, թե հասարակական գիտակցության ամեն մի արտացոլում՝ բեկված դասակարգային շահերի պրիզմայով, անպայման պետք է լինի աղավաղված արտացոլում: Այլ բան է, որ հասարակական կեցության ադեկվատ, գիտական արտացոլման համար Մարքսը և Էնգելսը չեն օգտվել «գաղափարախոսություն» տերմինից:

Դա նշանակում է, որ մարքսիստական տեսության ձևավորման պրոցեսում եղել է որոշ անհամապատասխանություն «գաղափարախոսություն» տերմինի և գաղափարախոսություն հասկացության բովանդակության, ինչպես և այդ տերմինի օգտագործման եղանակի ու համապատասխան հասկացության էության միջև:

Այդ անհամապատասխանությունը, ինչպես հայտնի է, հաղթահարել է Վ. Ի. Լենինը: Նա «գաղափարախոսություն» տերմինն ընկալել է որպես դրա իսկ բովանդակությունից բխող հասկացություն, որն ի սկզբանե եղել է մարքսիզմում:

ՎԻԹԽԱՐԻ Է Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՎԱՆԴԸ հասարակական գիտակցության, մասնավորապես գաղափարախոսության բնույթի մասին մարքսիստական ուսմունքի մշակման ասպարեզում: Իր տեսական գործունեությունը սերտորեն միակցելով հեղափոխական պայքարի խնդիրների հետ՝ նա պաշտպանել և ստեղծագործորեն հարստացրել է Մարքսի և Էնգելսի ուսմունքը գաղափարախոսության դասակարգային էության, բուրժուական և սոցիալիստական գաղափարախոսությունների անհաշտելիության մասին, մարդկության հոգևոր մշակույթի ողջ առաջադիմական բովանդակության հետ սոցիալիստական գաղափարախոսության կապի մասին: Առանձնապես կարևորվում են Վ. Ի. Լենինի մշակած այն սկզբունքները, որոնք դարձան մարքսիստական կուսակցության գաղափարախոսական նախապատրաստման փիլիսոփայական-տեսական հիմքը: Պրոլետարիատի հեղափոխական կուսակցությունը նա դիտում էր որպես տեսության ու պրակտիկայի միասնության կենդանի մարմնացում: Լենինը զարգացրեց գիտական սոցիալիզմի հետ տարերային բանվորական շարժման միացման ընդհանուր օրինաչափությունների ուսմունքը:

Նոր տիպի կուսակցության ստեղծման ժամանակաշրջանում, ՌՍԴԲԿ պատմական II համագումարին նախորդած տարիներին, Վ. Ի. Լենինը վիթխարի դեր խաղաց տարերայնության տեսությունների դեմ մղվող պայքարում, առանձնապես, այսպես կոչված, «էկոնոմիզմի» փիլիսոփայության քննադատության և հերքման գործում: Նա համակողմանիորեն զարգացրեց պրոլետարիատի ազատագրական շարժման, աշխատավորների հոգևոր ազատագրման ասպարեզում գաղափարախոսական պայքարի դերի մարքսիստական ըմբռնումը:



Եթե Մարքսը և Էնգելսը «գաղափարախոսություն» տերմինն օգտագործում էին նեգատիվ առումով, գլխավորապես բուրժուազիայի դասակարգային ինքնագիտակցության քննադատության պլանով և այդ պատճառով «գաղափարախոսություն» և «գիտական» բառերը նրանք պատկերացնում էին որպես չմիակցվող (պրոլետարիատի իրոք գիտական գաղափարախոսությունը նրանք դեռ պետք է մշակեին), ապա Վ. Ի. Լենինի առջև արդեն ծառացած էր գիտական սոցիալիզմի պաշտպանության և հետագա զարգացման խնդիրը:

Ի դեպ, արդեն Ֆ. Էնգելսի կողմից հարցը դրված էր այնպես, որ շնորհիվ տեսության մեջ մարքսիզմի կատարած հեղափոխական հեղաշրջման՝ արդեն տեղի էր ունեցել սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն: Վ. Ի. Լենինը սոցիալիզմն ուղղակի անվանում է պրոլետարիատի դասակարգային պայքարի գաղափարախոսություն:

Բուրժուազիայի ստեղծած հասարակական-տնտեսական կարգի վերաբերյալ պատրանքային ու կեղծ պատկերացումներին, պատմական պրոցեսի բնույթի ու էության վերաբերյալ և այլ ըմբռնումներին Վ. Ի. Լենինը հակադրում է պատմության մարքսիստական փիլիսոփայության հիմնական դրույթները: Իմպերիալիզմի դարաշրջանի գիտականության սկզբունքներից բոլորովին հեռացած բուրժուական գաղափարախոսությանը նա հակադրում է պրոլետարիատի գիտական գաղափարախոսությունը:

Դրանով իսկ Վ. Ի. Լենինը «գաղափարախոսություն» տերմինն օգտագործում էր ընդհանուր իմաստով: Ընդ որում, նա հիմնավորեց գիտական գաղափարախոսության հասկացության իրավազորությունը, դրա քաղաքական ու տեսական կարևորությունը՝ նկատի առնելով աշխատավոր զանգվածների հեղափոխական ազատագրության գաղափարախոսությունը:

Լենինի կողմից պրոլետարիատի գաղափարախոսության գիտական բնույթի շեշտումը մասնավորապես առնչվում էր պայքարի այն խնդիրների հետ, որ նա մղում էր տարերային բանվորական շարժման մեջ սոցիալիստական գիտակցության արմատավորման համար: Տարերային բանվորական շարժումը ի վիճակի չէ ինքնուրույն ճանապարհով ձևավորելու հետևողականորեն հեղափոխական, իսկական սոցիալիստական գիտակցություն, քանի որ վերջինս սոցիալական պրոցեսների հետազոտության ու իմաստավորման, մարդկության անցյալ փորձի ընդհանրացման արդյունք է: Սոցիալիզմը, գրում է Լենինը, «լինելով պրոլետարիատի դասակարգային պայքարի գաղափարախոսությունը, ենթարկվում է գաղափարախոսության ծագման, զարգացման ու ամրացման ընդհանուր պայմաններին, այսինքն՝ հիմնվում է մարդկային գիտելիքի ամբողջ նյութի վրա, ենթադրում է գիտության բարձր զարգացում, պահանջում է գիտական աշխատանք, և այլն, և այլն» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 450): Հետևաբար, կապիտալիստական հարաբերությունների հիման վրա տարերայնորեն զարգացող դասակարգային պայքարում դրսից է ներարկվում գիտական սոցիալիզմը:

Նշելով տարերային բանվորական շարժման մեջ սոցիալիստական գիտակցության արմատավորման մասին՝ Լենինն այն կարծիքին չէր, թե կարող է գոյություն ունենալ հասարակական շարժում, որը զուրկ լինի որևէ ինքնագիտակցությունից, գաղափարախոսությունից: Նա հստակ ցույց է տվել տարերային բանվորական շարժման այն ձևերն ու դրսևորումները, որոնք «էկոնոմիզմի» որոշ տեսաբաններ համարում էին զուտ օբյեկտիվ, բացառապես «նյութական տարրերի և նյութական միջավայրի» փոխազդեցության սովորական արդյունքներ, իրականում բնավ էլ այդպիսի չեն: Այդ առթիվ նա գրել է. «ասել, թե գաղափարախոսները (այսինքն՝ գիտակից ղեկավարները) չեն կարող շարժումը շեղել այն ճանապարհից, որը որոշվում է միջավայրի և տարրերի

փոխազդեցությամբ, դա նշանակում է մոռանալ այն այբբենական ճշմարտությունը, որ գիտակցականությունը մասնակցում է այդ փոխազդեցությանն ու այդ որոշմանը։ Կաթոլիկական և միապետական բանվորական միությունները Եվրոպայում նույնպես անհրաժեշտ արդյունք են միջավայրի ու տարրերի փոխազդեցության, բայց այդ փոխազդեցությանը մասնակցել է միայն տերտերների ու Զուբատովների գիտակցականությունը, և ոչ թե սոցիալիստների գիտակցականությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 5, էջ 456)։

Լենինյան տեսակետից, գոյություն չունեն այնպիսի հասարակական շարժումներ, որոնք կազմվում են բացառապես «նյութական» տարրերից։ Ամեն մի շատ թե քիչ նշանակալից սոցիալական շարժում ունի իր գաղափարախոսությունը, հարցն այն է, թե ի՞նչ գաղափարախոսություն է դա։ Ընդգծելով, որ պետք է դրսից գիտակցությունը ներարկվի տարերային բանվորական շարժման մեջ, Վ. Ի. Լենինը գիտակցություն ասելով հասկանում էր գիտական, սոցիալիստական գիտակցությունը։ Եթե գիտական-սոցիալիստական գիտակցությունը չներարկվի բանվորական շարժման մեջ, ապա արդյունքը կլինի ոչ թե այն, որ դա կդառնա որևէ գաղափարախոսությունից զուրկ շարժում, այլ միայն այն, որ այդ շարժման մեջ կգերակշռեն բուրժուական գաղափարախոսության այս կամ այն ձևերը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 49—52)։

Իհարկե, Վ. Լենինը լիովին մեկնում էր մարքսիստական այն դրույթից, որ հասարակական կեցությունն է որոշում հասարակական գիտակցությունը։ Նա, սակայն, վճռականորեն մերժում է այս կարևոր դրույթի մեխանիստական ըմբռնումը։ Նա մշտապես հանդես է գալիս այն տեսակետի դեմ, թե իբր հասարակական կեցությունն ուղղակի, անմիջականորեն և միանշանակ ձևով է սահմանում հասարակական գիտակցությունը։ Չէ՛ որ հասարակական գիտակցությունը կարող է լինել կեցության՝ սոցիալական ռեալության տարբեր կողմերի և տարբեր շերտերի արտացոլումը։ Մանավանդ որ հասարակական կեցությունն ինքը ներքուստ հակասական է և անխուսափելիորեն բովանդակում է տարբեր, հաճախ հակադիր միտումներ։

Գիտական-սոցիալիստական գիտակցության, պրոլետարիատի գիտական գաղափարախոսության առանձնահատկությունը, մասնավորապես, այն է, որ այդ գիտակցությունը ենթադրում է հասարակության կյանքում տեղի ունեցող առավել խոր պրոցեսների արտացոլում, որ այն ներառում է հասարակական կեցության գիտական վերլուծություն բանվոր դասակարգի, ամբողջ աշխատավոր զանգվածի արմատական ու ընդհանուր շահերի տեսակետից։ Այն տեսական գիտակցության արտահայտություն է։ Դասակարգերը և կուսակցությունները (ինչպես և առանձին անձնավորությունները) գիտական գիտակցության ձևերը հատուկ մշակում են լարված ու դժվարին որոնումներում։

Ճիշտ է, այդպիսի վերաբերմունքը գիտական գաղափարախոսության մշակման նկատմամբ ժամանակին տարերայնության որոշ երկրպագուներին թվում էր «գաղափարախոսության գերագնահատում»։ Լենինը, սակայն, գտնում էր, որ հետևողական հեղափոխական մարտիկի դերը կարող է կատարել միայն այնպիսի կուսակցությունը, որը ղեկավարվում է գիտական գաղափարախոսությամբ։

ԱՅԺՄ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ հասկացության նկատմամբ ուշադրության սևեռումը թելադրվում է նաև այդ հասկացության բուրժուական և ռեվիզիոնիստական մեկնաբանությունների դեմ մղվող պայքարի խնդիրներով։

Կ. Մանհեյմի Գաղափարախոսություն և ուտոպիա հայտնի գրքի լույս տեսնելու ժամանակից ի վեր բուրժուական «գիտելիքի սոցիոլոգիայում» ակտիվորեն տարածվում է գիտական և գաղափարախոսական գիտակցությունների հակադրության գաղափարը։ Գաղափարախոսության, որպես կեղծ ու աղավաղված գիտակցության, պատկերացումը տարածելու ոլորտում շատ են արել ամերիկյան փիլիսոփաներն ու սոցիոլոգները՝ Դ. Բելը, Ս. Լիփսեթը, Ա. Շլեզինգերը և ուրիշներ։ Գաղափարախոսության այդպիսի ըմբռնումը թափանցել է բառարանները։ Այսպես, Լալանդի հայտնի բառարանում ասվում է. գաղափարախոսությունն այնպիսի վերացական գաղափարների ամբողջությունն է, որոնք չեն համապատասխանում ռեալ իրավիճակին։



Ընդսմին փորձեր են արվում (առանձնապես ռեվիզիոնիստների կողմից) գաղափարախոսության, որպես պատրանքային գիտակցության, պատկերացումը վերագրելու մարքսիստական տեսությանը. եթե գաղափարախոսությունը, ըստ մարքսիստական տեսության, հասարակական կեցության դասակարգայնորեն միջնորդավորված արտացոլումն է, «հետևաբար», դա իրականության աղավաղված ըմբռնումն է։ Այդ սխալ եզրակացությանն է հանգում Է. Ֆիշերը Մարքսիզմը և գաղափարախոսությունը (1965 թ.) աշխատության մեջ։

Ակներև է, որ գաղափարախոսության նման մեկնաբանումը մարքսիզմի դեմ մղվող պայքարի ձևերից է. եթե ամեն մի գաղափարախոսություն սոցիալականորեն պայմանավորված է «և այդ պատճառով» (ռեվիզիոնիզմի տրամաբանությամբ) իրականության անխուսափելիորեն աղավաղված արտացոլում է, ապա կարող է ստեղծվել այնպիսի տպավորություն, որ աչառության, միակողմանիության և սուբյեկտիվության մեղադրանքը կարելի է հարուցել նաև մարքսիզմի դեմ՝ ընդսմին հենվելով իբր թե իր իսկ Մարքսի վրա։

Գաղափարախոսության՝ որպես պատրանքային գիտակցության բնութագրումը նախադրյալ է նաև տխրահռչակ «դեիդեոլոգիզացիայի» դոկտրինայի համար, այն է՝ հասարակական գիտակցությունը զտելու գաղափարական մոմենտներից. եթե գաղափարախոսությունը մարմնավորում է միայն կեղծ գիտակցությունը, ապա ժամանակակից մարդու գիտական մտածողությունը պետք է ազատագրվի գաղափարախոսության ամեն մի ազդեցությունից։ Հասկանալի է, որ «դեիդեոլոգիզացիայի» պահանջն իրականում ուղղված է ոչ թե առհասարակ գաղափարախոսության դեմ (քանի որ չի կարող գոյություն ունենալ դասակարգ, որ չունենա իր գաղափարախոսությունը), այլ հեղափոխական, ազատագրական շարժման գաղափարախոսության, սոցիալիստական գաղափարախոսության դեմ։

Գաղափարախոսության մարքսիստական-լենինյան ըմբռնման պատմության ուսումնասիրությունն օգնում է ավելի լավ կողմնորոշվելու ժամանակակից գաղափարական պայքարի բարդ հարցերում։ Այդ ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում մերկացնելու այն փորձերի սնանկությունը, որոնց նպատակն է Մարքսին ու Լենինին վերագրել գաղափարախոսության, որպես կեղծ գիտակցության պատկերացումները։

Այն ցույց է տալիս մարքսիզմի դասականների կատարած գործի վեհությունը՝ պրոլետարիատի գիտական գաղափարախոսության հիմնավորումը, որը զարգացած սոցիալիզմի հասարակության պայմաններում դարձել է աշխատավոր ժողովրդի գաղափարախոսությունը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ ՈՒԺԸ

**Վ. Ֆ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի քարտուղար

**ՍՍՀՄ** ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ վավերագրեց ՍՍՀՄ հասարակական կարգի և քաղաքականության հիմունքները, սահմանեց քաղաքացիների իրավունքները, ազատությունները և պարտականությունները, համաժողովրդական սոցիալիստական պետության կազմակերպման սկզբունքներն ու նպատակները։ Նոր Սահմանադրությունը գործունեության լայն ասպարեզ բացեց կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և հասարակական մյուս կազմակերպությունների առջև։ Նրանք մասսաների աճող քաղաքական ու աշխատանքային ակտիվությունն ուղղում են պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարմանը, բոլոր օղակներում պատասխանատվության բարձրացմանը, կարգապահության ամրապնդմանը, բարձր կազմակերպվածության հաստատմանը։ Յուրաքանչյուր սովետական քաղաքացի, ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը, պարտավոր է պարզորոշ գիտակցել, որ իր իրավունքների գլխավոր երաշխիքը, վերջին հաշվով, հայրենիքի հզորությունն ու բարգավաճումն են, իսկ դրա համար նա պետք է պատասխանատու լինի հասարակության առջև, բարեխղճորեն կատարի իր պարտքը պետության ու ժողովրդի հանդեպ։

Այս առումով մեծ է նաև արհմիությունների դերը։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Ինչպես մեր երկրի Հիմնական օրենքում, այնպես էլ Հայկական ՍՍՀ Սահմանադրության մեջ կարևոր տեղ է տրված արհեստակցական միություններին, կոմունիզմի շինարարության գործում նրանց դերին։ ՍՄԿԿ-ն կարևոր խնդիր է համարում հասարակական կյանքի բոլոր ոլորտներում արհմիութենական կազմակերպությունների ազդեցության ուժեղացումը։ Արհմիությունները եղել ու մնում են կուսակցության հուսալի հենարանը, կոմունիզմի կառուցման գործում մասսաների ճանաչված ու հեղինակավոր կազմակերպությունը։ Հետզհետե է՛լ ավելի է մեծանում այդ մասսայական կազմակերպության ազդեցությունը, է՛լ ավելի է կարևորվում սովետական հասարակության մեջ նրա ունեցած դերը։

Հասարակության սոցիալական կառուցվածքի արմատական փոփոխությունները, սոցիալական միատարրության ուժեղացումը իրենց արտացոլումն են գտել նաև արհմիությունների կազմում։ Հայաստանի արհմիությունները միավորում են ավելի քան մեկ միլիոն 150 հազար մարդ, որոնցից 700 հազարը բանվորներ են։ Հանրապետության 80 հազար կոլտնտեսականներից 78 հազարն արդեն արհմիության անդամներ են։

ՍՍՀՄ Հիմնական օրենքը հստակորեն սահմանեց սովետական արհմիությունների իրավական դրությունը, իրավաբանորեն ամրապնդեց նրանց գործունեության սոցիալ-քաղաքական ու տնտեսական հիմքը։ Արհմիությունները, լինելով տնտեսավարման դպրոց, կատարում են երկմիասնական խնդիր՝ հոգում են արտադրության վերելքի և աշխատավորների իրավունքների պաշտպանության, նրանց աշխատանքի ու հանգստի պայմանների բարելավման մա-



սին, մշտապես զբաղվում հանրային արտադրության վերելքի հարցերով։ Այժմ կուսակցության տնտեսական քաղաքականության առաջնահերթ խնդիրը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումն է։ Դա տասներորդ հնգամյակի հանգուցային հարցերից է, որի լուծման նպատակով արհմիություններն ուժեր գործադրելու մեծ ասպարեզ ունեն։

Նրանք լուրջ անելիքներ ունեն հատկապես սոցիալիստական մրցության ծավալման գործում։ Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմն ընդունել են մրցության կազմակերպման վերաբերյալ մի շարք որոշումներ, որտեղ սահմանել են նաև արհմիությունների խնդիրներն այդ ասպարեզում։

Մրցությունը դինամիկ պրոցես է, այն ծնում է արտադրության մարդկանց մասսայական նախաձեռնության, աշխատանքային ակտիվության նորանոր ձևեր։ Արհմիութենական կազմակերպությունները կոչված են պաշտպանելու աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունները, դրանք տարածելու յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր արտադրական տեղամասի կոլեկտիվում։

Արհմիությունները շատ ջանքեր են գործադրում մրցության մասսայականությունն ապահովելու համար։ Անընդհատ ավելանում է այդ շարժման մասնակիցների թիվը։ Այժմ մեր հանրապետությունում սոցմրցության մեջ ընդգրկված են ավելի քան 800 հազար աշխատավորներ։ Միայն վերջին հինգ տարում մրցողների թիվն աճել է մոտ 200 հազար մարդով։ Արտադրության ավելի քան 2,5 հազար առաջավորներ պայքարում են 1980 թ. վերջին անձնական երկու հնգամյա առաջադրանք կատարելու համար, հարյուրավոր ձեռնարկություններ, կազմակերպություններ, կոլեկտիվներ պատրաստակամություն են հայտնել հնգամյակի պլանը կատարել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակի օրը։ Արհմիություններն իրենց ակտիվ գործունեությամբ մշտապես կատարելագործում են մրցության ձևերն ու մեթոդները, ընդլայնում շրջանակները։ Ձեռնարկություններում ու տնտեսություններում լայնորեն արմատավորվում են կոլեկտիվ ու անհատական նախաձեռնությունները, հայրենասիրական շարժումները, որոնց նպատակը հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն է։ Հանրապետությունում ճանաչում են գտել Երևանի էլեկտրալամպերի, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանների, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվների նախաձեռնությունները։ «Երարդշին» տրեստի՝ Գ. Մանասյանի, էլեկտրալամպերի գործարանի՝ Պ. Քալաշյանի ղեկավարած բրիգադների, Լենինականի բամբակեղենի արտադրամիավորման ենթավարպետ Մ. Ստեփանյանի նախաձեռնություններն արժանացել են ՀԱՄԽ-ի նախագահության հավանությանը։ Առանձնապես լայն արձագանք է գտել աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որակի համար համագործակցություն-մրցություն ծավալելու վերաբերյալ Լենինականի տեքստիլ կոմբինատի բանվորների, ենթավարպետների և վարպետների հայրենասիրական շարժումը։

Առաջավոր այդ և ուրիշ ձեռնարկություններում ամուր հիմքերի վրա են դրված անհատական և կոլեկտիվ սոցիալիստական պարտավորությունների, անձնական ստեղծագործական և հանդիպական պլանների մշակման գործը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, ըստ մասնագիտությունների մրցությունը, ավելի արդյունավետ են օգտագործվում բարոյական և նյութական խրախուսման միջոցները։ Արհմիութենական կոմիտեներն ու խմբերը յուրաքանչյուր ամիս ամփոփում են մրցության արդյունքները, քննարկում արտադրանքի որակի բարելավման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, խնայողության ու տեխնոլոգիական ռեժիմի պահպանման և այլ կարևոր արտադրական հարցեր։ Մրցության արդյունքներն ամփոփելիս հատուկ ուշադրություն է նվիրվում դեռևս չլուծված պրոբլեմների, աշխատանքի և մրցության կազմակերպման գործում եղած թերությունների վերացման վրա։ Մրցության հրապարակայնությունն ապահովվում է կոլեկ-

տիվների ժողովների, ցուցանիշների տախտակների, պատի թերթերի, «Կայծակ» թերթիկների և այլ միջոցներով։

Սակայն չի կարելի չնկատել, որ մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում տնտեսական և արհմիութենական կազմակերպությունների ոչ արդյունավետ գործունեության հետևանքով մրցությունն անբավարար է կազմակերպվում, առանձին դեպքերում այն կրում է ձևական բնույթ։ Վերջին ժամանակներս կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ Երևանի «Հիդրոհաղորդակ», «Հաստոցանորմալ», Լենինականի «Էլեկտրակենցաղսարք» գործարաններում և այլ ձեռնարկություններում տնտեսական և արհմիութենական կազմակերպությունները վատ են օգնում կոլեկտիվների անդամներին սոցիալիստական մրցության պարտավորությունները մշակելու գործում, որի հետևանքով դրանց զգալի մասը կրում է ընդհանուր բնույթ, չի դառնում ստեղծագործական ուժերի խթանման ազդակ։ Նշված և մի շարք այլ ձեռնարկություններում ինժեներատեխնիկական աշխատողները չունեն անձնական ստեղծագործական պլաններ, մրցության արդյունքների ամփոփումը փաստորեն վերածվում է միայն մրցանակային տեղերի բաշխման ակտի, վեր չեն հանվում արտադրության, աշխատանքի և մրցության կազմակերպման գործում տեղ գտած թերությունները, անբավարար են օգտագործվում խրախուսման միջոցները։ Լենինականի հղկող հաստոցների գործարանում 1977 թ. նյութական մշտապես գործող արտադրական խորհրդակցություններն են։ Բանվորական խրախուսման 180 հազար ռուբլի ընդհանուր ֆոնդից մրցության առաջավորներին խրախուսելու նպատակով հատկացվել է ընդամենը 2,8 հազար և ծախսվել 2,4 հազար ռուբլի։

Արհմիությունների գլխավոր խնդիրներից մեկը արտադրության կառավարմանը աշխատավորներին լայնորեն ներգրավելն է։ Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ նպատակի իրագործման ամենաարդյունավետ ձևերից մեկը մշտապես գործող արտադրական խորհրդակցություններն են։ Բանվորական այդ կոլեգիալ մարմինները ձեռնարկություններում և կազմակերպություններում քննարկում են կոլեկտիվներին հուզող, նրանց վերաբերող ամենակենսական հարցերը։ Նրանք առաջարկներ են մտցնում արտադրության, աշխատանքի և աշխատավարձի կազմակերպման, տեխնիկական նորմաների հիմնավորման, սարքավորումների ռացիոնալ օգտագործման, բանվոր-ծառայողների ստեղծագործական կարողությունների զարգացման վերաբերյալ։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, կառույցներում և սովխոզներում կան ավելի քան 1.200 համագործարանային և արտադրամասային մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ, որոնցում ընդգրկված է 48.942 մարդ։ Նրանց մեծ մասը բանվորներ են։ Մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները 1977 թ. և ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ներկայացրել են շուրջ 608 հազար առաջարկություն, որոնցից 96.750-ը իրագործվել է։

ՀԱՄԽ-ն սիստեմատիկաբար զբաղվում է մշտական գործող արտադրական խորհրդակցությունների դերի և աշխատանքի արդյունավետության բարձրացման հարցերով, նրանց ուշադրությունը սևեռում կոլեկտիվների առջև ծառացած կարևորագույն խնդիրների լուծման, բանվոր-ծառայողների ստեղծագործական ակտիվության բարձրացման վրա։

Հանրապետության արհմիութենական մարմինները ակտիվորեն մասնակցում են ժողովրդական տնտեսության զարգացման ինչպես հեռանկարային, այնպես և տարեկան պլանների քննարկմանը։ Որպես կանոն, յուրաքանչյուր տարի ՀԱՄԽ-ի նախագահության նիստերում քննարկվում են հանրապետության պետպլանի ղեկավարների զեկուցումները՝ պլանների նախագծերի մասին։ Արված առաջարկությունների հիման վրա պլանների նախահաշիվներում մտցվում են համապատասխան փոփոխություններ։ Քննարկելով ձեռնարկությունների, արտադրամասերի, տեղամասերի պլանները՝ բանվոր-ծառայողների ժողովները, արտադրական խորհրդակցությունները կատարում են անհրաժեշտ ճշգրտումներ։ Աշխատավորներն ակտիվորեն մասնակցում են նաև նյու-



թական խրախուսման ֆոնդի և սոցիալ-կուլտուրական միջոցների օգտագործման, բնակարանային ֆոնդի բաշխման հետագա կատարելագործման վերաբերյալ առաջարկությունների մշակմանը։

Արտադրական խորհրդակցությունների առաջարկությունների կիրառումից ձեռնարկություններն ստանում են տնտեսական մեծ օգուտ։ Դրանց գործունեությունը, սակայն, չի կարելի միայն տնտեսական արդյունավետությամբ գնահատել։ Էական նշանակություն ունի նաև բարոյական կողմը։ Չէ՞ որ բանվորը հպարտության զգացում է ապրում, երբ տեսնում է, թե ինչպես իր առաջարկության իրագործմամբ վերացվում են թերությունները, բարելավվում է արտադրությունը։

Արտադրական խորհրդակցությունների արդյունավետ աշխատանքի լավ օրինակ են տալիս Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտոդողերի, Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների, կոմպրեսորների գործարանները, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատը, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը, շատ ուրիշ ձեռնարկություններ։ Մինչդեռ Կիրովականի մորթու-մուշտակի ֆաբրիկայում, Երևանի տեխնոլոգիական սարքավորումների փորձնական, «Հաստոցանորմալ», Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների գործարաններում, ադմինիստրացիայի և արհմիութենական կազմակերպությունների կողմից այս կարևոր օղակի թերագնահատման պատճառով, արտադրական խորհրդակցությունների աշխատանքը ձախողվում է։

Արհմիութենական կազմակերպությունների կյանքում կարևոր են կոլեկտիվ պայմանագրերի կնքումն ու հսկողության իրականացումը դրանց կատարման նկատմամբ։ Վերջին տարիներին որոշակիորեն կատարելագործվել է կոլեկտիվ պայմանագրերի կնքման պրակտիկան։ Առաջավոր կազմակերպությունները յուրաքանչյուր կիսամյակից հետո քննարկում են կոլեկտիվ պայմանագրերի կատարման ընթացքը, նշում ադմինիստրացիայի և իրենց առաջիկա անելիքները։ ՀԱՄԽ-ի և արհմիությունների ճյուղային հանրապետական կոմիտեների նախագահություններում պարբերաբար արծարծվում են կոլեկտիվ պայմանագրերի կնքման և կատարման հարցերը, ընդունվում են համապատասխան որոշումներ, միջոցառումներ մշակվում այդ գործի բարելավման և կատարելագործման վերաբերյալ։

Արհմիութենական կազմակերպությունների աջակցությամբ ու անմիջական ղեկավարությամբ ժողովրդական տնտեսության զարգացման գործում մեծ ավանդ են ներդնում գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Մեզ մոտ տարեցտարի զարգանում է այդ շարժումը, ստվարանում են նորարարների շարքերը։ Տասներորդ հնգամյակի առաջին երկու տարում նրանց առաջարկությունների արմատավորումից ստացված օգուտը կազմել է ավելի քան 80 միլիոն ռուբլի։ Այդ հաջողությունների ձեռքբերմանը մեծ չափով նպաստել են ընկերության 680 սկզբնական կազմակերպությունները, մոտ 180 հասարակական կոնստրուկտորական բյուրոները, ավելի քան 70 ներդրման հասարակական արտադրամասերը, 415 կոմպլեքսային ստեղծագործական բրիգադները և այլ օղակներ։

Հայաստանի արհեստակցական միությունների խորհուրդը, ընկերության հանրապետական խորհրդի առաջարկով, գյուտարարության և ռացիոնալիզացիայի ծավալման նպատակով, կազմակերպել է ձեռնարկությունների, հիմնարկությունների, մինիստրությունների, գերատեսչությունների ու հասարակական ստեղծագործական միավորումների հանրապետական սոցիալիստական մրցություն։ Նորարարների մրցությունը թեև կարճ պատմություն ունի, սակայն շատ արհմիութենական կոմիտեներ և ընկերության կազմակերպություններ կուտակել են որոշակի փորձ։

Արժեքավորելով գյուտարարների և ռացիոնալիզատորների շարժման զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները և ընկերության կազմակերպությունների կատարած աշխատանքը՝ սխալ կլիներ չտեսնել այն լուրջ թերությունները, որոնք գոյություն ունեն այս բնագավառում։ Մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում անբավարար ուշադրություն

է նվիրվում գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժման մասսայականության ապահովմանը, քիչ գործ է արվում ստեղծագործական աշխատանքում նոր մարդիկ, բանվորներ ու ինժեներատեխնիկական անձնակազմ ներգրավելու համար, ձգձգվում են առաջարկությունների քննարկումն ու ներդրումը, հեղինակները ժամանակին չեն խրախուսվում։ 1977 թ. ընդունված 21.285 առաջարկությունների 84,8 տոկոսն է միայն ներդրվել։ Սա հետևանք է այն բանի, որ շատ ձեռնարկություններում անտեսում են գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման կարևորությունը։ Արհմիութենական կազմակերպությունները պետք է գործնական օգնություն և ուղղություն ցույց տան ընկերության խորհուրդներին իրենց առջև ծառացած խնդիրների լուծման ասպարեզում։

Տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարում արհմիությունների ձեռքում մեծ ուժ են գիտատեխնիկական ընկերությունները, որոնք միավորում են ավելի քան 85 հազար ինժեներների, տեխնիկների, գյուղատնտեսության մասնագետների, արտադրության առաջավորների։ Գիտատեխնիկական ընկերությունները, գիտության և տեխնիկայի առանձին պրոբլեմների մշակման հետ մեկտեղ, սկսել են ավելի ակտիվորեն մասնակցել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի տեխնիկական զարգացման հիմնական ուղղությունների որոշմանը։ Գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդին առընթեր գործում է հասարակական ասպիրանտուրա, որտեղ այժմ սովորում են 150 ինժեներատեխնիկական աշխատողներ։

Արհմիութենական կազմակերպությունները որոշակի գործ են անում նաև արտադրության և աշխատանքի գիտական կազմակերպման համակարգի մշակման ու արմատավորման նպատակով։ Վերջին տարիներին մի շարք ձեռնարկություններում, մինիստրություններում և գերատեսչություններում ստեղծվել են աշխատանքի գիտական կազմակերպման (ԱԳԿ) բաժիններ և բյուրոներ։ Ձեռնարկություններում և կազմակերպություններում գործում է ԱԳԿ-ի 226 հասարակական խորհուրդ։ Դրանք արհմիութենական կազմակերպությունների ղեկավարությամբ ակտիվորեն մասնակցում են ԱԳԿ-ի պլանների մշակմանն ու իրականացմանը։

Արհմիությունների գործունեությունը տարածվում է նաև աշխատավորների աշխատավարձի և նյութական խրախուսման, սոցիալական ապահովության, կուլտուրական ու առողջ հանգստի, սանատորակուրորտային բուժման կազմակերպման, տուրիզմի, ֆիզկուլտուրայի ու սպորտի հարցերի վրա։ Նրանք լայն իրավունքներ ու հնարավորություններ ունեն զբաղվելու նաև այնպիսի կարևոր գործերով, ինչպիսիք են՝ աշխատավորների կենցաղի բարելավումը, առևտրի ու հասարակական սննդի, մարդկանց ազատ ժամանակի արդյունավետ կազմակերպումը և այլն։ Այս խնդիրների առնչությամբ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր հասարակության կյանքում արհմիություններին մեծ տեղ է հատկացվում։ Եվ դա նրանց շատ բան է պարտավորեցնում։ Արհմիությունների աշխատանքը այնպես պետք է կազմակերպված լինի, որ ավելի լրիվ համապատասխանի նրանց իրավունքներին և նրանց պատասխանատվության աստիճանին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 125)։

Մեր երկրում աշխատավորների աշխատանքի պայմանների բարելավման և աշխատանքի պաշտպանության հարցերը մշտապես գտնվում են կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Վ. Ի. Լենինի ցուցումով և նրա անմիջական մասնակցությամբ դեռևս 1918 թ. մշակվեց և հաստատվեց աշխատանքային օրենսդրությունը։ Անհնար է բնութագրել այն արդյունավետ գործունեությունը, որ ծավալվել է մեր երկրում աշխատանքի պաշտպանության, բանվոր-ծառայողների աշխատանքային պայմանների բարելավման ասպարեզում։ Վերջին տարիներին իրագործվել են այնպիսի խոշոր մասշտաբի սոցիալ-տնտեսական միջոցառումներ, ինչպիսիք են՝ բանվորներին ու ծառայողներին հնգօրյա աշխատանքային շաբաթվա փո-



խադրելը, մի շարք կատեգորիայի աշխատողների արձակուրդների երկարացումը, կոլտնտեսականների պետական-սոցիալական ապահովագրության հարցերի լուծումը և այլն։

Աշխատանքի պաշտպանության գործում ևս կարևորագույն դերը պատկանում է արհմիություններին, բանվոր դասակարգի ամենամասսայական կազմակերպությանը։ Աշխատանքի պաշտպանության, տեխնիկայի անվտանգության, արտադրական սանիտարիայի հարցերի լուծմանն ակտիվորեն մասնակցում են իրենք՝ աշխատավորները, արհմիութենական ակտիվը։

Արհմիությունների գլխավոր խնդիրներից է աշխատանքի պաշտպանության հսկողության ապահովումը։ Կենսագործելով վերադաս օրգանների որոշումները՝ տնտեսական, արհմիութենական կազմակերպություններն զգալի գործ են արել աշխատանքային պայմանների և աշխատանքի պաշտպանության բարելավման նպատակով։ Իններորդ հնգամյակում այդ նպատակին հատկացված 69 միլիոն ռուբլու փոխարեն ծախսվել է 72 միլիոն ռուբլի։ Տասներորդ հնգամյակում միջին հաշվով տարեկան կծախսվի 20 միլիոն ռուբլի։

Կոլտնտեսություններում աշխատանքային պայմանների բարելավման միջոցների համար նախատեսված գումարների զգալի մասը տրամադրել են իրենք՝ կոլտնտեսությունները։ Այստեղ լայն կիրառություն է ստացել աշխատանքի պաշտպանության համաձայնագրերի կնքումը արհմիութենական կոմիտեների և գյուղվարչությունների միջև։ Մինիստրություններն ու գերատեսչությունները հաջողությամբ են կատարում աշխատանքային պայմանների բարելավման կոմպլեքսային պլանները։ Նոր տեխնիկայի ներդրման և ձեռքի աշխատանքի մեքենայացման խոշոր միջոցառումներ են իրականացվել հատկապես «Հայէլեկտրաշարժիչ», «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումների ձեռնարկություններում, Կիրովականի քիմիական գործարանում, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատում։ Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում վերակառուցվել և ներդրվել են մեծ քանակությամբ օդափոխիչ սիստեմներ։ Կաթի և մսի արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում արտադրությունից հանվել են հնացած սարքավորումները և ներդրվել նորերը։

ՀԱՄԽ-ն մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում տեխնիկական տեսչության աշխատանքի մեթոդների և ոճի կատարելագործման հարցերը։ Միայն 1977 թ. տեսչության միջոցով ուսումնասիրվել են 1.077 ձեռնարկություն և կազմակերպություն, առաջարկվել է իրականացնել աշխատանքային պայմանների բարելավման 12.160 միջոցառում։ Անվտանգության տեխնիկայի կանոնների խախտման համար պատասխանատվության է ենթարկվել 404 պաշտոնատար անձ։ Տեսչության պահանջով զգալի թվով ղեկավար կադրեր հանվել են աշխատանքից, դատապարտվել կամ տուգանվել։ Տեղերում աշխատանքի պաշտպանության նկատմամբ հասարակական մշտական հսկողություն է սահմանել արհմիութենական ակտիվը՝ հասարակական տեսուչները և ֆաբրիկագործարանային տեղական կոմիտեներին առընթեր աշխատանքի պաշտպանության հանձնաժողովների անդամները։ ՀԱՄԽ-ի նախագահությանն առընթեր ստեղծվել է տեսչական խորհուրդ, որը կոմպլեքսային ստուգումներ է անցկացնում ձեռնարկություններում։ ՀԱՄԽ-ի նախագահության և քարտուղարության նիստերում սիստեմատիկաբար լսվում են առանձին մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ղեկավարների զեկուցումներն աշխատանքային պայմանների բարելավման, աշխատանքի պաշտպանության, աշխատանքային օրենսդրության կիրառման վերաբերյալ։ Համատեղ ուսումնասիրված մի շարք հարցեր քննարկվել են ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության նիստերում։ Այս ամենի շնորհիվ ձեռք են բերվել որոշակի հաջողություններ։ Այդուհանդերձ, աշխատանքային պայմանները և անվտանգության տեխնիկայի վիճակը մի շարք ձեռնարկություններում խիստ անբավարար են։ Ավտոտրանսպորտի, ավտոճանապարհների շինարարության ու շահագործման, արդյունաբերական շինարարության, գյուղատն-

տեսության մինիստրությունների տնտեսություններում անցյալ տարի, 1976 թ. համեմատությամբ, մեծացել է ծանր հետևանքներով խեղումների թիվը։

Ներկայումս հանրապետությունում լայն շարժում է ծավալվել աշխատանքի պայմանների բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման համար։ Հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել արտադրության կուլտուրան, խստիվ հետևել աշխատանքի պաշտպանության կանոնների ու նորմաների պահպանմանը, կանխել արտադրական խեղումները։

ՍՍՀՄ աշխատանքային օրենսդրության համաձայն ՀԱՄԿԽ-ի նախագահությունը 1976 թ. նոյեմբերի 22-ի որոշմամբ հանրապետությունների արհմիությունների խորհուրդներում 1977 թ. հունվարի 1-ից ստեղծեց աշխատանքի իրավական տեսչություններ։ ՀԱՄԽ-ի իրավական տեսչությունը հսկողություն ու վերահսկողություն է իրականացնում աշխատանքային օրենսդրության կիրառման նկատմամբ, օգնում ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների ղեկավարությանը և արհմիութենական կոմիտեներին՝ կատարելու աշխատանքային օրենսդրության պահանջները, կանխելու օրինախախտումները։ 1977 թ. ապրիլից մինչև 1978 թ. մարտը տեսչությունն ստացել է 619 դիմում-բողոք՝ աշխատանքից ազատման ու փոխադրման, աշխատանքային գրքույկների լրացման, բանվորական ժամանակի և հանգստի ռեժիմի խախտման, կանանց ու անչափահասների աշխատանքային իրավունքների պահպանման և այլ հարցերի վերաբերյալ։ Խախտումների վերացման համար տեսուչներն արել են բազմաթիվ կարգագրեր, իրավական տեսչության պահանջով աշխատանքում վերականգնվել են 55 բանվոր-ծառայողներ, կատարած խախտումների համար տուգանվել են մի քանի ղեկավար աշխատողներ, ոմանց վերաբերյալ միջնորդություններ են ներկայացվել մինիստրություններին և գերատեսչություններին՝ նրանց կարգապահական տույժի ենթարկելու համար։

Չնայած ձեռնարկվող միջոցներին՝ դեռևս շարունակվում են աշխատանքային օրենսդրության խախտումները։ Արարատի շրջանի մթերումների բազայի դիրեկցիան անօրինական կարգով գործից ազատել էր երեք բանվորի։ Նրանք, իհարկե, վերականգնվեցին, բայց բավական ջանքեր պահանջվեցին, որպեսզի բազայի ղեկավարներն ըմբռնեն օրենքի էությունը։ Շատ են արձակուրդից ետ կանչելու, հետագայում չօգտագործած արձակուրդը չտալու փաստերը։

Հանրապետության արհմիությունները տնօրինում են սոցիալական ապահովության հսկայական միջոցներ։ 1971 թ. 64 միլիոնի փոխարեն 1977 թ. դրանք հասան ավելի քան 120 միլիոն ռուբլու։ Սոցիալական ապահովության համար բյուջեից կատարվող վճարումները մեկ բանվոր-ծառայողի հաշվով 19 ռուբլուց հասել է 226 ռուբլու, միայն առողջարաններում և հանգստյան տներում 1977 թ. բուժվել և հանգստացել են 102.800 աշխատողներ, պիոներական ճամբարներում՝ 80 հազար պիոներ-դպրոցականներ։ ՀԱՄԽ-ի տրամադրության տակ են 27 սանատորիա, պրոֆիլակտորիա ու հանգստյան տուն, 210 տուրիստական հանգրվան՝ 6.600 մահճակալ-տեղով։ Հիմնարկ-ձեռնարկություններին կից գործում են մշտական ու սեզոնային պանսիոնատներ ու հանգստյան տներ, որտեղ յուրաքանչյուր տարի հանգստանում են շուրջ 15 հազար բանվոր-ծառայողներ և նրանց ընտանիքների անդամներ։ Ձեռնարկություններում այժմ գործում են մեծ թվով սանատորական լաբորատորիա, բժշկասանիտարական կետ, բժշկական և ֆելդշերական առկայաններ։

Զգալի աշխատանք է կատարվում բնակարանի կարիք ունեցող քաղաքացիների հաշվառման և բնակելի տարածության բաշխման նպատակով։ Ֆաբրիկագործարանային կոմիտեներին առընթեր գործող բնակկենցաղային հանձնաժողովների գործունեությանը մասնակցում են արհմիության ավելի քան 19.700 ակտիվիստներ։ ՀԱՄԽ-ի նախագահությունը քննարկել է կուլտուրայի աշխատողների, մետալուրգիական արդյունաբերության բանվորների արհմիութենական հանրապետական կոմիտեների կողմից սպասարկվող Լենինական և Կիրովական քաղաքների հիմնարկ-ձեռնարկություններում ու կազմակերպություններում բնակարանային հաշվառման և բաշխման վիճակը, ձեռնարկել կոնկրետ միջոցներ եղած թերությունները վերացնելու համար։



Արհմիութենական կազմակերպություններն առևտրի և հասարակական սննդի ձեռնարկությունների նկատմամբ իրականացնում են հասարակական հսկողություն։ Ֆաբրիկագործարանային կոմիտեներին կից գործում են հասարակական հսկողության հանձնաժողովներ, որոնք, ստուգումներից բացի, օգնում են առևտրական կազմակերպությունների ղեկավարներին՝ ներդնելու առևտրի առաջավոր ձևերը, ընդլայնելու առևտրի և հասարակական սննդի ցանցը, ապրանքների, կերակրատեսակների տեսականին, կատարելու ապրանքաշրջանառության և սեփական արտադրանքի պլանները։

***

ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից ելնելով՝ ՀԱՄԽ-ն և արհմիութենական կազմակերպություններն ավելի են կատարելագործում դաստիարակչական և կուլտուր-մասսայական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Արհմիութենական կուլտուր-լուսավորական հիմնարկություններում պարբերաբար կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ։ Զգալիորեն ընդլայնվել է կոմունիստական աշխատանքի դպրոցների ցանցը, դրանք դարձել են արտադրության առաջավորների փորձի ուսումնասիրման ու տարածման լավագույն օջախներ։ Դպրոցների ունկնդիրներից հինգ հազարը գյուտարարներ ու նորարարներ են, ավելի քան 20 հազարը՝ կոմունիստական աշխատանքի հարվածայիններ։ Արհմիութենական ակումբներին կից գործում են արվեստի տարբեր ժանրերի 2.316 գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվներ՝ շուրջ 51.276 մասնակիցներով։ Գեղարվեստական ինքնագործունեության 31 կոլեկտիվներ արժանացել են ժողովրդականի կոչման։ Զգալի աշխատանք է կատարվում կինոսիրողական արվեստը մասսայականացնելու ասպարեզում։ Արհմիությունները հսկայական միջոցներ են տրամադրում սպորտի զարգացմանը։ Հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքները գլխավորում են արհմիութենական հինգ կամավոր մարզական ընկերություններ։ Զգալիորեն ավելացել է արհմիությունների տնօրինության տակ գտնվող՝ բնակչության տուրիստական, էքսկուրսիոն սպասարկման ծավալը։ Միայն վերջին հինգ տարում տուրիստական հանգրվանների կառուցման և բարեկարգման համար ծախսվել է 2 միլիոն 674 հազար ռուբլի։ Հանրապետությունում գործում է 10 էքսկուրսիոն բյուրո, վերջին չորս տարում մշակվել են 52 էքսկուրսիոն թեմաներ ու երթուղիներ։

Զգալիորեն ընդլայնվել են հանրապետության արհմիութենական կազմակերպությունների միջազգային կապերը։ ՀԱՄԽ-ը և ճյուղային հանրապետական կոմիտեները հինգ տարում ընդունել են արհմիութենական և բանվորական 95 պատվիրակություններ՝ 40 երկրներից։ Մեր հանրապետությունից արտասահմանյան տուրիստական շրջագայության են մեկնում տարեկան ավելի քան ութ հազար բանվոր-ծառայողներ, կոլտնտեսականներ, մտավորականներ։

Մեր հանրապետության արհմիութենական կազմակերպությունը, ղեկավարվելով կուսակցության և կառավարության դիրեկտիվներով, ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարի որոշումներով, հետայսու ևս կծավալի ակտիվ և արդյունավետ գործունեություն, պատվով կլուծի իր առջև ծառացած խնդիրները, իր ավանդը կմուծի ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումների իրականացման գործում։

---

## Հաշվետու-ընտրական ժողովները կուսկազմակերպություններում

# ԾԱՂԿՈՒՆ ԱՅԳԵՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ

### ՊՏՂԱՌԱՏ ԱՅԳԻՆԵՐ

...Հայաստանի կոմկուսակցության Նոյեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար Գևորգ Նախշքարյանի հետ զրուցում ենք Արճիսի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի լուսաբանման շուրջ: Եվ քարտուղարը ոգևորությամբ պատմում է այդ տնտեսության ու նրա կուսկազմակերպության մասին.

— Մեր առաջավոր տնտեսություններից է Արճիսը, կուսկազմակերպությունը՝ ամենախոշորներից ու մարտունակներից: Անցած տարի, համամիութենական սոցիալիստական մրցությունում բարձր արդյունքների հասնելու համար, սովխոզն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին, իսկ անունը գրանցվեց ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի պատվո տախտակին:

Ապա քարտուղարը նշում է, որ տնտեսությունը պատվով է կատարում իր առաջադրանքները և խորհուրդ է տալիս՝ լինել արգասալի այգիներում, ապա բացատրում. «Արգասալի այգիներ» ստեղծելու նախաձեռնությամբ 1977-ին հանդես եկավ Արճիսի սովխոզի՝ Սեյրան Մակարյանի ղեկավարած բրիգադը: Այն արժանացավ սովխոզի կուսկազմակերպության և կուսշրջկոմի բյուրոյի հավանությանը: Ինչպես անցած, այնպես էլ այս տարի քննարկեցինք հայրենասիրական այդ նախաձեռնությունը տարածելու հարցը և հրապարակեցինք հատուկ բյուլետեններ արճիսցիների փորձի մասին: Նախաձեռնությունը վարակիչ էր, այն վերածվեց համընդհանուր շարժման և տարածվեց ու արմատավորվեց շրջանի այգեգործական մյուս տնտեսություններում: Հաղթանակի, Ջեթունի, Լալվարի, Պտղավանի, Բերդավանի, Կողբի սովխոզներում ևս տասնյակ բրիգադներ արճիսցիների օրինակով պայքարի ելան արգասալի այգիներ ստեղծելու համար: Իսկ արդյունքը վատ չէ:

Ընթացիկ տարվա ապրիլին կուսշրջկոմի բյուրոն ընդհանրացրեց արճիսցիների փորձը, ըստ արժանվույն գնահատեց բարձր բերքատու այգիների ստեղծման գործում Սեյրան Մակարյանի, Սարգիս Միսկարյանի, Սերյոժա Դանիելյանի ղեկավարած բրիգադների լուրջ հասումները և նոր հանձնարարականներ տվեց այգեգործական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններին:

...Մեքենան սլանում է Չորագետի հովիտ տանող ճամփով: Հեռվից աչք է շոյում կանաչ օազիսը, որը դարավոր անապատում ընդամենը մեկուկես տասնամյակի պատմություն ունի:

Մայրուղուց առանձնանում է ասֆալտապատ խճուղին և ժապավենի պես ձգվում վեր, հալվում Օձասարի շեկ լանջին ամփոփված փոքրիկ բնակավայրի եզրին: Սովխոզի դիրեկտոր Հայկազ Մկրտումյանի պատմածից տեղեկանում եմ, որ խճուղին կառուցվել է՝ այգիների բերքն անկորուստ տեղ հասցնելու, բնակավայրը հիմնվել այգիներին մոտիկ՝ բանվորական ուժ ունենալու նպատակով:

Դեղձավան է կոչվել այն և հառնել ճիշտ այնտեղ, որտեղ երկուսուկես դար առաջ եղել է խոշոր բնակավայր, որի բնակիչները լքել են այն մալարիայի պատճառով: Այսօրվա Դեղձավանը, ճիշտ է, առայժմ ընդամենը 14 տուն և 46 ընտանիք ունի, բայց ունի և զարգացման լայն հեռանկարներ. այստեղ պետության միջոցներով կկառուցվի 100-ից ավելի տուն, իսկ բնակչության թիվը կհասնի 2.000-ի: (Չմոռանամ հիշել դիրեկտորի տրտունջը. «Գյուղի կառուցումը ձգձգվում է», և նրա բարի ցանկությունը. «Հարկ է, որ գյուղմինիստրությունն ու «Ախթալշին» տրեստն արագացնեն գյուղի կառուցման գործը, որովհետև սովխոզին բանվորական ուժ է պետք, երեխաներին՝ դպրոց»): Հետո կենարար ջուրը կբարձրանա Դեղձավանը երիզող շեկ լանջերն ու տարիներ անց դրանք ևս կծածկվեն արևահամ խաղողի ու դեղձի նոր դրախտ-այգիներով:



Հիմա Դեղձավանի առջև, խճուղուց աջ ու ձախ, խաղողի ու պտղատու բարեբեր այգիներ են: Աշուն է. կախարդ բնությունը սարյանական վրձնահարված է տվել ծառերի ու վազերի ցանգուրներին, և այգեստանը, արևի շողերով օծված, բոցավառվել է ծիածանի հրեղեն գույներով:

Պտղատու ծառերը վաղուց բեռնաթափվել, թեթևացած շունչ են քաշում, իսկ խաղողի այգիների առանձին հատվածներում վազերը տակավին ծանրաբեռն են ոսկեղեղին ու սևաթ ողկույզներով: Արճիսցիները վերջին հեկտարների բերքն են ժողովում. աշխատանքի երգն է հնչում այգիներում ու դաշտերում:

Ձախակողմյան խաղողի այգին, որ սկիզբն է նաև Արճիսի կանաչ օազիսի, մեր առջևումն է. № 6 բրիգադինն է՝ նախաձեռնության հեղինակինը: Դիրեկտորը մեկնաբանում է՝ գերազանց խնամք ու մշակություն, մեքենայական աշխատանքի բարձր մակարդակ, լիարժեքության ապահովում, հիվանդությունների և վնասատուների բացառում, առատ բերք, արագ ու անկորուստ բերքահավաք, ցածր ինքնարժեք, բարձր արդյունավետություն...

Բրիգադավար Սեյրան Մակարյանը ժպտադեմ դիմավորում է. «Մնում է հավաքելու մեկ հեկտարի բերքը, բայց արդեն 62 տոննայով գերակատարված է պլանը, հեկտարից՝ 150 ցենտներ խաղող» (Ռեկորդային սորտի աննախադեպ բերք է սա Նոյեմբերյանի շրջանում): Տասնչորս հեկտարանոց այգի է՝ իրոք, արգասալի. խնամքով մշակություն, փարթամ վազերի լիարժեք շարքեր, ոչ մի մոլախոտ, փխրուն, պարարտ հող: Ասել է, թե առկա են արդյունավետ այգու համար կանխորոշված բոլոր գործոնները:

— Լիարժեքությունը,— ասում է սովխոզի դիրեկտորն անսքող հպարտությամբ,— 99 տոկոս է, եթե ոչ՝ հարյուր: Ապա ետ տանելով ողկույզները սքողած տերևները, ավելի է ոգևորվում,— ա՜յ, բերք է, մի փչացած գիլա չկա:

Վեցերորդի այգիները, իհարկե, եզակի չեն... Խճուղու աջակողմյան հատվածում ենք: Փայտաշեն տնակի առաջամասը պարուրված է խաղողի փարթամ թարմայով: Սև ողկույզները, ասես, առկայծում են սևորակ աչքերի պես:

— Այստեղ,— ասում է սովխոզի դիրեկտորը,— 1966-ին Սերյոժա Չիլինգարյանը, որն այն ժամանակ կոլտնտեսության նախագահն էր, տնկեց առաջին վազը: Հաջորդ տարի արդեն Չորագետի հովտում Արճիսն ուներ 26 հեկտար պտղատու և խաղողի այգի:

Դիրեկտորը պատմում, իսկ ես համառոտագրում եմ. Նոյեմբերյանի բազմաստիճան ջրհան կայանի գործարկմամբ Դեբեդի կենսաբեր ջուրը մղվեց Չորագետի հովիտը երիզող սարերի ստորին լանջերը և երակ առ երակ, հեքիաթային կարկաչով մխրճվեց խաղողի ու պտուղների նորատունկ այգիները: Հագեցավ դարերով պապակ, ճաքճքած հողի ծարավը, ու երբեմնի անապատը, ուր վաղնջական ժամանակներից վխտում էին օձերն ու կարիճները, ամենուր փուշ էր ու տատասկ, բռնկվեց պտղատու ծառերի ու խաղողի վազերի կանաչ խնդությամբ: Ընդամենը մի քանի տարի, և Չորագետի հովտի՝ Արճիսի սովխոզին հատկացված տարածքում փռվեցին խաղողի 140 և պտղի 160 հեկտար այգիները:

Դիտում եմ մյուս բրիգադների պտղառատ ագիները և անկեղծ համակրանքով համակվում հողից բերք ու բարիք քամող մարդու նկատմամբ: Բնությունից մեծ ջանքերով նվաճված հողազանգվածում անօգտագործելի ոչ մի կտոր չկա:

### ԿՈՒՍԺՈՂՈՎԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովն ինչպես բոլոր, այնպես և Արճիսի սովխոզի կոմունիստների համար կարևոր իրադարձություն է: Եվ բնավ զարմանալի չէ, որ սեպտեմբերի 30-ին տեղի ունեցած հերթական կուսժողովը խնդիր էր դրել մինչև հաշվետու-ընտրականն ավարտել նաև այգեկութը: Կոնկրետ առաջադրանքներ էին տրվել բոլոր բրիգադներին, մասնագետներին, ղեկավարությանը:

Այդ ժողովում № 1-ի բրիգադավար Խաչիկ Միկիչյանը խոստացել էր իր կոլեկտիվով օգնել 5-րդ և 6-րդ բրիգադներին: Եվ հիմա, ինքը, բրիգադի կոմունիստներ Հմայակ Բաղդասարյանը, Սամադ Զախարյանը, Խանում Մնացականյանը, ուրիշներ 6-րդի այգում են ու տերերի հավասար հոգածությամբ, մեկիկ-մեկիկ քաղում են հասուն ողկույզները:

Երրորդ բրիգադի այգում նույնպես եռուզեռ է: Ասես կանգնած ես ամառային պայծառ արևից ջերմացած մեղվափեթակի մոտ: Ահա մի մեծ խումբ, շղթա կազմած, սանրում է խաղողի շարքերը, խնամքով պոկում ոսկեղեղին ողկույզները, լցնում դույլերն ու արկղերը: Հետո դրանք փոխանցվում են միմյանց ու անվերջանալի հոսքով դատարկվում բեռնավորոյի մեջ:

Բարեբեր աշուն է: Ջահել ու ահել այգում են: Վաղուց են կենսաթոշակավորվել կոմունիստներ Խաչիկ Պետրոսյանն ու Սիրան Եգանյանը: Բայց տակավին աշխատում են երիտասարդական ավյունով: Գուցե երիտասարդ այս աղջիկներին՝ Նատալյային, Զույհետային, Պայծառին, մյուսներին, ոգևորում է տարեցների այդ եռա՞նդը: Սովխոզի դիրեկտորը խրախուսում է աղջիկներին.

— Վաղը կուսակցական հաշվետու-ընտրա-

կան ժողովին զեկուցելու ենք այգեկութն ավարտելու մասին:

Աղջիկները ժպտում են, իսկ մեկը բոլորի անունից՝

— Մեր բրիգադի կողմից ապահով եղեք:

Հետաքրքրվում եմ արդյունքներով:

— Պլանը 232 տոննա է, բայց 330-ի կհասցնենք,— նկատում է բրիգադավար Ազատ Մինասյանը:

Այգեկութը շարունակվում է: Բեռնավտոն պոկվում է տեղից, հերթական երթը կատարում, իսկ այգեհատվածի եզրին ողկույզներով լի արկղեր են: Ու դիրեկտորն ասում է.

— Երրորդ բրիգադին լրացուցիչ ավտոմեքենա է պետք:

Քառորդ դար առաջ կուսակցությանը զինվորագրվեց Սերյոժա Դանիելյանը: Մեկ տասնամյակ առաջ Օձունի գյուղտեխնիկումի շրջանավարտին վստահեցին № 5 բրիգադը: Եվ նա արդարացրեց իրեն. վաստակը կառավարական շքանշանով նշվեց: Անցած տարի բրիգադը զեկուցեց պտղի արտադրության հնգամյա պլանը կատարելու մասին. դա նրա արժանի ներդրումն էր համամիութենական դրոշի նվաճման գործում: Բրիգադավարը հավաստիացնում է, որ խաղողի արտադրության հնգամյա պլանը կկատարի չորս տարում: Այդ կարծիքին են և բրիգադի կուսկազմակերպիչ Նինա Օնիշչենկոն, և՛ կոմերիտուհի Ռիտա Հարությունյանը, և՛ մյուսները: Վկայությունը՝ այս տարվա արդյունքը. տակավին մեկ հեկտար մնում է հավաքելու, բայց արդեն տարեկան պլանը գերակատարված է 115 տոկոսով:

— Քաղցրությունը,— հպարտանում է բրիգադավարը,— 18—19,5, նույնիսկ՝ 20—21 տոկոս է:

Ասել է, թե արճիսցիները շամպայն գինիների և կոնյակի սպիրտի հիանալի հումք են հանձնում պետությանը:

## ԳՈՐԾԱՐԱՐ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ

Աշնանային խաղաղ երեկո է, ուրվագծվում է մերձակա անտառապատ լեռնապարը. բնակավայրը լցվել է անտառների խորհրդավոր շշուկներով: Գյուղն ինքը մի անտառ-այգի է, որ թիկնել է սարի ուսին, փռվել լանջն ի վար:

Թուխպերը փակել են աստղերի ճամփան, ու անձրևի մանր կաթիլները տամկացնում են գետինը:

— Լավ է, խաղողի բերքը հավաքեցինք,— ասում է մեկը:

— Իսկը աշնանացանի եղանակ, ինչքան սիրտն ուզում է, թող գա:

— Արոտը կփարթամանա:

Մոտենում է կուսակցական կազմակերպության ժողովի սկսման պահը, և զրույցը դադարում է, կոմունիստները տեղեր են գրավում նիստերի դահլիճում:

Այստեղ ամեն ինչ հաճելի ու տրամադրող է: Աջ անկյունում՝ ամբիոնի ետևը հուրհրատում է երկու ալ դրոշ: ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության ու ճյուղային արհմիության Կենտկոմի և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի պարգևներն են՝ 1973-ի և 1977-ի բարձր արդյունքների համար (ի դեպ, սրանք միակը չեն. արճիսցիները նախընթաց տարիներին ևս արժանացել են միութենական ու հանրապետական մի շարք պարգևների):

Նստել են տարբեր սերնդի կոմունիստներ. մի մասը՝ նախապատերազմյան, նույնիսկ քսանականների, մի մասը՝ հետպատերազմյան, նույնիսկ տասներորդ հնգամյակի տարիների ստաժով: Վաթսուներկու կոմունիստ, գերակշռող մասն աշխատում է արտադրության ոլորտում: Տասնութ կենսաթոշակառուներից տասնչորսը տակավին չեն լքել ֆերման, դաշտն ու այգին:

Ուշադիր ունկնդրում է զեկուցողին ալեզարդ Ասատուր Եգանյանը. բոլշևիկների կուսակցությանը զինվորագրվել է 1918-ի դժվարին տարում: Յոթն էին բջջի կազմում, բայց զորեղ մի ուժ, որ շատ բան արեց լենինյան գաղափարները տարածելու, գյուղացիության հեղափոխական կողմնորոշման համար: Հայաստանի Նոյեմբերյան այգաբացից առաջ դարձավ մարտական շտաբի պետ, մասնակցեց սովետական կարգերի հաստատմանն իրենց լեռնաստանում: Նրա ղեկավարած հեղկոմը պաշտպանեց հեղափոխության նվաճումները, գլխավորած կոմերիտական կազմակերպությունը խթանեց գյուղի վերընթացը:

Հիմա նա ուրախ է, որ գյուղը, պետական տնտեսությունը ղեկավարում են բանիմաց մարդիկ, որ իրենց երբեմնի կուսբջիջն այժմ գրեթե տասնապատկվել է, և կոմունիստների նոր սերունդը շարունակում է նախորդների լավ ավանդույթները: Արճիսի կոմունիստները դարձել են առավել ակտիվ, նախաձեռնող:

Հիմա ես նայում եմ կոշտացած ձեռքերով, բրոնզագույն դեմքերին այդ աշխատասեր մարդկանց և զգում, թե ինչպիսի հետաքրքրությամբ են ունկնդրում կուսբյուրոյի քարտուղար Աշոտ Մարտիրոսյանի զեկուցումը բյուրոյի գործունեության մասին, որը, ըստ էության, իրենց հաշվետվությունն է: Գործարար խոսակցություն է ծավալվում զեկուցման շուրջ:

Զեկուցումից և ելույթներից պարզ երևում է, որ կոմունիստներն ամենուրեք քայլում են ավանգարդում, գլխավորում նորի ու առաջավորի արմատավորման շարժումը, օգնում հանրային



արտադրության զարգացմանը, ռեզերվների ճիշտ օգտագործմանը:

## ՆՈՐԻՆ՝ ԿԱՆԱՉ ԺԱՆԱՊԱՐՀ

Ասում են՝ արճիսցիները նորը սիրող, նորույթն արմատավորող մարդիկ են: Եվ դա ավանդույթ է: Կուսկազմակերպությունը ո՛չ միայն նորի ու առաջավորի ջատագովն է եղել, այլև՝ խրախուսողն ու գլխավորողը: Այս ասպարեզում հաջողություններն անուրանալի են:

Բայց ոչ մի հաջողություն ձեռք չի բերվել հենց այնպես, առանց ջանքերի: Շատ դժվարություններ են ծագել նախընթաց տարիներին, բայց կոմունիստները հաղթահարել են, լուծել բազում բարդ պրոբլեմներ, խնդիրներ:

...Մի քանի տարի առաջ Արճիսում հեկտարից 80 ցենտներ խաղողի բերքի ստացումը հրաշք էր թվում, սակայն այդ «հրաշքը» նրանց չէր գոհացնում. կոմունիստները չէին կարող հաշտվել այն մտքի հետ, որ ամեն տարի պտղի բարձր բերք է ստացվում, իսկ խաղողագործությունը... Ի՞նչ անել: Կենսագործել կուսակցության ու կառավարության ծրագրային որոշումները:

Արճիսի կոմունիստներն իրենց ժողովներում, կուսբյուրոյի նիստերում բազմիցս քննարկեցին այգեգործության (և ոչ միայն այդ ճյուղի) զարգացման հարցերը, ծանր ու թեթև արեցին իրենց արածն ու անելիքները, որոշեցին առավել մեծ ուշադրություն նվիրել առաջավոր փորձի արմատավորմանը, գիտության ու արտադրության կապի ամրապնդմանը:

Հայաստանի խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները զորավիգ եղան արտադրության մարդկանց: Այդ գործում մեծ է պրոֆեսոր Ռուբեն Երգեսյանի վաստակը: Անխոնջ գիտնականը դարձավ նրանց բարեկամն ու խորհրդատուն:

— Գարնանն ու ամռանը,— ասում է բրիգադավար Սարգիս Միսկարյանը,— պրոֆեսոր Երգեսյանը տասն օրը մեկ այցի է գալիս մեզ, բանվորներին ծանոթացնում էտի, խնամքի ու մշակության նոր մեթոդներին:

Իսկ սովխոզի դիրեկտոր Հ. Մկրտումյանը հիշում է.

— Պրոֆեսորի խորհրդով, խաղողի էտի ժամանակ ավելի շատ բերքատու շիվեր թողնվեցին, և դա նպաստեց բերքի աճին:

Երգեսյան-գիտնականի մտահղացման արգասիք էր բարձրաբուն-լայնաշար և բարձրաբուն-աստղաձև նորատիպ խաղողի այգիների հիմնումը երեքական հեկտարի վրա: Դա երաշխավորում է մեքենայացման բարձր մակարդակ, առատ բերք: Այգեգործները մեծ հույսեր են կապում նոր եղանակի հետ, ամեն ինչ անում վազերի նորմալ աճի համար:

Նորո՞ւյթ կա հանրապետությունում, շրջանում— արճիսցիները պիտի առաջիններից մեկը ներդնեն: Մոլդավիայի ու Կրասնոդարի այգեգործների փորձը դարձել է տնտեսության մասնագետների ուսումնասիրության առարկան: Դա օգնում է նրանց՝ արմատավորելու այգիների խնամքի ու մշակության առաջավոր եղանակներ, մեքենայացնելու դժվարին շատ գործեր, խաղողի այգիների հողը պարարտացնելու հանքային ու օրգանական նյութերով: Շրջանում առաջիններից մեկը այստեղ են կիրառվել այգիներում մոլախոտերի դեմ քիմիական պայքարի եղանակը, կովերի մեքենայական կիթն ու ստացիոնար խնամքը և այլն:

Ամեն մի նորույթ բերք ու բարիքի, առատության լուրջ հայտ է: Արճիսում այգի հիմնելիս հաշվի են առնում զուտ սորտայնության ու սեզոնային հասունացման գործոնները. ուրեմն մարդիկ հեռուն են տեսնում, նոր ռեզերվ ստեղծում էկոնոմիկայի դինամիկ աճի համար: Նրանք խնամքով հավաքեցին առաջին ընտրովի բերքը խնձորի պալմետային ու գաճաճ այգիներից: Դրանք 21 հեկտար են ու տակավին բերքատու չեն, և արճիսցիները ենթադրում, իսկ գիտությունն ու պրակտիկան հաստատում են, որ ամեն մի հեկտարից կստացվի 350—400 ցենտներ բերք՝ կրկնակի-եռակի անգամ ավելի սովորական այգիների համեմատությամբ:

Եվ ահա այսօր նորի ու առաջավորի տարածման, գիտության ու արտադրության կապի ամրապնդման հարցերը խորապես հուզում են հաշվետու-ընտրական ժողովի մասնակիցներին:

Իր ելույթում բրիգադավար Սերյոժա Դանիելյանը ասում է, թե գիտնականներն օգնում են մեզ՝ վճռական բեկում մտցնելու խաղողագործության և պտղաբուծության բնագավառում: Այսօր մեր տնտեսությունում ծնվել ու արմատավորվել է այգիների բուժման՝ գյուղատնտես կոմունիստ Սերյոժա Չիլինգարյանի փորձը: Գարնանից աշուն նա հետամուտ է լինում, որպեսզի սրսկումները կատարվեն ըստ սահմանված կանոնների ու ժամկետների, բարձր որակով:

## ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՀՈԳՍԵՐ, ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Մեկ տարվա գործունեության հանրագումար է այսօր. կուսբյուրոյի քարտուղար Ա. Մարտիրոսյանը թվեր է հրապարակում, դրանց լեզվով խոսում ժողովականների հետ: Դրանք վկայում են, որ տնտեսությունը պատվով է լու-

ծում իր առջև ծառացած խնդիրները, ստեղծում նոր առաջընթացի հաստատուն նախադրյալներ:

Ծանոթանում եմ տարվա արդյունքներին: Պլանից ավելի մեծ քանակությամբ հացահատիկ, բանջարեղեն, միրգ, խաղող, միս, կաթ, բուրդ, խոտ, սիլոս ու սենաժ, հնգամյակի երեք տարվա առաջադրանքների զգալի գերակատարում, բերքատվության ու մթերատվության բարձր մակարդակ, նախատեսված 410.700 ռուբլու դիմաց 700 հազար ռուբլուց ավելի ակնկալվող օգուտ...

Ժողովականները, սակայն, հակված չեն կարծելու, թե իրենց տնտեսությունում ամեն ինչ կատարյալ է, անթերի: Հասումների հետ նրանք տեսնում են և՛ արտադրության նեղ տեղերը, և՛ դրա առաջընթացն արգելակող խոչընդոտները, տեսնում թերացողներին ու կշտամբանքի արդարացի խոսք ուղղում նրանց հասցեին: Կոմունիստները գտնում են, որ տակավին կան չօգտագործված շատ ռեզերվներ, նույնիսկ առաջավորներն ունեն լուրջ վրիպումներ, կիսակատար գործեր: Թեկուզ և բրիգադների արդյունքների խիստ տարբերությունը: Պտղատու այգիների միջին բերքը, օրինակ, սովխոզում կազմել է 128 ցենտներ, № 2 բրիգադում՝ 154, իսկ ահա № 3-ում՝ 88,7 ցենտներ: Եվ կուսբյուրոյի քարտուղարը հայտնում է... «Ա. Մինասյանի ղեկավարած բրիգադը սովխոզում միակն է (7-ից), որ չի կատարել պտղի արտադրության պլանը»: Աններելի համարվեց ոչ-ստանդարտ պտղի մթերումը, որի համար հատկապես քննադատվեց բրիգադավար Փ. Միկիչյանը: Կամ խաղողի մեկ հեկտարի բերքը սովխոզում 128 ցենտներ է, № 6 բրիգադում՝ 151,5, մինչդեռ № 2-ում (Ս. Բեջանյան)՝ 91, № 3-ում (Ս. Միսկարյան)՝ 97,8 ցենտներ: Հետևաբար, պլան կատարելը տակավին քիչ է, հարկ է մտածել տնտեսության, շրջանի միջին մակարդակը գերազանցելու մասին: Դա թաքնված ռեզերվ է, որից օգտվելը շատ բան կարող է տալ: Այս կարևոր խնդրի վրա սևեռեցին կոմունիստների ուշադրությունը նաև կուսշրջկոմի առաջին քարտուղար Գ. Նախշքարյանը, սովխոզի դիրեկտոր Հ. Մկրտումյանը, գլխավոր գյուղատնտես Ս. Միսկարյանը:

— Նվազ բերքատվության հիմնական պատճառը,— ասում է գլխավոր գյուղատնտեսը,— բնակլիմայական աննպաստ պայմաններն էին, բայց մենք ևս թերացել ենք. ոռոգման ջուրը երբեմն անարդյունավետ էր օգտագործվում, վատ էր կատարվում գիշերային ջրումը, որը լավ ռեզերվ է: Առանձին բրիգադներում ցածրորակ էր խաղողի կանաչ կապը:

Անասնապահությունն առաջատար ճյուղ է Արճիսում. կովերի կաթնատվությունն անընդհատ ավելանում է, պլանները կատարվում, արմատավորվում է մատղաշի ինտենսիվ աճեցման մեթոդը: Բայց ահա կուսբյուրոյի քարտուղարը, դրվատելով ուսանելին ու լավը, միաժամանակ աններելի է համարում երկրորդ կարգի կաթի հանձնման փաստը, որի պատճառով զգալի վնաս է կրել տնտեսությունը: Լուրջ կշտամբանք կա նրա ասածում. ինտենսիվ եղանակով բտված անասունի քաշը Լալվարի և Ջեյթունի սովխոզներում 450—480 կգ է, իսկ իրենց տնտեսությունում՝ 354 կգ: «Ահա թե ում պետք է ընդօրինակեն մեր կաթնապրանքային ֆերմայի աշխատողները, բրիգադավարները և գլխավոր անասնաբույժը»— սա է է քարտուղարի եզրակացությունը: Բրիգադավար Փ. Մինասյանը և գլխավոր անասնաբույժ Վ. Մակարյանը քննադատվում են ձվի արտադրության պլանի թերակատարման համար:

***

Եվ այսպես, լուրջ գործարար խոսակցություն ծավալվեց Արճիսի սովխոզի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում: Կարևորը, որ նկատեցի հաշվետու զեկուցման մեջ և կոմունիստների ելույթներում, օբյեկտիվ մոտեցումն ու կուսակցական ճիշտ գնահատականն էր իրենց նախընթաց գործունեությանը, թերությունների ու թերացողների առողջ, սկզբունքային, հասցեագրված քննադատությունը, նոր ռեզերվներն ու հնարավորությունները տեսնելու ունակությունը, հոգածությունը արտադրության մարդկանց վաղվա օրվա, տնտեսության զարգացման հեռանկարների հանդեպ:

Հաշվետու-ընտրական ժողովի մասնակիցների տեսադաշտում էին նաև կուսկազմակերպության, սովխոզի ղեկավարության համարձակ մտահղացումները: Արճիս—Ճնող ջրհան կայանի մղած ջուրը կհագեցնի շրջակա անմշակ հողերի ծարավը, և 60 հեկտար դարավանդ ու տասնյակ հեկտար այլ տարածություններ կպատվեն պտղատու ծառերով, կջահելանան ծերացած այգիները, 50 հեկտար քարքարուտներ ու թփուտներ իրենց տեղը կզիջեն դեղձի տնկիներին ու խաղողի վազերին: Եվ հաշվարկվում է. այս ամենից հետո ընթացիկ հնգամյակի վերջում հնարավոր կլինի պտուղների համախառն արտադրանքը հասցնել 5.000, խաղողինը՝ 1.000 տոննայի՝ մեկուկես-երկու անգամ ավելի, քան ստացվում է այժմ: Զարգացման լայն հեռանկար կբացվի և Դեղձավանի առջև: Այն կունենա իր դպրոցն ու մանկապարտեզը, մշակույթի տունը, առևտրի ու կենցաղային սպասարկման օբյեկտները, բուժկետը, իսկ շրջակայքում՝ խաղողի ու պտղատու նոր այգիներ:



Հիմա Արճիսի սովխոզում մեկ կովից ստանում են 2.300 կգ կաթ, առաջավորները՝ մինչև 2.500— լավ ցուցանիշ Նոյեմբերյանի շրջանի համար: Բայց դա չի գոհացնում կոմունիստներին, և նրանք այսօր 3.000 կիլոգրամի բնագիծ են կանխորոշում: Իսկ սովխոզի դիրեկտոր Հ. Մկրտումյանը երազում է 4.000-ի մասին, և հույս հայտնում, որ այն կիրագործվի, երբ ձեռք բերեն սև-խայտաբղետ ցեղի մատղաշներ և անցնեն կովերի շուրջտարյա մսուրային պահվածքի:

Պայծառ հեռանկարներ, խիզախ մտահղացումներ: Կանցնեն տարիներ, այսօրվա երազանքը կդառնա կատարված փաստ, պատիվ ու նոր ճանաչում կբերի ծաղկուն այգեստանի կոմունիստներին, որոնք այնքա՜ն շատ բան են արել իրենց տնտեսության ու բնակավայրի վերելքի, արտադրության մարդկանց այսօրվա բարգավաճ կյանքի համար:

Եվ կոմունիստների մեծ ներդրումն ու ավանդը արժեքավորվել են կառավարական բարձր պարգևներով: Հայկազ Մկրտումյանը մեկ տասնամյակից ավելի հմտորեն ղեկավարում է տնտեսությունը, ու որպես նրա վաստակի հատուցում՝ Աշխատանքային կարմիր դրոշի և Լենինի շքանշաններ: «Պատվո նշան» շքանշանը զարդարում է Ս. Միսկարյանի, Վ. Միկիչյանի, «Աշխատանքային փառքի III աստիճանինը»՝ Ս. Դանիելյանի կուրծքը: Այգեգործական բրիգադների հմուտ ղեկավարներ են նրանք ու ակտիվ կոմունիստներ ոչ միայն գործատեղում, այլև հասարակական-քաղաքական կյանքում: Որպես հավելումն, Ս. Միսկարյանին՝ ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ոսկե մեդալ, ոսկե ժամացույց և 300 ռ. արժողությամբ գրադարան՝ 1977-ի բարձր արդյունքների համար: Իսկ ահա կոմունիստ Ժ. Մովսիսյանը՝ ցուցահանդեսի մեդալների լրիվ հավաքածուի (բրոնզե, արծաթե, ոսկե) ասպետ, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր:

Կոմունիստների պարգևները շատ են: Բայց ինչո՞ւ միայն նրանք: Տասնյակ անկուսակցական բանվոր-բանվորուհիներ ևս արժանացել են կառավարական շքանշանների ու մեդալների, սոցմրցության հաղթողի կրծքանշանի, ՍՍՀՄ և հանրապետության ԺՏՆՑ-ի զանազան պարգևների: Եվ բազում այդ պարգևները Արճիսի այգեգործների, անասնապահների, մեխանիզատորների համընդհանուր ճանաչման չափանիշն են, մարդիկ, որոնց հայրենանվեր, մեղվաջան աշխատանքի շնորհիվ տնտեսությունը 1973-ից սկսած ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի մասնակից է:

Հաշվետու-ընտրական ժողովը սովխոզի տնտեսական հաջողությունները, կոմունիստների աշխատանքային ու քաղաքական բարձր ակտիվությունը պայմանավորեց կուսբյուրոյի ծավալած կազմակերպական ու գաղափարական արդյունավետ գործունեությամբ: Քանի՜-քանի անգամ կուսբյուրոյի նիստերում, կուսժողովներում գործարար խոսակցություն է եղել արտադրական ճյուղերի գործերի վիճակի, եղած ռեզերվների օգտագործման, կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման շուրջ: Դրվատանքի անկեղծ խոսքեր ասվեցին պրոպագանդիստներ Ռ. Մուսայելյանի և Ս. Չիլինգարյանի հասցեին, որոնք լավ են կազմակերպում կոմունիստների քաղաքական ուսուցման, կադրերի տնտեսագիտական կրթության գործը: Ագիտկոլեկտիվի 15 անդամները կուսակցության կենդանի խոսքն են հաղորդում աշխատավորներին: Նրանք մեծ ակտիվություն դրսևորեցին ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978) պլենումի որոշումները պրոպագանդելիս: Այդ որոշումները գործողության ուղեցույց եղան ոչ միայն կոմունիստների, այլև բոլոր արճիսցիների համար:

***

Ուշ երեկո է, անձրևը դադարել է, գետինը թաց է, երկնքում հատուկենտ աստղեր են բոցկլտում: Հաշվետու-ընտրական ժողովն ավարտվել է. կոմունիստները դառնում են տուն: Գոհ են նրանք. ամփոփել են հաշվետու ժամանակաշրջանում արածը, կանխորոշել գալիք մեկ տարվա անելիքները, լուծման կարոտ խնդիրները՝ կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումների լույսի ներքո:

Սարի թիկունքին բազմած ու լանջերն ի վար տարածված գյուղից, ծաղկուն այգեստանի աշխարհից հեռանում եմ այն համոզմամբ, որ գալիք տարիներն իրենց լուսավոր հետքը կթողնեն գյուղի բարգավաճման, տնտեսության վերելքի, բարիքներ արարող մարդկանց կյանքի վրա, և Արճիսի լավ ավանդույթներ ունեցող կուսկազմակերպությունը կհասնի նոր հաղթանակների: Համոզված եմ, որովհետև Արճիսի կոմունիստները ոչ միայն գործիմաց, այլև գաղափարի մարդիկ են, կուսակցության գործի համար պայքարող մարտիկներ, որովհետև հիշում եմ կուսակցական հաշվետու-ընտրական ժողովում ասված խոսքերը. «Կոմունիստներից ոչ մեկը չի տուժարկվել, երկար տարիներ Արճիսում հակահասարակական երևույթ չի նկատվել»: Իսկ դա նշանակում է, որ այստեղ մարդկանց գործունեության նպատակը ճիշտ է, իսկ նպատակը կոմունիզմի կառուցումն է:

ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ

Նոյեմբերյան—Երևան

# ԵՐԲ ՀԱՄՈԶՎԱԾ Է ԿՈԼԵԿՏԻՎԸ...

## (ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀԱՇՎԵՏՈՒ-ԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԻՑ ՀԵՏՈ)

**ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԵՐՈՒՄՈՎ** ներկա եղա «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորման կոմունիստների հաշվետու-ընտրական ժողովին: Կուսակցական կոմիտեն հաշիվ էր տալիս երեք տարվա իր գործունեության մասին:

Ժողովը փոքր-ինչ անսովոր էր: Վարչական մասնաշենքի մուտքի մոտ ուշադրություն էր գրավում հայտարարությունը և կողքին՝ մի փոքրիկ փոստարկղ. «Ընկեր կոմունիստ, դու պատրաստվում ես հաշվետու ժողովի, մեր ընդհանուրի նպատակն է համատեղ ջանքերով բացահայտել հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման գործում կոլեկտիվին խանգարող թերությունները: Եղի՛ր ակտիվ, քո խորհուրդներով, առաջարկություններով օգնիր վերացնելու այդ թերությունները»: Ճեմասրահում՝ ցուցահանդես, ստենդներ, դիագրամներ, որոնք պատմում են նվաճումների մասին, լավագույն կոմունիստների, նրանց գործերի մասին: Դահլիճը հանդիսավոր զարդարված էր լոզունգներով: Տոնական տրամադրություն էր տիրում...

Ժողովն անցավ գործարար մթնոլորտում, թեև, ըստ իս, քիչ խոսվեց թերությունների մասին, ավելի շատ կանգ առան այն հարցերի վրա, թե ինչի են հասել և ինչպես են հասել...

Սակայն իմ նպատակը ժողովի վերլուծությունը չէ (այդ մասին ասացի կուսկոմիտեի քարտուղարին, նրա տեղակալին), պարզապես կցանկանայի մտքեր փոխանակել այն հարցերի շուրջ, որոնք միավորման կոլեկտիվին որոշակիորեն օգնեցին կրկին հաջողությունների հասնել մի քանի տարի ետ մնալուց հետո:

### ՎԵՐԵԼՔԻ ՏԱՐԻՆԵՐ

*«Ընթացիկ հնգամյակի անցած տարիները, հաշվետու ժամանակաշրջանը մեր միավորման կոլեկտիվի համար եղել են վերելքի տարիներ...»:*

*(Կուսկոմիտեի հաշվետու զեկույցից)*

Իններորդ հնգամյակի արդյունքներով «Պոլիվինիլացետատ» գործարանը չկարողացավ գլուխ հանել իր առաջադրանքներից: 1973 թվական՝ պլանները չեն կատարվել, 1974 թվական՝ նույնը, 1975 թվական՝ հազիվ կարողացան իրացման պլանը կատարել... Ցավալի էր քննադատական խոսք լսել կոլեկտիվի հասցեին, որը մի ժամանակ հռչակված էր իր լավ ավանդույթներով, բարձր արդյունքներով, աշխատանքային փառքով,— ժողովի ընդմիջման ժամանակ պատմեց գլխավոր դիրեկտորի տեղակալը:— Որտեղ ասես, որ մեզ չեն քննադատել՝ շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսներում, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումում, ՀԿԿ XXVI համագումարում: Երբ որևէ միջոցառման, ակտիվի խորհրդակցության էին հրավիրում, դժկամությամբ էինք գնում, գիտեինք՝ լավ խոսք ասելու տեղ, դժբախտաբար, չէինք թողել...

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումից հետո ծողովեցին ակտիվին: Ծանրութեթև արին լավն ու վատը, մշակեցին միջոցառումների հանգամանալից ու գործնական պլան: Այն ներառեց կուսակցական ու պետական կարգապահության բարձրացման, ռեզերվների հայտաբերման և օգտագործման, մեքենասարքավորումների պարապուրդների ու աշխատաժամանակի կորուստների կրճատման, կոլեկտիվում բարոյական առողջ մթնոլորտի ստեղծման, բանվորների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման և բազմաթիվ այլ հարցեր:

Կուսակցական կազմակերպության համար խնդիրը հանգում էր հետևյալին. առաջին հերթին բարձրացնել ամբողջ կազմակերպության, նրա ստորին օղակների մարտունակությունը: Անհրաժեշտ էր ձգտել այն բանին, որ յուրաքանչյուր կուսակցական խումբ, արտադրամասային կազմակերպություն իր կոլեկտիվում դառնա գործերի վիճակի իսկական տերը, կարողանա ներազդել դրանց ընթացքի վրա, մոբիլիզացնել և իր ետևից տանել ամբողջ կոլեկտիվին: Իսկ դրա համար բոլոր կոմունիստները պետք է լինեին ավանգարդում: Հարկ էր լուծել նաև գաղափարական-քաղաքական շատ խնդիրներ:



Առջևում սպասվում էր վիթխարի աշխատանք և, որ գլխավորն է, հարկավոր էր այն կատարել ամեն օր, առանց վկայակոչելու ժամանակն ու դժվարությունները: Իսկ կուսկոմիտեի քարտուղար Լավրենտի Հովսեփյանի համար, իրոք, շատ դժվար էր: Չուներ կուսակցական աշխատանքի, այդպիսի մեծ կազմակերպություն ղեկավարելու փորձ: Նրան ընտրել էին իր համար անսպասելի և այն ժամանակ՝ 1975-ի հոկտեմբերին, երբ գործարանի մասին գովեստի որևէ խոսք չէր ասվում ո՛չ կուսակցական, ո՛չ սովետական մարմիններում, ո՛չ էլ մամուլում:

Երիտասարդ քարտուղարին օգնում էին բոլորը, բայց ամենից շատ՝ իր իսկ համառությունը, հետևողականությունը: Եթե առաջադրել է որևէ խնդիր, անպայման պետք է հասնի դրա կատարմանը: Բայց, ինչպե՞ս, ի՞նչ ճանապարհով: Համարյա թե ամեն օր վազում էր շրջկոմ, և որքան էլ զբաղված լիներ կազմբաժնի վարիչ Օգսեն Գրիգորյանը (այժմ՝ շրջկոմի քարտուղար), սպասում էր մինչև ազատվելը և տեղում էր իր հարցերի տարափը: Տեսնելով Հովսեփյանի համառությունը, կուսակցական աշխատանքի արվեստին տիրապետելու ձգտումը, Գրիգորյանն ամեն կերպ օգնում էր նրան, հուշում, խորհուրդներ տալիս, գրականություն ու գրքեր առաջարկում: Այսօրվա պես հիշում է, թե ինչպես իրեն նվիրեց «Կուսակցական կազմակերպության քարտուղարի ուղեցույցի» միակ, աշխատանքի մեջ այնքան անհրաժեշտ օրինակը :

Բայց սոսկ ուղեցույցով չես կարողանա ինչպես հարկն է համոզել գործարանից հեռացող բանվորներին՝ մնալու տեղում: Դեռ 1975-ին փորձեց զրուցել մեկի հետ, բայց պատասխանը եղավ. «Դուք շարունակ փորձում եք սոսկ խոսքերով ինչ-որ բանի հասնել, բայց, ա՛յ, հարկավոր է այնպես անել, որ ոչ մեկը չմտածի հեռանալու մասին, որ հարազատ կոլեկտիվի պատիվը մագնիսի պես պահի ամեն մեկին: Մտածել, հոգալ է պետք աշխատողների մասին»:

Այս խոսքերը խորապես ակոսեցին նրա հոգին: Պատեհ առիթով մտքեր փոխանակեց կրկին կոլեկտիվ վերադարձած դիրեկտոր Խուդոյանի հետ:

— Նա իրավացի է,— կտրուկ վրա բերեց Կորյուն Լևոնովիչը:— Ա՛յ, հենց այդ հոգատարությունից էլ պետք է սկսել:

400 տեղանոց հանրակացարան, երկու կոոպերատիվ շենք, ավտոբուսներ երեկոյան հերթափոխի աշխատողների համար, գործարանում կենցաղային պայմանների, սննդի շեշտակի բարելավում: Շատ բան է արվել երեք տարում:

Եվ երբ այսօր ամբիոնից լսում ես, որ 1975 թվականի համեմատությամբ անհարգելի բացակայությունները կրճատվել են կրկնակի չափով, հոսունությունը 19,6 տոկոսից հասցվել է 6 տոկոսի, չաշխատած մարդ-օրերի թիվը 4.600-ից իջել է 1.890-ի, ապա հստակորեն պատկերացնում ես այն ջանքերը, որ գործադրել են կուսկոմիտեն, ադմինիստրացիան, հասարակական կազմակերպությունները:

Արդյունքն զգացվում էր աստիճանաբար: Բայց հնգամյակի առաջին տարվա առաջին իսկ օրից մի բան հաստատ էր՝ թույլ չտալ, որ որևէ ցուցանիշով ետ մնա որևէ արտադրամաս, որևէ տեղամաս, բրիգադ: «Բոլոր ջանքերն ի սպաս դնել պլանի կատարման նպատակին»,— ահա այն նշանաբանը, հանուն որի լուծվում էին քաղաքական և տնտեսական գործունեության բոլոր խնդիրները: Հնգամյակի անցած ամբողջ ժամանակաշրջանում, բոլոր ամիսներին, եռամսյակներին, տարիներին կոլեկտիվը կարողացավ կատարել պետական առաջադրանքները, պլանից դուրս թողարկել 6 միլիոն ռուբլու արտադրանք: 1975-ի համեմատությամբ համախառն արտադրանքի ծավալը մեծացավ 31 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունն աճեց 28,7 տոկոսով, որականիշով թողարկվող արտադրանքն ավելացավ 6 անգամ... Կոլեկտիվն ակտիվորեն ներգրավվեց հումքի ու նյութերի խնայողության համար ծավալված շարժման մեջ:

Կոլեկտիվի աշխատանքային նվաճումների պերճախոս վկայությունն է այն փաստը, որ միավորումը հինգ անգամ մրցանակային տեղ է գրավել երկրի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների միջև ծավալված մրցությունում, երկու անգամ շահել կուսակցության Երևանի քաղկոմի և քաղաքային սովետի փոխանցիկ կարմիր դրոշը:

— Այսօր մեր կոլեկտիվի համար դա արդեն անցած փուլ է,— պատմում է գլխավոր ինժեներ Ս. Գալստյանը:— Մենք այժմ ձգտում ենք է՛լ ավելի բարձր արդյունքների: Հնարավորություններ կան, և այսպիսի դժվարությամբ նվաճած դրոշները մենք հազիվ թե ձեռքից բաց թողնենք:

Եթե ինժեներն է հավաստիացնում, պետք է հավատալ. առանց հիմնավորված հաշվարկների ինժեներները չեն սիրում խոստումներ տալ:

### ՀԱՇՎԻ ՉԱՌՆՎԱԾ ՌԵԶԵՐՎՆԵՐ

*«Աշխատանքային սխրանքներով են փառաբանել իրենց կոլեկտիվի անդամներից շատերը: Նրանցից է կոմունիստ Ս. Գրիգորյանը»:*

*(Պատի թերթի թղթակցությունից)*

Առավոտյան հերթափոխը ավարտվելու վրա էր: 1—2 արտադրամասում բոլորը շտապում էին. այսօր հեռուստատեսությամբ ֆուտբոլային հետաքրքրական հանդիպում է հաղորդվելու: Ավագ ապարատավար Սերյոժա Գրիգորյանը լվացվեց և, հարմար տեղավորվելով մի անկյունում, մաքուր լուսամուտագոգին բացեց իր սփռոցը և պատրաստվեց ճաշելու:

— Ինչ է, մոռացե՞լ ես, որ այսօր ֆուտբոլ կա,— հարցրեց բրիգադի տղաներից մեկը, որ արդեն հասցրել էր լվացվել ու հագուստը փոխել:— Ապա, վեր կաց, տանը կճաշես:

— Մենակ գնա, ես գործ ունեմ,— պատասխանեց Սերյոժան:— Կավարտեմ գործս, կըհասցնեմ խաղն էլ նայել:

Երբ արտադրամասում այլևս մարդ չկար, Սերյոժան մոտեցավ ապարատներին. արդեն մի քանի օր դրանք չէին գործում: Հարկավոր էր փոխել կատալիզատորները, որոնց հիմնական մասը՝ ակտիվացրած ածուխը, այնպես էր ամրացել խողովակներում, որ մաքրելու համար շատ ժամանակ էր պահանջվում: «Ի՞նչ անել ավելի արագ մաքրելու համար»— այս հարցը երկու օր տանջում էր Սերյոժային:

Այդ արտադրամասով էր պայմանավորված մյուսների համաչափ աշխատանքը, իսկ ընդհանուր առմամբ՝ նաև ամսական պլանի կատարումը: Երկու օր երեկոյան Սերյոժան տանը թերթում էր տեխնիկական գրադարանից վերցրած գրքերը, հաշվումներ էր անում և, ի վերջո, ելքը գտավ: Բայց մարդկանց ներկայությամբ վախենում էր փորձել: Բրիգադում մեծախոսներ կային. չստացվի՝ կծաղրեն, պիտակներ կկպցնեն: Նա երեք հերթափոխ անընդհատ չարչարվում էր և հաջորդ օրը, մինչև նոր հերթափոխը, խափանված բոլոր ապարատների կատալիզատորները փոխված էին:

— Իսկ ինչո՞ւ մենակ,— վիրավորված հարցրին տղաները,— կարծում ես չէի՞նք կարող ֆուտբոլից հրաժարվել:

Սերյոժան ի պատասխան միայն հոգնած ժպտաց:

Իսկ հաջորդ օրը նա բերեց գծագրերը: Դրանք զննեցին ավելի իրազեկ մարդիկ՝ ինժեներները, կոնստրուկտորները. խոսք չկա՝ առաջնորդվիր այդ գծագրերով, և հետագայում կարելի է լիովին մեքենայացնել օգտագործված կատալիզատորների բեռնաթափումը:

Կոլեկտիվում հիշում են ևս մի դեպք: Տարվա սկզբին 1—9—10 արտադրամասում անկանոն էին գործում կրկնաթորման սյուները, աստիճանաբար վատանում էր վերականգնված քացախաթթվի որակը: Պատճառը պարզելու համար դադարեցվեց արտադրամասի աշխատանքը: Բացեցին 30 մետր բարձրության աշտարակները և պարզվեց, որ մետաղի ցածրորակության պատճառով փչացել են սկավառակներն ու դրանց ամրակապերը: Հարկավոր էր փոխել ամբողջ սյունը. այսպիսին էր ոչ միայն միավորման, այլև «Սոյուզխիմպլաստի» մասնագետների կարծիքը: Բայց որտե՞ղ գտնել այնպիսի ձեռնարկություն, որը կարողանա կարճ ժամկետում յուրացնել և գլուխ բերել գրեթե հարյուր տոննանոց այդպիսի մի բարդ հսկայի արտադրությունը: Ասենք նաև՝ կատակ բան չէ քամուն տալ կես միլիոն ռուբլին:

Հարկավոր էր շտապ լուծել խնդիրը. արտադրամասի արտադրանքին էին սպասում ացետիլցելյուլոզի արտադրության տեղամասում, Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանում: Մասնագետների նշած ժամկետները կհանգեցնեին տասնյակ միլիոն ռուբլու վնասի: Իսկ ի՞նչ կլինի, եթե վերականգնվեն պղնձե հին աշտարակները: Գաղափարն արժանի է ուշադրության: Բայց առաջանում է մի նոր դժվարություն՝ ամեն մարդ չէ, որ կարող է պղնձի եռակցում կատարել. հմտություն, փորձ է պետք: Աշխատանքին ձեռնամուխ եղան փորձված մասնագետ, եռակցող Ալբերտ Խուզադյանը և կոմունիստ Գրիշա Տերտերյանի բրիգադը:

Ամբողջ մի ամիս, սառնամանիք լիներ թե քամի, աշխատում էին կամավորները, կատարելով 3—4 նորմա, և հենց նշված ժամկետին էլ ավարտեցին նորոգումը: Արտադրամասը կրկին սկսեց արտադրանք տալ:

Սրանք ռեզերվներ են, որ ենթակա չեն որևէ հաշվարկման և ծնունդ են մեր իրականության, մեր հասարակարգի: Եվ երբ կան այդպիսի հնարավորություններ, աշխատանքային ավյուն ու սխրանք, կոլեկտիվի համար սարսափելի չէ և ոչ մի դժվարություն...

## ԿԱՏԱՐԵՑԻՐ ԳՈՐԾԴ, ՕԳՆԻՐ ՀԱՐԵՎԱՆԻԴ

*«Ի՞նչպես կարելի է լավ աշխատող համարել նրան, ով մտածում է միայն իր առաջադրանքի մասին, չի անհանգստանում մյուսների անհաջողություններից»:*

*(Ապարատավար Ն. Առաքելյանի ելույթից)*

Կուսկոմիտեի ընդլայնված նիստը շարունակվում էր բուռն ընթացքով:

— Իսկ մենք ինչո՞վ ենք մեղավոր,— զարմանում, նույնիսկ զայրանում էին որոշ արտադրամասերի ղեկավարներ:— Մենք հո մեր պլանները կատարում ենք:

Նիստում խոսակցությունն այն մասին էր, որ ընդհանուր ջանքերով հաղթահարվի մի քանի արտադրամասերի ետ մնալը:

Անցավ կես տարի: Այժմ արդեն շատ են



այն օրինակները, երբ մեկ կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները լուծվում են բոլորի համատեղ ջանքերով: Վերցնենք 1—3 արտադրամասը: Երկու տարի առաջ այն անհուսալիորեն ետ էր մնում. սարքավորումը բոլորովին հնացել էր, լրիվ փոփոխման կարիք էր զգում: Այսպես էին մտածում շատերը: Իսկ կուսկոմիտեում այլ կարծիքի էին: Խորհրդակցեցին Կ. Խուդոյանի հետ: Գլխավոր դիրեկտորը համաձայնեց փոխել արտադրամասի ղեկավարությունը: Հավանություն տվեց նաև առաջադրված թեկնածությանը:

— Միայն թե թող չամաչի հարցնել չիմացածը: Հարկ եղած դեպքում նրան կօգնենք:

Եվ արտադրամասի ղեկավարությունը վստահվեց կոմունիստ Ս. Պետրոսյանին, որը մինչ այդ 1—8 արտադրամասի տեխնոլոգն էր: Առաջին իսկ օրից նա ձեռնամուխ եղավ սարքավորման նորոգմանը: Օգնում էին շատերը: Այսօր արտադրամասն արդեն գերակատարում է առաջադրանքները: Եվ միայն այժմ են ձեռնամուխ լինում սարքավորումը փոխելուն:

Իսկ մի՞թե օգնության օրինակ չէ, երբ Վոլոդյա Մամյանը, վարչությունում հանգիստ գործը թողած, փոխադրվեց մի արտադրամաս, որտեղ տագնապալի վիճակ էր:

Բայց, իհարկե, հույսը դնել միայն հարևանի օգնության վրա, նշանակում է ինչ-որ չափով ապրել նրա խնամքի տակ, ետ նայել ու մտածել, թե ով կօգնի քեզ: Ավելի լավ է՝ սեփական ուժերով: Նշանակում է՝ հարկավոր է սովորել լրացուցիչ մասնագիտություններ, պատրաստել նոր փոխարինողներ:

1976 թվականին գործարանում 150-ի փոխարեն պատրաստվեց 190 բանվոր, ուսուցման տարբեր ձևերում որակավորումը բարձրացրեց 649 մարդ, կոլեկտիվի անդամներից 40-ը երկրորդ և երրորդ մասնագիտություն ձեռք բերեց: Գումարեք երեք տարիների թվերը, և հասկանալի կդառնա, թե ինչքա՜ն շատ է դա և ինչ լավ է, երբ հարկադրված չես լինում սպասել, մինչև որ գտնեն ու հրավիրեն այս կամ այն մասնագետին: Այժմ ամեն մի արտադրամասում կան մեխանիկներ, կարգավորողներ, ցանկացած մասնագետներ:

Իսկ առա՞ջ:

Ժպիտով, հումորով են հիշում ոչ հեռու անցյալը: Մեկը թողել-հեռացել էր 1—9 արտադրամասից, տեղավորվել թռչնաբուծական ֆաբրիկայում: Սկսել էր պարծենալ՝ տեսեք, իբր, աշխատանքը ծանր չէ, աշխատավարձն էլ շատ ավելի բարձր է... Դա այն ժամանակ, երբ խափանվում էր մերթ այս, մերթ այն ապարատը: Հարկ էր լինում սպասել վարպետներին: Ժամանակն անցնում էր սպասումների մեջ, հարկադրական պարապուրդն ազդում էր աշխատավարձի վրա: Եվ մի խումբ տղաներ որոշեցին «նետվել դեպի թռչնաբուծություն»:

Ավելի համառները մնացին: Եվ կարճ ժամկետում նորոգեցին կրկնաթորման սյուները, չնայած պարապուրդներին, կարողացան գերակատարել հումքի և նյութերի տնտեսման պլանը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը:

## ՀՈՒՍԱԼԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐ

*Մարդու համար վատ է, երբ նա միայնակ է...*

*Վ. Մայակովսկի*

— Առանց ակտիվիստների, առանց նրանց ամենօրյա օգնության ինձ համար շատ դժվար կլիներ,— խոստովանում է կուսկոմիտեի քարտուղար Լ. Հովսեփյանը,— իսկ նրանք մեզ մոտ տասնյակների են հասնում...

Նրանցից մեկին Հովսեփյանն ինձ ցույց էր տվել դեռ հաղթանակի օրը, զբոսայգում, անհայտ զինվորի գերեզմանի մոտ: Թեև մոտ է վաթսունին, բայց դեռ բարեկազմ է, զինվորական կեցվածքով, հագին՝ տոնական կոստյում: Կրծքին՝ Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի շքանշան, տասը մեդալ: Կենսագրությունը՝ ինչպես որ իր հասակակիցներից շատերինը՝ 1941-ին ավարտել է մանկավարժական ուսումնարանը և մի քանի օր հետո զինվորական համազգեստ հագել: Պատերազմի թոհուբոհով է անցել Հայրենականի առաջին օրից մինչև վերջին օրը: 1942-ին, մարտից առաջ, ընդունվել է կուսակցության շարքերը:

Հատուկ վաշտի հրամանատար, կապիտան Հայկ Ալեքսանյանը 1946-ին զորացրվեց վատառողջության պատճառով. զգացնել էին տալիս երկու ծանր վերքերը և չորս կոնտուզիան: Վերադարձավ Հրազդանի շրջանի իր հայրենի Սոլակ գյուղը: Քսանհինգամյա զինվորին գյուղի կոմունիստներն ընտրեցին իրենց ղեկավար: Աշխատեց, հայրենի բնաշխարհը բարերար ազդեցություն ունեցավ առողջության վրա, ամրապնդվեց և երեք տարի հետո եկավ գործարան, որտեղ և աշխատում է մինչև օրս: Եղել է արտադրամասի վարպետ, ավագ ապարատավար: Բազմիցս ընտրվել է հասարակական կազմակերպություններում, ակտիվ աշխատանք տարել: Եղել է Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի անդամ, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու:

Աշխատեց քառորդ դար, ժամանակն էր վաստակած հանգստի մեկնել, բայց սիրտը չէր կտրվում կոլեկտիվից: Խնդրեց որևէ հանգիստ գործ: Հիշեցին, որ բնության հետ կապված մարդ է, և նշանակեցին պարտիզպան: Դժվար էր քիմիական ձեռնարկության շրջակայքում որևէ բան աճեցնել, սակայն նա վե-

րափոխեց գործարանի տարածքը։ Ազատ ժամանակ քիչ էր մնում, բայց և այնպես հասարակական աշխատանքը չթողեց։ Արդեն երրորդ անգամ ընտրվում է արտադրամասային կուսկազմակերպության քարտուղար, ղեկավարում պատերազմի վետերանների խորհուրդը։

Այդպիսի օգնականներ կուսկոմիտեի քարտուղարը շատ ունի՝ Հրայր Հովհաննիսյան, Ալիկ Խաչատրյան, Ռուդիկ Խաչատրյան, Ժաննա Սրապիոնյան, Մյասնիկ Գևորգյան...

— Բոլորին չես թվարկի, նրանք շատ են,— ասում է Հովսեփյանը և մեջ բերում գերմանացի փիլիսոփայի՝ ինչ-որ տեղից հիշողության մեջ մնացած ասույթը. «Առանձին մարդը թույլ է, ինչպես լքված Ռոբինզոնը. միայն մյուսների հետ նա կարող է կատարել շատ բան»։

***

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում իր զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը ուշադրություն հրավիրեց մի հանգամանքի վրա՝ ինչո՞ւ մի կոլտնտեսության կամ սովխոզի նվաճումը անհասանելի է մյուսին։ Սա շատ կարևոր պրոբլեմ է ոչ միայն գյուղատնտեսության համար։

Մի՞թե այստեղից ամեն մի աշխատավորի համար չի բխում հետևյալ հարցը՝ արդյոք արե՞լ է այն ամենը, ինչ կարող էր։ Արդյոք աշխատե՞լ է այնպես, ինչպես պահանջում է ժամանակը։

Ահա դրան է ձգտում «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորման կուսակցական կազմակերպությունը։ Որպեսզի կողքից աշխատողի հեղինակավոր օրինակը բացի նրանց աչքերը, ովքեր կյանքում չեն շտապում, ովքեր հաշտվում են այն մտքի հետ, թե այլևս ավելին անել ի վիճակի չեն և կարող են այդպես էլ ապրել։ Որպեսզի արտադրության փարոսների օրինակը բորբոքի նրանց ինքնասիրությունը, խանդավառություն, ձեռներեցություն արթնացնի նրանց մեջ։

...Ծանր է, երբ կոլեկտիվը կորցնում է հավատն իր ուժերի նկատմամբ։ «Պոլիվինիլացետատը» սեփական փորձից գիտե այդ։ Հիմա նրա կոլեկտիվը վերստին գտել է այդ հավատը։ Իսկ դա նշանակում է, որ նրա համար իր ուժերից վեր խնդիր չկա։

Մ. Ռ. ԿՆՅԱԶՋՅԱՆ



# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

**ԱԶԱՏՈՒՀԻ ՍԱՌԱՖՅԱՆ**
Գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության հանրապետական խորհրդի նախագահ

*ՄԵՐ ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արդի փուլը բնութագրվում է արտադրաուժերի զարգացման նոր աստիճանով, որն արգասիք է ավելի ու ավելի լայնորեն ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության։ Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում առաջընթացի կարևորագույն գործոններից է լայն մասսաների, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ստեղծարար աշխատանքը։*

*Սովետական իշխանության արշալույսին՝ 1918 թվականին, հիմնադրվեց «Գյուտերի գործերի կոմիտեն»։ Վ. Ի. Լենինը մեկ տարի անց ստորագրեց «Գյուտերի մասին կանոնադրություն» հաստատելու վերաբերյալ դեկրետը, որը լայն ճանապարհ բացեց մասսայական տեխնիկական ստեղծագործության համար։*

*Սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում իրենց արժանի լուման ունեն գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Կուսակցությունը մշտապես հոգացել է, որ ժամանակին ու արդյունավետ ներդրվեն գիտության ու տեխնիկայի նվաճումները։*

*Հետզհետե աճում էր գյուտարարների ու ռացիոնալիզատորների թիվը, և 1958 թվականին, համամիութենական արհեստակցական միությունների կենտրոնական խորհրդի նախագահության որոշմամբ, հիմնադրվեց գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերությունը, որի գործունեության նպատակն էր առավել զարգացնել գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժումը, այդ ոլորտում ներգրավելով բանվորներին, ինժեներատեխնիկական աշխատողներին ու ծառայողներին, ուժեղացնել հասարակական վերահսկողությունը նորագույն առաջարկությունների ներդրման ասպարեզում, գործնական օգնություն ցույց տալ գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին իրենց ստեղծարար աշխատանքներում։*

*Անցած ժամանակաշրջանում ընկերությունը խոշոր աշխատանք է կատարել այս ասպարեզում։ Ստեղծվել են գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության սկզբնական կազմակերպություններ (քաղաքային, շրջանային, մարզային, հանրապետական), որոնց թիվն այժմ հասնում է 82 հազարի՝ մոտ 9 միլիոն անդամներով։ Ձեռնարկություններում, կազմակերպություններում նրանք ջանում են ընդլայնել գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժումը, կատարելագործել արտադրապրոցեսները, հասնել աշխատանքային, նյութական, էներգետիկ ռեսուրսների խնայողության, խթանել նորարարների ստեղծագործական ակտիվությունը։*

*Այդ ժամանակամիջոցում ծնվել են բազմաթիվ հայրենասիրական նախաձեռնություններ, ստեղծվել մի շարք հասարակական միավորումներ, ինչպիսիք են՝ կոնստրուկտորական, տեխնոլոգիական բյուրոները, առաջարկությունների*

արմատավորումից ստացվող տնտեսական արդյունքի հաշվառման տնտեսական բյուրոները, կազմակերպվել են ստեղծագործական կոմպլեքս բրիգադներ, որոնք ամեն ինչ անում են՝ արմատավորելու համար օգտավետ առաջարկությունները։ Երևանի կոմպրեսորագործների նախաձեռնությամբ երկրում առաջին անգամ կազմակերպվեց առաջարկությունների արմատավորման հասարակական արտադրամաս, որի փորձը լայնորեն տարածվեց ո՛չ միայն հանրապետության ձեռնարկություններում, այլև ողջ Սովետական Միությունում։

Բարձր գնահատելով գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության աշխատանքը առաջավոր տեխնիկայի զարգացման գործում, կուսակցությունն ու կառավարությունը շնորհեցին նրան Լենինի շքանշան։ Հայրենիքի այդ բարձր պարգևը նոր թափ հաղորդեց գյուտարարական շարժմանը։ Ռացիոնալիզատորական ֆոնդի կատարման համար ամենուր ծավալվեց սոցիալիստական մրցություն, որի շնորհիվ երկրում տնտեսվեցին 14 միլիարդ ռուբլու աշխատանքային, նյութական, էներգետիկ պաշարներ։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը շնորհավորեց գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին ստեղծագործական այդ մեծ հաղթանակի առթիվ։ Երկրի նորարարներն ստանձնեցին նոր, ավելի բարձր պարտավորություններ։

Հայաստանի նորարարները միշտ եղել են մեր երկրի ստեղծագործական բանակի առաջամարտիկների շարքում և իրենց ավանդը ներդրել գյուտարարության ու ռացիոնալիզացիայի զարգացման մարզում։ Հանրապետության նորարարներն իններորդ հնգամյակի ռացիոնալիզատորական ֆոնդի համար վերցրած 130 մլն ռուբլու պարտավորությունը կատարեցին չորս տարում։ Հնգամյակում 82 հազար գյուտեր և ռացիոնալիզատորական առաջարկություններ ներդրվեցին արտադրության մեջ, որի շնորհիվ տնտեսվեց 166 մլն ռուբլի— 65 տոկոսով ավելի նախորդ հնգամյակից։ Իններորդ հնգամյակի տեխնիկական ստեղծագործության բուռն տեմպերը նախադրյալներ ստեղծեցին տասներորդ հնգամյակի ռացիոնալիզատորական ֆոնդի համար. Նորարարներն ստանձնեցին 210 մլն ռուբլու պարտավորություն— 27 տոկոսով ավելի նախորդ հնգամյակից։

Գյուտարարներն ու ռացիոնալիզատորները միշտ եղել և մնում են համաժողովրդական սոցիալիստական մրցության առաջամարտիկներ։ Նրանք հիմնականում լրացնում են արտադրական կոլեկտիվների պարտավորությունները և հանդիսանում ժողովրդական տնտեսության պլանները ժամկետից շուտ և որակով կատարելու կարևորագույն գործի խթանողներ։

Ստեղծագործական աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման համար էական նշանակություն ունի սոցիալիստական մրցությունը, որն առավել լայնորեն է ծավալվում ու կատարելագործվում, նորովի է խթանում գյուտարարների ու ռացիոնալիզատորների ստանձնած պարտավորությունների կատարումը։

Ստեղծագործական աշխատանքների ընդլայնման ոլորտում ակնբախ է ճյուղային սոցիալիստական մրցության դերը. մրցման մի նոր ձև, որը կյանքի է կոչվել տեխնիկական առաջընթացի զարգացման անհրաժեշտությամբ։

Այդ մրցության կազմակերպման գործում բավական փորձ են կուտակել տնտեսական, արհմիութենական և ԳՌՀ ընկերության կազմակերպությունները։ Տեխնիկական ստեղծագործության լավագույն ցուցանիշներ ձեռք բերելու միջոցով հասնել աշխատանքի ամենաբարձր արտադրողականության, նվազագույն ծախսերով թողարկել գերազանց որակի արտադրանք— այս է նորարարների ճյուղային մրցության նշանաբանը։

Ինչպես միութենական, նույնպես և հանրապետական ճյուղային մրցությունները զգալիորեն խթանել են ստեղծագործական աշխատանքը։ Հանրապետական խորհուրդը ճյուղային սեկցիաների, քաղաքային, շրջանային և սկզբնական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացրել է սոցիալիստական մրցության լայն ծավալման, այն ղեկավարելու և ագիտ-մասսայական աշխատանքների բարելավման վրա։ Այդ ամենի արդյունքն են ներգործարա-



նային սոցիալիստական մրցությունները, ստուգատեսներն ու թեմատիկ մրցույթները։

Հանրապետական խորհուրդը մինիստրությունների, նույնիսկ առանձին միավորումների հետ կազմակերպեց ստուգատեսներ. ծավալեց մրցություն լավագույն ձեռնարկության, գործարանի, ֆաբրիկայի, արտադրամասի համար, մրցություն լավագույն գյուտարարի, լավագույն ռացիոնալիզատորի համար։ Շատ կոլեկտիվներ բարելավեցին իրենց աշխատանքները, հասան բարձր ցուցանիշների և պատվով կատարեցին ստանձնած պարտավորությունները։

Կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները՝ սովետական մարդիկ ցուցաբերում են աշխատանքային խանդավառության օրինակներ, հայրենասիրական նոր նախաձեռնություններ, ավելի ու ավելի է ծավալվում սոցիալիստական մրցությունը՝ «Աշխատել ավելի լավ, բարձրացնել արդյունավետությունն ու որակը» նշանաբանով։

Հնգամյակի երկրորդ տարվա ռացիոնալիզատորական ֆոնդի համար ստանձնած պարտավորությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին կատարելու կոչով հանդես եկան ո՛չ միայն կոլեկտիվներ ու արտադրամասեր, այլև առանձին ռացիոնալիզատորներ ու ստեղծագործական կոմպլեքս բրիգադներ։ Իրենց տարեկան պարտավորությունները նոյեմբերի 7-ին կատարելու մասին զեկուցեցին «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը, Կիրովականի քիմիական գործարանը, պոլիմերային սոսինձների գիտահետազոտական ինստիտուտը, Լենինականի հղկող հաստոցների գործարանը, տեքստիլ կոմբինատը, գուլպայի ֆաբրիկան, «Մասիս» կոշիկի միավորումը և շատ այլ ձեռնարկություններ։ Հայրենասիրական նախաձեռնություններով հանդես եկան 3.000-ից ավելի նորարարներ, որոնք իրենց ստանձնած պարտավորությունները կատարեցին փառապանծ հոբելյանի օրը։

«Նաիրիտ» միավորման՝ «Ամեն մի ինժեներին, տեխնիկին՝ ստեղծագործական պլան» կոչին արձագանքեցին պոլիվինիլացետատ, Կիրովականի քիմիական և քիմիական մանրաթելի գործարանները, մետաքսի կոմբինատը։ Հայէլեկտրամեքենաշինական գործարանի ռացիոնալիզատորներն աշխատում են «Մեր տարեկան աշխատավարձը՝ մեր առաջարկություններից ստացվող տնտեսման հաշվին» նշանաբանով։ Բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատում ընդունված է «Չներդրված ոչ մի առաջարկություն» կոչը։

Ծավալված ագիտ-մասսայական աշխատանքների շնորհիվ հանրապետությունը 1977 թ. համար ստանձնած 39 մլն ռ. տնտեսելու պարտավորությունը կատարեց նոյեմբերի 7-ին. հոբելյանական տարին փակվեց 43 միլիոն ռուբլու տնտեսումով, իսկ հնգամյակի երկու տարիներին արտադրությունում գործադրված 650 գյուտերից և 35 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություններից ժողովրդական տնտեսությունում տնտեսվեց 81 միլիոն ռուբլի։ Այդ ժամանակաընթացքում տնտեսվեցին նաև մոտ 20 հազար տոննա մետաղ, 6 տոննա գունավոր մետաղ, 120 հազար քառակուսի դեցիմետր կաշի, 52 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա և այլն։

Արմատավորվեցին բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ. օրինակ, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում հեղուկ մետաղի ազդեցությամբ մետաղյա կաղապարներն արագ տաքանում ու ձևափոխվում էին, որի պատճառով վայերբարսի ձուլակտորները չէին համապատասխանում պետական ստանդարտին, ձուլակտորների միայն 81 տոկոսն էր ընդունվում։ Կոմբինատի երիտասարդ ռացիոնալիզատոր Վ. Վերանյանը, մի խումբ նորարարների հետ, կատարելագործեց կաղապարների կոնստրուկցիան, որի շնորհիվ պիտանի ձուլակտորների ելքը բարձրացավ 10 տոկոսով, 66 հազար ռուբլով կրճատվեց վայերբարսային պղնձի ծախսը։

Գիտաարտադրական «Նաիրիտ» միավորումում ռացիոնալիզատորներ Մ. Գևորգյանը, Վ. Նասիբյանը և ուրիշներ առաջարկեցին ԿՌ և ՍՌ նաիրիտների հատիկավոր կոագուլյացիայի անցկացման նոր տեխնոլոգիա, որի շնորհիվ տնտեսվեց ավելի քան 250 հազար ռուբլի։ Ստեփանավանի շրջանի Ագարակ գյուղի դաշտավարական բրիգադայի բրիգադավար Յու. Ջիլավյանը ձևափոխեց

ԿՕՆ—28 կուլտիվատորը և առաջարկեց օգտագործել այն կաղամբի միջշարային մշակության գործում։ Եթե նախկինում սովխոզի բանվորը հողուրագի միջոցով օրական 200—300 քմ կաղամբ էր մշակում և մեկ հեկտարի միջշարային մշակության համար աշխատում էր օրական 30—33 մարդ, ապա այժմ մեկ տրակտորիստը կարող է նոր կուլտիվատորով օրական մշակել 4 հեկտար տարածություն։ 1977 թ. այդ եղանակով մշակվել է 11 հեկտար, կրճատվել 1.631 մարդ/օր, տնտեսվել 11 հազար ռուբլի։

Արտադրության կառավարման ճյուղային սկզբունքը, տնտեսական լծակների դերի բարձրացումը բարենպաստ պայմաններ են ստեղծել գիտության ու տեխնիկայի նվաճումների, գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման համար. վճռական նշանակություն ունի այժմ նորարարական աշխատանքի արդյունավետության բարձրացումը, այսինքն՝ արմատավորված մեկ առաջարկության ներդրման շնորհիվ տնտեսվող գումարի չափը։ Եթե այդ գումարը միջին միութենական մասշտաբով հասնում է 1.780 ռուբլու, ապա մեզ մոտ այն հասել է մոտ 3.793-ի, որը երկրում ամենաբարձրն է, իսկ մեկ գյուտին ընկնող գումարը կազմում է մոտ 44 հազար։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց սերտացնել գիտության ու արտադրության կապը, արտադրության մեջ առավել լայնորեն կիրառել գիտության նվաճումները։ Այս ասպարեզում որոշիչ է գիտահետազոտական կազմակերպությունների դերը։ Գոհունակությամբ պետք է նշել, որ գյուտարարության բնագավառում վերջին տարիներս հանրապետությունը հասել է զգալի հաջողությունների։ Հինգ տարվա ընթացքում (1972—1977) ենթադրական գյուտի համար ներկայացված 2.485 հայտից 1.066-ի համար ստացվել է դրական որոշում, այսինքն՝ 20 տոկոսով ավելի, քան նախորդ ողջ տասնամյակում։ Գիտահետազոտական գրեթե բոլոր կազմակերպություններում ստեղծվել են արտոնագրային ծառայություններ, ավելացել է արտոնագրային հետազոտությունների ծավալը, բարձրացել գյուտերի բացահայտման նախնական հետազոտումների որակը։

Զգալի աշխատանք է տարվում պոլիմերային սոսինձների, Երևանի մաթեմատիկական մեքենաների, պոլիմերների գիտահետազոտական ինստիտուտներում։ Այդ աշխատանքները ծավալվում են շինարարության և ճարտարապետության, գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման, պլաստպոլիմերների գիտահետազոտական կազմակերպություններում, Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտում և պետական համալսարանում։

Զգալիորեն ավելացել են արտադրությունում օգտագործվող գյուտերի թիվն ու արդյունավետությունը։ Անցած հինգ տարիների ընթացքում արտադրությունում օգտագործված նոր առաջարկություններից և գյուտերից տնտեսվել է 25 միլիոն ռուբլի։ Ժողովրդական տնտեսությունում օգտագործվում են մեր գիտահետազոտական ինստիտուտների հայտնագործությունները։ Այսպես, Չարենցավանի գործիքաշինական գործարանում, «Արմնիիմաշ» գիտահետազոտական ինստիտուտի մշակած նոր մոլիբդենային համաձուլվածքի կիրառմամբ զգալի չափով բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը. միայն 1977 թ. ժողովրդական տնտեսությունում տնտեսվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլի։

Տարեցտարի բարելավվում են գյուտարարության և արտոնագրային աշխատանքները հանրապետության գիտությունների ակադեմիայում։ Վերջին երկու տարում ակադեմիայի գիտնականները ներկայացրել են 349 հայտ, որոնցից 171-ը ճանաչվել է որպես գյուտ (52-ը միայն 1977 թվականին)։ Անցյալ տարի ակադեմիայի փորձնական արտադրությունում կիրարկվել է 27 գյուտ։ Վերջին տարիներս գյուտարարական աշխատանքների լավ ցուցանիշներով աչքի են ընկնում մի շարք արտադրական ձեռնարկություններ։ Այսպես, Կիրովականի քիմիական, Երևանի քիմռեակտիվ, ալմաստ, ժամացույցի գործարաններում ստեղծվել և օգտագործվել են բազմաթիվ գյուտեր, իսկ Երևանի էլեկտրալամպերի գործարանում հինգ տարում մշակվել է 34 գյուտ— նույնքան, որքան



կոմպլեքսային էլեկտրասարքավորման գիտահետազոտական ինստիտուտում նույն ժամանակամիջոցում։

1978 թ. մարտին կայացավ գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության Հայաստանի կազմակերպության V համագումարը. այն համընկավ ընկերության կազմակերպման 20-րդ տարելիցին։ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի համագումարին հղած ողջույնում բարձր էր գնահատված գյուտարարների և ռացիոնալիզատորների բազմահազարանոց բանակի գործունեությունը, նշված էին ընկերության խնդիրները կուսակցության XXV համագումարի որոշումների կենսագործման, ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջընթացի արագացման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում։

Համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում ընկերության կազմակերպություններն զգալի գործ են կատարել գյուտարարական և ռացիոնալիզատորական շարժման ընդլայնման, արտադրապրոցեսների խնայողության, նորարարների ստեղծագործական ակտիվության զարգացման մարզում։

Գյուտարարության և ռացիոնալիզացիայի ծավալման գործում մեծ դեր են խաղացել ընկերության մոտ 700 սկզբնական կազմակերպությունները՝ 85 հազար անդամներով, մոտ 180 հասարակական կոնստրուկտորական բյուրոները, ներդրման ավելի քան 70 հասարակական արտադրամասերը, 415 կոմպլեքսային-ստեղծագործական բրիգադները և ստեղծագործական այլ միավորումներ։

Այս տարվա ապրիլին Մոսկվայում կայացավ գյուտարարների և ռացիոնալիզատորների V համագումարը, որը մեծ դեր խաղաց մեր երկրի գիտատեխնիկական առաջընթացի բնագավառում ձեռք բերված նվաճումների ընդհանրացման, գնահատման գործում և նշեց ընկերության ապագա անելիքներն ու հեռանկարները։ Կասկածից վեր է, որ այժմ առանց գյուտարարության և մասսայական ռացիոնալիզացիայի հնարավոր չէ ապահովել գիտատեխնիկական պրոգրեսը՝ որպես գիտության նորագույն նվաճումների հիման վրա ընթացող տեխնիկայի կատարելագործման անընդհատ պրոցես։ Ժողովրդատնտեսական այս կարևոր բնագավառը պետության մշտական հոգածության առարկան է, դրա վկայությունն է մեր երկրի նոր Սահմանադրության 46-րդ հոդվածը. «Կոմունիստական շինարարության նպատակներին համապատասխան, ՍՍՀՄ քաղաքացիների համար երաշխավորվում է գիտական, տեխնիկական և գեղարվեստական ստեղծագործության ազատություն։ Դա ապահովվում է գիտական հետազոտությունների, գյուտարարական և ռացիոնալիզատորական գործունեության լայն ծավալմամբ, գրականության և արվեստի զարգացմամբ։ Պետությունն ստեղծում է դրա համար անհրաժեշտ նյութական պայմաններ, աջակցում է կամավոր ընկերություններին և ստեղծագործական միություններին, կազմակերպում է գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ և կյանքի մյուս ոլորտներում։

Հեղինակների, գյուտարարների և ռացիոնալիզատորների իրավունքները պաշտպանվում են պետության կողմից»։

Սովետական գյուտարարներն ու ռացիոնալիզատորները քաջ գիտակցում են իրենց դերը ժողովրդական տնտեսության, հայրենական գիտության ու տեխնիկայի առաջընթացում, երկրի զարգացման ու բարգավաճման ասպարեզում։ Նրանք ջանք չեն խնայում իրենց արժանի ավանդը ներդնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՉԱՓԱՆԻՇԻ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ԱՌԹԻՎ

**Ռ. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

*Մեր երկրի էկոնոմիկայի զարգացման արդի փուլը բնորոշվում է տնտեսավարման պրոցեսների նկատմամբ աճող պահանջներով: Տնտեսությունն արդյունավետությամբ վարելու նշանակությունն այնքան մեծ է, որ ընթացիկ տասներորդ հնգամյակը անվանում ենք արդյունավետության և որակի հնգամյակ: Արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման նշանակությունը, շեշտել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում. «էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության աշխատանքի կողմնորոշումը դեպի արդյունավետության և որակի վճռական բարձրացումը, հիմա ամենակարևորն է»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 66):*

*Այս խնդիրների շրջանակներում գործնական առումով առանձնապես կարևորվում են արտադրության արդյունավետության բուն չափանիշի որոշման հարցերը:*

*Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը, սոցիալիստական ապրելակերպի, սովետական մարդու ձևավորումը անքակտելիորեն առնչվում են ստեղծագործական աշխատանքի, ձեռնարկությունների գործունեության ու զարգացման հետ: Ձեռնարկությունում է սկզբնավորվում էկոնոմիկան, դրա արդյունավետությունը, այստեղ են դրսևորվում աշխատողի ստեղծագործական ունակությունները, լավագույն նախադրյալներ ստեղծվում նրա քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնության համար: Հետևաբար, սոցիալիստական ձեռնարկությունների գործունեությունն արդի պայմաններում գնալով ավելի է դուրս գալիս զուտ արտադրական ֆունկցիաների սահմաններից. աճում է ձեռնարկության սոցիալական ֆունկցիայի դերը, որը կապված է սոցիալիստական արտադրական կոլեկտիվի դաստիարակության հետ:*

*ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարում արտասանած իր ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ «հասուն, զարգացած սոցիալիզմի ստեղծումը նորովի առաջադրեց երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման շատ խնդիրներ: Փոխվեցին ինչպես մեր հնարավորությունները, այնպես էլ հասարակական պահանջմունքները: Տեղի է ունենում կուսակցության և ժողովրդի պրակտիկ գործունեության շատ կողմերի խոր վերակառուցում: Խոսքը վերաբերում է խոշորագույն մասշտաբի գործերին, այնպիսի բարդ գործերի, որոնք կենսականորեն կարևոր են ինչպես ամբողջ հասարակության, այնպես էլ յուրաքանչյուր սովետական մարդու, յուրաքանչյուր սովետական ընտանիքի համար»:*

*Արդյունավետության և որակի աճի պրոբլեմը բազմապլանային է: Սակայն դրա քննարկման ամեն մի ասպեկտ առնչվում է ժողովրդական տնտեսության հիմնական օղակի՝ ձեռնարկության, արտադրական միավորման հետ: Հենց ձեռնարկությունն է, որ համարվում է այն հիմնական օբյեկտը, որտեղ գործում են էկոնոմիկայի կառավարման բոլոր լծակները, այն ասպարեզը, որտեղ գործնականում դրսևորվում է տնտեսավարման կազմակերպական ձևերի համապատասխանությունը տնտեսական օբյեկտիվ օրենքների պահանջներին:*



*Ուստի տնտեսական բազմաթիվ պրոբլեմների, այդ թվում և արդյունաբերական ձեռնարկությունում արտադրության արդյունավետության չափանիշի ընտրությունը ճիշտ հասկանալն անհնար է՝ առանց պարզելու ձեռնարկության էությունը, նրա տեղը ժողովրդական տնտեսության բազմաստիճան սիստեմում, մյուս կազմակերպությունների հետ ունեցած արտադրական հարաբերությունների բնույթը և այլն:*

*Ձեռնարկության շահերն իրենց արտացոլումն են գտնում աշխատանքային կոլեկտիվի համակողմանի արտադրական հարաբերություններում, որոնք դրսևորվում են արտադրական խնդիրների, պետական պլանի կատարման նպատակին ուղղված համատեղ աշխատանքի պրոցեսում: Կոլեկտիվն արդյոք մի՞շտ է շահագրգռված վերցնելու արտադրության լարված հանդիպական պլան: Ինչպե՞ս ավելի լավ զարգացնել ձեռնարկությունների սոցիալիստական ձեռներեցությունը:*

*Վերջին հաշվով խոսքն այն մասին է, թե ինչպես անել, որ տնտեսական տարբեր լծակների (շահույթ, պարգևատրում, գին, վարկ և այլն) օգնությամբ էկոնոմիկայի կառավարման ամբողջ սիստեմը դառնա այնպիսին, որ այն, ինչ օգտավետ է ամբողջ հասարակությանը, օգտավետ լինի նաև բոլոր կոնկրետ արտադրական կոլեկտիվներին: Հենց դա է ներկա տնտեսական ռեֆորմի գըլխավոր էությունը, ռեֆորմ, որի նպատակն է ժողովրդական տնտեսությունը դարձնել առավել լավ գործող, լավ կարգավորված մեխանիզմ, և այդ հիման վրա բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը:*

*Մեր ժողովրդական տնտեսության հարաճուն մասշտաբներն ու բարդությունը սրությամբ են դրել պլանավորումը և կառավարումը կատարելագործելու, տնտեսական ողջ մեխանիզմի բարելավման հարցերը: Այս բնագավառում մեծ աշխատանք է տարվում: Կենտրոնական պլանային և տնտեսական մարմինները զբաղված են համապատասխան կոնկրետ առաջարկություններ մշակելու հարցերով: Իսկ դրա համար անհրաժեշտ է մեր բարդ և բազմաստիճան էկոնոմիկայի բոլոր ոլորտներում ավելի ուժեղացնել տնտեսավարման մեխանիզմի ուսումնասիրումը, մասնավորապես դրա հիմնական օղակի՝ ձեռնարկության, տնտեսական մեխանիզմի «հղկումը»: Անհրաժեշտ է, հաշվի առնելով էկոնոմիկայի զարգացման արդի փուլի առանձնահատկությունները, գտնել արտադրական կոլեկտիվներում թաքնված և դեռևս լիակատար չափով չօգտագործվող ներգործարանային բոլոր ռեզերվները և հնարավորությունները, լավագույն պայմաններ ստեղծել դրանք օգտագործելու ի բարօրություն հասարակության:*

*Արտադրության այս կամ այն տարբերակի ընտրության նպատակահարմարության գնահատականը ենթադրում է, ամենից առաջ, արդյունավետության չափանիշի սահմանման անհրաժեշտություն:*

*Շատ դեպքերում արտադրապրոցեսների արդյունավետության բարձրացման պրոբլեմների վերաբերյալ հետազոտությունների կատարելագործումը ուղեկցվել է արտադրության արդյունավետության չափանիշի ընրության առանձնահատկությունների ուսումնասիրմամբ: Սակայն պրոբլեմի մշակումը մեծ մասամբ կատարվել է կամ ամբողջ տնտեսության, կամ առանձին ձեռնարկության առումով: Եվ միայն վերջերս է նկատվում պրոբլեմի կոմպլեքս ուսումնասիրում այդ երկու (գլոբալ և լոկալ) մակարդակով:*

*Մեր կարծիքով, որպես լավագույն գլոբալ չափանիշ պետք է ընդունվեն ժողովրդական տնտեսության պլանային զարգացման վերջնական արդյունքները, որոնք կախված են սոցիալիսական արտադրության զարգացման պրոցեսում ստացվող տնտեսական արդյունքից, ինչպես նաև նրա օգտագործման կոնկրետ ձևերից:*

*Ուստի պատահական չէ, որ այս հարցի վերաբերյալ առայժմ միասնական կարծիք չկա նաև տնտեսական-մաթեմատիկական բնագավառի հետազոտություններում, որտեղ նույնպես գոյություն ունեն մի քանի կոնցեպցիաներ*:*

* *Նկատի են առնվում ակադեմիկոսներ Ա. Գ. Աղանբեկյանի, Ն. Պ. Ֆեդորենկոյի, պրոֆեսորներ Վ. Վ. Նովոժիլովի, Վ. Ֆ. Պուգաչևի և ուրիշների կոնցեպցիաները:*

Մեր կարծիքով, ժողովրդատնտեսական արդյունավետության բուն կատեգորիայի բարդությունը հիմք է տալիս ենթադրելու, որ ժողովրդական տնտեսությունն իր զարգացման սահմանափակ ռեսուրսների և պայմանների դեպքում պլանավորելու պրոցեսում հեռանկարային պլանի լավագույն տարբերակ գտնելը միապատիկ խնդիր չէ։ Դրա լուծումը հնարավոր է թվում մոտավոր տարբերակների հետևողական որոնումներով։ Ընդ որում, չափանիշներն իրենք կարող են փոխվել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման մակարդակի և պայմանների փոփոխության հետ կապված։

Անտարակուսելի է, որ արտադրության արդյունավետության չափանիշ ընտրելու պրոբլեմը պետք է յուրաքանչյուր կոնկրետ դեպքում լուծվի՝ ելնելով տնտեսական տեսության պահանջներից ընդհանրապես և լավագույն պլանավորման ու կառավարման տեսության պահանջներից մասնավորապես։

Արդյունավետության լոկալ չափանիշները, ըստ երևույթին, պետք է հանվեն տնտեսական վերադաս չափանիշներից (օրինակ, ճյուղային սիստեմի ձեռնարկությունների համար), նրանք պետք է «աշխատեն» վերադաս սիստեմի և ժողովրդական տնտեսության արդյունավետության չափանիշի համար՝ ամբողջությամբ վերցրած։ Արտադրության արդյունավետության այդպիսի լոկալ չափանիշի տեսանկյունով շատ հաճախ առաջարկվում են եկամուտը և շահութաբերությունը*։

Այս առաջարկությունները պահանջում են ամենասևեռուն ուշադրություն, քանի որ դրանց հիմքում դրված է լոկալ և գլոբալ չափանիշների համաձայնեցման չափազանց ճիշտ մոտեցումը։ Այլ կերպ ասած, այստեղ առաջարկվում է առանձին ձեռնարկությունների առավելագույն շահույթը համաձայնեցնել ընդհանուր նպատակի՝ պահանջների առավելագույն բավարարման հետ։ Այդպիսի համաձայնեցման բուն գաղափարը չափազանց գայթակղիչ է, սակայն այն պայմաններում, երբ լուծված չէ բարեկեցության չափանիշի պրոբլեմը, պահանջվող գաղափարի գործնական կիրառումը, երևի անհնար է**։

Առանձին արդյունաբերական ձեռնարկության աշխատանքի պայմաններում արտադրության արդյունավետությունն առաջանում է գործելու տարբեր ասպեկտներից։ Սակայն, մեր կարծիքով, արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական ներարտադրական ռեզերվն արտադրառեսուրսների օգտագործման բարելավումն է։ Այս տեսակետից արտադրառեսուրսների յուրաքանչյուր մասը կիրառելի է օգտագործման համապատասխան ցուցանիշով, կարող է հանդես գալ որպես արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվ։

Մասնավորապես, հիմնական ֆոնդերի օգտագործումը կարելի է գնահատել ֆոնդահատուցման ցուցանիշով, նյութական ռեսուրսներինը՝ նյութատարողության ցուցանիշով, իսկ աշխատանքային ռեսուրսներինը՝ աշխատանքի արտադրողականության ցուցանիշով։ Ամբողջությամբ վերցրած՝ արտադրառեսուրսների օգտագործումը, հավանաբար, նպատակահարմար է գնահատել ըստ արտադրության շահութաբերության ցուցանիշի։ Այսպիսով, արտադրության արդյունավետության գնահատականը, լինելով արտադրառեսուրսների օգտագործման բարելավման հետևանք, պետք է հակվի ցուցանիշների սիստեմի կողմը։ Սակայն մի քանի ցուցանիշի հակվելը միշտ էլ դժվարություն է հարուցում, որովհետև ցուցանիշների հակադարձ փոփոխության դեպքում երբեմն վերանում է համեմատական գնահատման հնարավորությունը։

* Սովետական այլ տնտեսագետների հետ միասին այդ տեսակետի կողմնակից է նաև տնտ. գիտ. դոկտոր Վ. Ե. Խլղաթյանը (տե՛ս Վ. Ե. Խլղաթյան Определение максимальной рентабельности предприятия. «Экономика и математические методы». 1967, № 3)։

** Դա համոզիչ կերպով բացահայտված է տնտ. գիտ. դոկտոր Ռ. Գ. Կարագեդովի Рентабельность и эффективность социалистического предприятия աշխատության մեջ։ Новосибирск, «Наука», 1971։



Այդ պատճառով էլ գործնականում շարունակ որոնումներ են կատարվում արդյունավետության որևէ մեկ ցուցանիշ գտնելու համար։

Այժմ, պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում, ձեռնարկություններն իրենք են որոշում արտադրանքի ինքնարժեքի իջեցումից, իրացվող արտադրանքի որակի բարձրացման և քանակի ավելացման հաշվին ստացվող շահույթի մեծացումից գոյացող խնայողության չափերը։ Այս ամենը էականորեն ընդլայնում է ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը, բարձրացնում նրանց պատասխանատվությունը իրենց տնտեսական գործունեության վերջնական արդյունքի համար, նրանց հնարավորություն է տալիս կոնկրետ պայմաններում ընտրել արտադրության արդյունավետության բարձրացման առավել ռացիոնալ ուղիներ։ Այսպես, օրինակ, ձեռնարկությունների գործունեության պլանավորման ու գնահատման մեջ արտադրանքի ինքնարժեքի իջեցման ցուցանիշները շահույթի ընդհանուր գումարի ցուցանիշներով փոխարինելը լիովին արդարացրեց իրեն։ Ներկայումս արդեն ձեռնարկությունները հասել են լավ արդյունքների։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողության ռեժիմի կիրառման, արտադրաֆոնդերի ավելի լավ օգտագործման հաշվին նոր սիստեմի անցած ձեռնարկություններն զգալիորեն արագացրել են շահույթի աճման տեմպերը։ Իհարկե, չի կարելի իդեալականացնել շահույթի ցուցանիշը։ Հնարավոր են այնպիսի դեպքեր, երբ ձեռնարկությունը մեծ գումարի շահույթ է ստանում ոչ թե արտադրական-տնտեսական գործունեության բարելավման շնորհիվ, այլ ի հաշիվ պլանային տեսականու խախտման և ավելի ձեռնտու արտադրանքի իրացման, միանվագ պատվերների գների բարձրացման և այլն։ Ուստի և ձեռնարկության գործունեության գնահատականը գործնականում տրվում է ոչ թե միայն ըստ շահույթի ցուցանիշի, այլ ըստ ցուցանիշների կոմպլեքսի, ցուցանիշներ, որոնք բնորոշում են նրա գործունեության բոլոր կողմերը։ Այդ կոմպլեքսի մեջ մեծ է շահութաբերության ցուցանիշի դերը, ուստի և կանգ առնենք նրա հնարավորությունների վերլուծության վրա։

Մինչև ռեֆորմը շահութաբերության ցուցանիշը ձեռնարկության համար չէր սահմանվում որպես պետական պլանային առաջադրանք։ Այդ ցուցանիշի հիմնական նպատակն է ձեռնարկությունում ստեղծել տնտեսական շահագրգռվածություն արտադրաֆոնդերն առավել արդյունավետ օգտագործելու համար։

Ինչպես արդեն նշվել է, այդ ցուցանիշն առավել ընդունելի է արտադրության արդյունավետության բարձրացման պլանում, արդյունավետություն, որ ձեռք է բերվում ի հաշիվ արտադրական ռեսուրսների լավագույն օգտագործման։ Արտադրության շահութաբերության ցուցանիշի արմատավորումը նպաստեց այն բանին, որպեսզի ձեռնարկություններն իրացնեն իրենց համար ոչ պիտանի մեծ քանակությամբ ապրանքանյութական արժեքներ։ Մեծացավ գործող արտադրական ֆոնդերի մեկ միավորից ստացվող արտադրանքի ծավալը, ավելի խնայողաբար սկսեցին օգտագործվել շրջանառու ֆոնդերը։ Բայց սխալ կլինի գերագնահատել նաև այդ ցուցանիշի նշանակությունը։ Անվիճելի է, որ այն դրական ազդեցություն է ունենում արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման վրա։ Միևնույն ժամանակ, այդ ցուցանիշը առանձին տնտեսական ղեկավարների կարող է մղել նոր տեխնիկայի ծախսումների «տընտեսման» և դրանով իսկ արգելակել տեխնիկական առաջընթացը։ Փորձը ցույց է տալիս, որ արտադրության շահութաբերության ցուցանիշի գործողության մեխանիզմը հետագա կատարելագործման կարիք ունի։

Սակայն արտադրության շահութաբերության ցուցանիշը չափազանց անհրաժեշտ է տնտեսության պրակտիկայում և հսկայական նշանակություն ունի արդյունաբերական ձեռնարկությունում արտադրության արդյունավետության սահմանման ժամանակ։ Բանն այն է, որ սոցիալիստական տնտեսության ապրանքային բնույթի պայմաններում արտադրության արդյունավետությունից բացի կարելի է ընդունել ստացված շահույթի հարաբերությունն արտադրաֆոնդերի և շրջանառության միջոցների արժեքի նկատմամբ։

Սակայն ձեռնարկությունը ժողովրդական տնտեսության հիմնական օղակն

է, նրա գործունեությունից է կախված սոցիալիստական ողջ պլանային էկոնոմիկայի վիճակը։ Այդ իսկ պատճառով արտադրության արդյունավետության ցուցանիշների բարելավումը տնտհաշվարկային ձեռնարկության տեսակետից կարևոր նշանակություն ունի ողջ հասարակության համար։ Այդ ցուցանիշները բխում են ո՛չ միայն արտադրաուժերի արդյունավետության այս կամ աստիճանի բնութագրից, այլև հասարակության և ձեռնարկության կոլեկտիվի, նրա առանձին անդամների միջև եղած տնտեսական հարաբերություններից։ Այստեղ սոցիալիստական տնտհաշվարկային ձեռնարկությունները հենվում են ո՛չ միայն սեփական ուժի, այլև պլանաչափորեն զարգացող ամբողջ հասարակության հզորության վրա։ Հարկավոր է այս առումով շեշտել այն հանգամանքը, որ արտադրության արդյունավետության ցուցանիշը հասարակության տեսանկյունից չի կարող տնտհաշվարկային ձեռնարկության արդյունավետության անմիջական ցուցանիշ լինել ամենից առաջ այն պատճառով, որ ազգային եկամուտը հավասար չէ շահույթին, որն իրենից ներկայացնում է որպես հավելյալ պրոդուկտի սոսկ մի մասի արժեքի դրամական արտահայտությունը։ Միաժամանակ գոյություն ունեն շրջանառության հարկը, շրջանառության ծախքերը, առևտրական կազմակերպությունների շահույթը և հավելյալ պրոդուկտի այլ ձևեր։ Հասարակության տեսակետից անհրաժեշտ պրոդուկտը ազգային եկամտի կարևորագույն մասն է, տնտհաշվարկային ձեռնարկության տեսակետից անհրաժեշտ պրոդուկտի արժեքը հանդես է գալիս աշխատավարձի, այսինքն՝ որոշակի եկամտի ձևով։ Հետևաբար, տնտեսության շահութաբերության ցուցանիշը տնտհաշվարկային ձեռնարկության տեսակետից հանդես է գալիս ոչ միայն որպես արտադրության արդյունավետության, այլև ազգային եկամտի նախնական բաշխման ցուցանիշ։ Ուստի և արտադրության արդյունավետությունը միևնույն գործոնների ազդեցության ներքո հասարակության և ձեռնարկության տեսակետից կարող է փոխվել ինչպես այս, այնպես և հակառակ ուղղությամբ։ Օրինակ, աշխատավարձի աճը կարող է հակվել ձեռնարկության տնտհաշվարկային արդյունավետության իջեցման կողմը, միաժամանակ, հասարակության տեսանկյունից, այն չի անդրադառնա արտադրության արդյունավետության ցուցանիշի վրա։ Այսպիսով, միանգամայն ակնհայտ է, որ արտադրության արդյունավետության լոկալ չափանիշի ընդհանուր պրոբլեմը պետք է լուծվի, հաշվի առնելով գլոբալ չափանիշի հետ համաձայնեցումը։

Նախ և առաջ նշենք, որ արտադրության արդյունավետության առավել գերադասելի լոկալ չափանիշի որոնումը սովորաբար կատարվում է օպտիմալ պլանավորման տեսության դիրքերից, լոկալ չափանիշը գլոբալ չափանիշից, այսինքն՝ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության արդյունավետության չափանիշից բխեցնելու մեթոդաբանական սկզբունքով։ Այս դեպքում որպես արդյունավետության գլոբալ չափանիշ ընդունվում է «անհրաժեշտ արտադրանքի մեծացումը համեմատաբար նվազագույն ծախսումների դեպքում»։ Հետևաբար, ժողովրդական տնտեսության բարելավման խնդիրը լուծելիս, ամբողջությամբ վերցրած, անհրաժեշտ է առավելագույնի հասցնել հասարակության պահանջմունքների բավարարման ֆունկցիան։ Այս պահանջն արտացոլող ֆունկցիան կարող է կառուցված լինել երկու եղանակով՝ կամ պահանջմունքների (արտադրության արդյունքների) բավարարման ֆունկցիաների և հասարակական ծախսերի ֆունկցիայի հարաբերության ձևով, կամ էլ այդ ֆունկցիաների տարբերության ձևով։ Ընդ որում, առանձին ձեռնարկության արտադրանքի ծավալը դիտվում է որպես ամբողջ երկրի մասշտաբով որոշակի արտադրանքի ծավալի փոքր հավելում։

Այդ դեպքում նպատակային լոկալ ֆունկցիան կարելի է արտահայտել որպես տվյալ ձեռնարկության գործունեությամբ պայմանավորված գլոբալ ֆունկցիոնալ հավելում։

Այսպիսով, արտադրության սահմանափակ ռեսուրսների պայմաններում այս կամ այն ձեռնարկության արտադրության արդյունավետության լոկալ չափանիշ պետք է հանդես գա որպես չափանիշը առավելագույն շահույթի, որը հաշվվում է օպտիմալ գներով, ստացվում է գլոբալ օպտիմալ պլանից։ Այս



մոտեցման ողջ նշանակությամբ հանդերձ դրա իրացումը չափազանց դժվարին է, քանի որ առայժմ բացակայում են օպտիմալ գների (գնահատականների) որոշման մեթոդները։ Այս պրոբլեմի լուծման ժամանակ մաքսիմում շահույթի (կամ արտադրության շահութաբերության) ընդունումը որպես առանձին արդյունաբերական ձեռնարկության արտադրության արդյունավետության չափանիշ՝ միանգամայն ակնառու է։

Սակայն իններորդ հնգամյակում և տասներորդ հնգամյակի անցած երկու տարում ձեռնարկությունների աշխատանքի փորձը ցույց տվեց, որ արտադրության ներսում ռեզերվների հայտնաբերման և մոբիլիզացման կարևորագույն պայմանը ներգործարանային տնտհաշվարկի դիրքերի զգալի ամրապնդումն է, այսինքն՝ ներարտադրական խնդիրների լուծման դեպքում արտադրանքի ինքնարժեքի ցուցանիշը որպես արդյունավետության չափանիշ օգտագործելու կարևորությունը և անհրաժեշտությունը։

Այս տեսակետից առավել հատկանշական են արտադրության տնտեսական-մաթեմատիկական մոդելավորմամբ ստացված ծավալուն արդյունքները. այստեղ առանձին տեխնոլոգիական պրոցեսների կամ արտադրական ստորաբաժանումների բարելավման մոդելը մշակելիս մեծ մասամբ որպես բարելավման չափանիշ էր ընդունվում համապատասխանաբար տեխնոլոգիական և արտադրամասային ինքնարժեքը։ Հետագայում, ձեռնարկության մակարդակով կատարվող հետազոտությունների ժամանակ, բնականաբար, հնարավորություն ստեղծվեց այդ արդյունքները շաղկապել իրար, քանի որ արտադրամասային ինքնարժեքը տնտեսական տեսակետից միանգամայն հնարավոր է շաղկապել արտադրանքի ֆաբրիկագործարանային կամ լրիվ ինքնարժեքի հետ։ Այսպիսով, տվյալ դեպքում ձեռք է բերվում արտադրության արդյունավետության մասնավոր չափանիշների և ընդհանուր չափանիշի տնտեսական համատեղելիություն, մի բան, որ շատ կարևոր է մեթոդաբանական տեսակետից։

Որպես արտադրության արդյունավետության գնահատման օրինակ, կանգ առնենք մի քանի արդյունքների վրա, որ մենք ստացել ենք Անդրկովկասի էլեկտրամեքենաշինական առաջատար գործարանների՝ Հայէլեկտրագործարանի, Բաքվի էլեկտրամեքենաշինական և Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական գործարանների ներգործարանային տրանսպորտի ծառայության աշխատանքները հետազոտելիս։

Վերլուծությունը ցույց է տվել, որ այդ ձեռնարկություններում ներգործարանային տրանսպորտի աշխատանքի կազմակերպման սիստեմում նկատվում է աշխատաժամանակի մեծ կորուստ (28—37 տոկոս)։ Բարելավման հատուկ խնդիրների լուծման և հետագայում դրանք պրակտիկայում ներդնելու հետևանքով հաջողվեց Հայէլեկտրագործարանում գտնել արտադրամասային կոնվեյերային տրանսպորտի աշխատանքի բարելավման ռեզերվներ, Բաքվի էլեկտրամեքենաշինական և Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական գործարաններում՝ միջարտադրամասային էլեկտրասայլակային տրանսպորտի աշխատանքի բարելավման ռեզերվներ։ Դա, բնականաբար, հնարավորություն ընձեռեց Հայէլեկտրագործարանում ներգործարանային տրանսպորտային ծառայությունների արտադրամասային ինքնարժեքը կրճատել 24 տոկոսով, Բաքվի էլեկտրամեքենաշինական գործարանում՝ 22, Թբիլիսիի էլեկտրաքարշաշինական գործարանում՝ 28 տոկոսով։

Այսպիսով, այդ ձեռնարկություններում արտադրության արդյունավետության բարձրացման ներարտադրական ռեզերվները գնահատելիս մեր հետազոտությունների արդյունքները կարող են անմիջականորեն հաշվի առնվել, եթե որպես չափանիշ ընդունվի արտադրանքի ինքնարժեքը։ Պատահական չէ, որ մշակված և մշակվող սիստեմների մեծ մասը հակված է այդ իսկ ցուցանիշի կողմը։ Իհարկե, այդ դեպքում արտադրության արդյունավետության չափանիշի ընտրության պրոցեսի նկատմամբ ընդհանուր մոտեցումը զերծ չէ թերությունից։ Սակայն դա հակված է, մի կողմից, արտադրության հաշվառման ու պլանավորման պրակտիկայում գործող սիստեմի կողմը, և մյուս կողմից, արտադրության արդյունավետության չափանիշների տնտեսական համատեղելիության պահանջի բավարարման կողմը։

# ՊԵԿԻՆԻ ՀՐՋԻԳԱՅԻՆ ԿՈՒՐՍԸ

Օ. ԲՈՐԻՍՈՎ, Մ. ԻԼՅԻՆ

ՎԵՐՋԻՆ ՔՍԱՆ ՏԱՐՈՒՄ Չինաստանի քաղաքական իրադարձությունների շղթան, մաոականների՝ միջազգային ասպարեզում խաղաղության, ազգային ազատագրության և սոցիալիզմի քայքայման նպատակին ուղղված գործողությունները ծվենների են վերածում «հեղափոխականության», «հակաիմպերիալիզմի» այն ծածկույթը, որով Պեկինի լիդերները առաջ դեռ ձգտում էին քողարկել իրենց մեծապետական-հեգեմոնիստական պատվամոլությունը և նպատակները: Մաոիզմը դրսևորել է իր իսկական դեմքը՝ չինական շովինիզմի դեմքը: Դրա նոր օրինակն են ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանների հետ «համաքայլ ընթանալու» Պեկինի պատրաստակամությունը և Վիետնամի դեմ մաոականների սանձազերծած զրպարտանքի ու պրովոկացիաների կամպանիան: Ներկայիս մաոական ղեկավարությունն իրեն առճակատման վիճակի մեջ է դնում բոլոր խաղաղասեր երկրների ու ժողովուրդների հետ:

Սակայն ամենևին էլ բոլորը չեն (նույնիսկ նրանք, ովքեր իրենց նպատակն են համարում խաղաղության, արդարության, ազգային անկախության ու իրավահավասարության համար մղվող պայքարը), որ տեսնում են չինական ղեկավարության քաղաքականությունից բխող վտանգը, սպառնալիքն իրենց երկրի շահերի համար: Որոշ քաղաքական շրջանների՝ Պեկինի աջակցությունը գտնող շահադիտական հաշիվների կամ նեղ ազգայնական պատվամոլությունների բավարարման անցողիկ շահերը ոմանց աչքերը փակում են մաոականների երկարատև վտանգավոր նպատակների հանդեպ:

Չինաստանի արտաքին քաղաքական կուրսը, որ հակասում է աշխարհի պրոգրեսիվ ուժերի՝ լարվածության թուլացումը խորացնելու և սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու ջանքերին, հրճվանքով են պաշտպանում ԱՄՆ-ի առավել ագրեսիվ շրջանները, այն բարձր է գնահատվում և՛ պաշտոնական Վաշինգտոնում, և արևմտյան երկրների մի քանի այլ մայրաքաղաքներում:

Մաոյի մահից հետո արևմտյան պրոպագանդան շատ է խոսում այն մասին, թե չինական քաղաքականությունն իբր ստանում է «չափավոր», «պրագմատիկ» բնույթ: Չինական մի շարք ղեկավարների հայտարարությունները սնունդ են տալիս նման պատրանքների համար: Պեկինի քաղաքականության «ռեալիզմի» մասին եզրակացություն անողների համար յուրատեսակ կուռք է համարվում Դեն Սյաո-պինը: Երկրորդ ռեաբիլիտացումից անմիջապես հետո ելույթ ունենալով ՉԿԿ XI համագումարում, Դեն Սյաո-պինը կոչ արեց «վերականգնել և զարգացնել... ռեալիստական մոտեցումը»: «Անհրաժեշտ է պահպանել խոսքի և գործողության միասնության սկզբունքը...», ասել է նա: 1978 թվականի հունիսին բանակում տարվող քաղաքական աշխատանքի հարցերին նվիրված խորհրդակցությունում արտասանած իր ճառում Դեն Սյաո-պինը կրկին շեշտեց, թե պետք է «կարողանալ ընդհանրացնել փորձը, ռեալիստական մոտեցում ունենալ օբյեկտիվ իրականության նկատմամբ և ամեն հարցում ելնել իրականությունից: Միայն այսպես վարվելով մենք կարող ենք ճիշտ կամ համեմատաբար ճիշտ լուծել հարցերը»,— եզրակացրեց նա:

Դենին կրկնում է ՉԺՀ-ի նախկին մարշալ Նե Ժուն-չժենը, որը մի բանաստեղծության մեջ հավաստում է. «Քառսի ավելի քան քսան տարիները լավ դաս են...»:

Ցույց երկրի ներսում և միջազգային ասպարեզում մաոական քաղաքականության բազմաթիվ ձախողումների դեմհանդիման չինական ղեկավարները գիտակցե՞լ են իրենց սխալները և որոշել են դասե՞ր քաղել: Դժբախտաբար՝ ոչ: Պեկինի ներկայիս գործիչներն այնքան հեռուն են գնացել իմպերիալիզմի և ռեակցիայի հետ միանալով, որ այլևս ի վիճակի չեն դասեր քաղել սեփական սխալներից:

Հենց այդ են վկայում չինական նոր ղեկավարության գործողությունները, ղեկավարություն, որը կառչում է մաոական դոգմաներից, երկրում բորբոքում նացիոնալիզմի հակասովետական, շովինիստական կամպանիա, այլ ժողովուրդների ու երկրների նկատմամբ ատելության կամպանիա: Այդ են վկայում Խուա Գո-ֆենի կոչերը՝ «զարգացնել և բազմապատկել կուլտուրական հեղափոխության նվաճումները», «անշեղորեն վարել... նախագահ Մաո Ցզե-դունի արտաքին քաղաքական գիծը»: Պեկինյան գործիչները զրպարտչական մեկնաբանություն են տալիս լարվածության թուլացման, զինաթափման հարցերին և կրքոտորեն հաշվում «պատերազմի աճման գործոնները»: Խաղաղության գործի վիժեցման, պատերազմի հրահրման կուրսը հանուն վելիկոխանական հեգեմոնիստական պատվամոլության՝ Պեկինի վաղեմի գիծն է: Սակայն այն միանգամից չդրսևորվեց, և խաղաղասիրական ուժերն ամենևին էլ միանգամից չէր, որ գիտակցեցին, թե Պեկինի ինչպիսի վտանգավոր քաղաքականության են հանդիպել իրենք:

Այսպիսով, ծանրակշիռ պատճառներ կան՝ դիմելու մաոական պլատֆորմի ձևավորման և ինքնամերկացման պատմությանը, որպեսզի ցույց տանք մաոականների քաղաքականության հաջորդականությունը, բացահայտենք Պեկինի հայտարարությունների կեղծ բնույթը և արևմուտքում որոշ շրջանների հույսերի պատրանքայնությունը, թե «չինական ղեկավարությունը կանգնել է ռեալիզմի ուղու վրա» և դա, իբր, «չինական քաղաքականությունը կազատի վտանգավոր էքստրեմիզմից»: Կարևոր է նաև ցույց տալ, որ մարքս-լենինյան կուսակցությունները կռահել են մաոականների հեգեմոնիստական նկրտումները և հակազդում են դրանց վրա:

## I

Հիսունական թվականներին և 60ական թվականների առաջին կեսին մաոականներն իրենց պառակտիչ աշխատանքը քողարկում էին «մարքս-լենինյան ուսմունքի անաղարտության համար պայքարելու», «նրա հեղափոխական սկզբունքները պաշտպանելու» մասին դատողություններով: Այն ժամանակ ՉԺՀ-ի ղեկավարությունը հրապարակայնորեն հաճույքով խոսում էր «սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական շարժման միասնության կարևորության մասին, իմպերիալիզմի դեմ պայքարի մասին»: Հենց դրանով էլ նրանք ձգտում էին քողարկել իրենց իսկական մտադրությունները, լույս ընծայելով «Կեցցե՛ լենինիզմը» ժողովածուն, որտեղ բացահայտորեն երևան հանեցին իրենց տարաձայնությունները համաշխարհային կոմունիստական շարժման հետ:

Հասկանալի է, որ շատերին չփոթեցրեց այդ ժողովածուում՝ իմպերիալիզմը ոչնչացնելու և նրա փլատակների վրա «հազար անգամ ավելի բարձր քաղաքակրթություն կառուցելու» մտադրության վերաբերյալ արտահայտությունը: Սակայն այն ժամանակ ամենևին բոլորը չէին, որ հասկանում էին, թե ինչ է թաքնված հեղափոխականացված այդ արտահայտությունների ետևում: Ոմանք դրանք ընկալեցին որպես պատասխան լարված ռեակցիա՝ Չինաստանի դեմ նյութվող իմպերիալիստական խարդավանքներին: Քիչ չէին այն կոմունիստները, ովքեր լրջորեն էին ընդունում մարքսիստական մի շարք թեզերն ու լոզունգները, որ մաոականները մտցրել էին 1963 թվականի հունիսի 14-ին իրենց հայ-

տարարած «Առաջարկություն միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի մասին»— «25 կետերի» մեջ։ Այդ փաստաթղթում ասվում էր, օրինակ, որ «հարկավոր է հոգ տանել սոցիալիստական լագերի համախմբվածության մասին», «միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության պաշտպանումը և ամրապնդումը կոմունիստական ու բանվորական բոլոր կուսակցությունների ընդհանուր սրբազան պարտքն է»։ Բայց այդ իսկ ժամանակ պեկինյան ղեկավարությունը և նրա լիդեր Մաո Ցզե-դունը, ի լիակատար հակադրումն իրենց հայտարարությունների, կուլիսների ետևում արդեն քայքայիչ աշխատանք էին տանում բոլոր ուղղություններով։

Դեռ 1956 թվականին Մաո Ցզե-դունը սկսեց զարգացնել և գաղափարախոսական առումով «հիմնավորել» կոմշարժման մեջ պառակտման և ՍՍՀՄ-ի ու Չինաստանի միջև «վեճերի» անխուսափելիության թեզերը։ 1956 թվականի իր ելույթներից մեկում Մաոն ասել է. «Այնուհետև կանգ կառնեմ չին-սովետական հարաբերությունների վրա։ Վեճերը, ըստ իս, անխուսափելի են...»։ Միևնույն ժամանակ Մաոն Պեկին այցելած եղբայրական կուսակցությունների ղեկավարների շրջանում զրպարտանք էր տարածում, թե իբր ՍՄԿԿ-ն «դեն է նետել լենինիզմը» (1956 թ.), թե ՍՍՀՄ-ում «կապիտալիզմի վերականգնում է տեղի ունենում» (1958 թ.)։

Որպեսզի Մաոյի երկերեսանիությունն ու փարիսեցիությունն ավելի ակնառու դառնա, նշենք, որ այդ իսկ ժամանակ՝ 1956—1958 թվականներին, փոխադարձաբար միմյանց բացառող արտահայտություններ էին արվում երբեմն միևնույն օրը։ Մաոն, հին չինական ռազմական ստրատեգ Սուն-ցզիի սկզբունքների ոգով, մի շարք քայլեր էր կատարում «բթացնելու հակառակորդի զգոնությունը» և «դաշնակիցներից մեկուսացնելու նպատակով նրան մղելու չմտածված քայլերի»։

Ամենից առաջ մաոականները, ՉԿԿ-ի ներսում և կոմունիստական շարժման մեջ աշխատելով վարկաբեկել Սովետական Միությանը, ՍՄԿԿ-ին, միաժամանակ ուժեղացրին փառաբանումը սոցիալիստական լագերում և կոմունիստական շարժման մեջ ՍՄԿԿ-ի «ղեկավար դերի» առթիվ։ 1957 թվականի նոյեմբերին հանդես գալով սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների մոսկովյան խորհրդակցությունում, Մաոն հայտարարեց. «Քանի որ գլխավոր է հարկավոր, ո՞վ պետք է գլխավորի, եթե ոչ Սովետական Միությունը, ապա էլ ո՞վ... Մեր Չինաստանը չի կարող գլխավոր լինել, քանի որ դրա համար տվյալներ չունի»։

Այսպես Սովետական Միությանն սկսեցին ներկայացնել սկզբում որպես «ղեկավար», իսկ ապա՝ «գլխավոր», իսկ լռելյայն սկսեցին նրան վերագրել «հեգեմոնիստական նկրտումներ»։ Զրպարտանքի կամպանիա ծավալելով ՍՄԿԿ-ի դեմ և ձգտելով թուլացնել նրա սերտ համագործակցությունը եղբայրական կուսակցությունների հետ, Մաոն ձևակերպեց իր քաղաքական պրիոմը. «Խփել գլխին, մնացած ամեն ինչ ինքն իրեն փուլ կգա»։ Դրանից հետո Սովետական Միությունը մեղադրվեց «հեգեմոնիստական նկրտումների մեջ» և հորջորջվեց «հեգեմոն»։

Իսկ երբ ակնբախ դարձավ կուսակցության, նրա լենինյան Կենտկոմի և ժողովրդի ձույլ միասնությունը պառակտելու փորձերի ձախողումը, Մաոն Սովետական Միությունը որպես սոցիալիստական երկիր չեղյալ հայտարարեց։

1964 թվականին Մաոն առաջադրեց հրեշավոր մի թեզ. «Ներկայիս Սովետական Միությունում իրականացվում է բուրժուազիայի դիկտատուրա, խոշոր բուրժուազիայի դիկտատուրա, գերմանաֆաշիստական տիպի դիկտատուրա, հիտլերյան տիպի դիկտատուրա»։ Այդ ժամանակ նույնիսկ Մաոյի զինակիցներին այս թեզը թվաց «ֆանտաստիկական»։ Ավելի ուշ հայտնի դարձավ, որ Լին Բյաոն՝ Մաոյի այն ժամանակվա «մերձավոր զինակիցն ու հաջորդը», ասել է, որ «Սովետական Միությունում ֆաշիստական դիկտատուրայի վերաբերյալ պնդումներին ոչ ոք չի հավատա»։ Մինչև 1970 թվականը Մաոյի այդ հայտարարությունը չէր հրապարակվել։ 1970 թվականից սկսեցին «Սովետական Միության հատուկ գործակալներ» հորջորջվել բոլոր նրանք, ովքեր չէին



համաձայնվում այդպիսի ղառանցանքներին։ Այժմ Խուա Գո-ֆենը և հակահեղափոխական «կուլտուրական հեղափոխությամբ» առաջ քաշված այլ անձինք, Մաոյի մահից հետո հենց որ զավթեցին իշխանությունը, շտապեցին յուրացնել նրա հակասովետական հերյուրանքները, որպեսզի ցուցադրեն իրենց հարյուրտոկոսանոց լոյալությունն ու նվիրվածությունը մաոիզմին։

Բավական է միայն կողք-կողքի դնել ժամանակագրական տեսակետից միևնույն ժամանակին վերաբերող Մաոյի այն հայտարարությունները, թե Սովետական Միությունը վերածվել է «սոցիալ-իմպերիալիստական պետության», և նրա կոչը, «Միշտ՝ և՛ այժմ, և՛ ապագայում մեր սերունդը, մեր հետնորդները պետք է սովորեն Սովետական Միությունից»,— ակնհայտ կդառնա մաոական քաղաքականության ողջ երկվությունը, ներքին կեղծիքը, նրա ճիզվիտական տակտիկան։ Այդ տակտիկայի նպատակն է միջազգային հասարակայնության ուշադրությունը շեղել գլխավորից՝ համաշխարհային հեգեմոնիայի համար մաոականների մղած պայքարից։ Հանուն հեգեմոնիստական նպատակների ապահովման այդ ծայրահեղ անսկզբունքայնությունն է նկատվում նաև առհասարակ իմպերիալիզմի, մասնավորապես ամերիկյան իմպերիալիզմի նկատմամբ մաոականների բռնած դիրքում, ինչպես նաև պատերազմի և խաղաղության, ազգային-ազատագրական շարժումների պաշտպանության հարցում։

## II

Հակաիմպերիալիստական պայքարում չինական հեղափոխության ներդրումը, իսկ այդ հեղափոխության հաղթանակից հետո Չինական Ժողովրդական Հանրապետության հաջող զարգացումն առաջին տասը տարիների ընթացքում չինական ղեկավարությանը և անձամբ Մաոյին, պատկերավոր ասած, տվեցին երկարաժամկետ բարոյաքաղաքական «վարկ»։ Մինչև 50-ական թվականների վերջերը ՉԺՀ-ի մասնակցությունը Սովետական Միության և խաղաղասիրական այլ ուժերի համագործակցությանը՝ ագրեսիայի, պատերազմի և իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում (պայքար Չինաստանում և Կորեայում ամերիկյան ագրեսիայի դեմ, Բանդունգի կոնֆերանսը, ազգային-ազատագրական շարժումների պաշտպանությունը, Հնդկաստանի և Բիրմայի հետ համատեղ «փանչա շիլա» սկզբունքների առաջադրումը, Ասիայում և Խաղաղ օվկիանոսի ավազանում խաղաղության գոտի ստեղծելու գաղափարը) նույնպես նպաստեցին այն բանին, որ Չինաստանը և նրա ղեկավարները հեղինակություն ձեռք բերեն առաջադիմական ուժերի շրջանում, իմպերիալիզմի դեմ մարտնչողների շրջանում։ Օգտվելով այս ամենից, մաոականներն իրենց պատկերում էին և այժմ էլ երբեմն դեռ պատկերում են որպես «իմպերիալիզմի դեմ ամենահետևողական մարտնչողներ»։

Ակներևաբար հասկանալով որ բոլոր կոմունիստները, պրոգրեսիվ բոլոր ուժերը թե՛ բանվորական և թե՛ ազգային-ազատագրական շարժման մեջ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը դիտում են որպես առաջնակարգ խնդիր, դեմոկրատական ամենալայն ուժերի համախմբման պլատֆորմ, մաոականները երկար ժամանակ ֆանտաստիկ հույսեր էին փայփայում, թե իրենց կհաջողվի ցուցադրական հակաիմպերիալիզմի օգնությամբ հեղինակություն վաստակել, վարկաբեկել Սովետական Միությանը և նրա բարեկամներին որպես «իմպերիալիզմի մեղսակիցներ», որոնք տեղի են տալիս իմպերիալիզմի միջուկային շանտաժին։

Հենց սա էր մաոական ստրատեգիայի ու տակտիկայի էությունը 60-ական թվականների սկզբին, երբ նրանք առաջադրեցին այսպես կոչված «Առաջարկություն միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գծի մասին» — «25 կետերը»։ Եվ այն օրվանից, երբ նրանց կեղծ հակաիմպերիալիզմը և փարիսեցիությունը հայտնի դարձավ հակաիմպերիալիստական ճակատի մասնակիցների մեծամասնությանը, և Պեկինը կանգնեց իմպերիալիզմի ու ռեակցիայի առավել ագրեսիվ շրջանների հետ բացահայտ համագործակցության և բլոկ կազմելու ուղու վրա, մաոականները գերադասում են չհիշել «25 կետերը», քանի որ նույնիսկ «Առաջարկության» պարունակած հակաիմպերիալիստական կեղծ լոզունգներն այժմ հնչում են որպես մեղադրական ակտ Մաոյի հասցեին։

Սակայն, Չինաստանի հակաիմպերիալիստական դիրքին «հետևողականության» տեսք տալու համար պեկինյան լիդերները դիմեցին հերթական պրոպագանդիստական տրյուկի: Նրանք հայտարարեցին, թե ամերիկյան իմպերիալիզմը, որի հետ իբր Սովետական Միությունն ուզում էր «համաձայնության մեջ մտնել», ետ է մղվել երկրորդ պլան, նրան, իբր, կարելի է լրջորեն չընդունել: «ԱՄՆ-ը թղթե վագր է,— հայտարարեց Մաոն:— Դուք նրան մի հավատացեք: Նրան կարելի է խոցել միանգամից»: Որպես բոլոր ժողովուրդների «գլխավոր թշնամի» և «պատերազմի գլխավոր աղբյուր» ամերիկյան իմպերիալիզմի տեղը, ըստ պեկինյան կալկուլյացիայի, գրավել է Սովետական Միությունը, որը հորջորջվում է «սոցիալ-իմպերիալիզմ», «գերպետական-հեգեմոն»: Այդպես, պեկինյան լիդերները, հաշվի առնելով հակաիմպերիալիստական լոզունգների հեղինակությունը, որոշել են պորտաբուծություն անել դրանցով նույնիսկ իմպերիալիզմի հետ մերձեցման, դաշինքի բացահայտ կուրս վերցնելուց հետո: Այդ նպատակով իմպերիալիզմի շահագործողական և ագրեսիվ հատկանիշները վերագրվեցին Սովետական Միությանը:

Չինական գործիչներն իրենց դիրքավորման մեջ կատարեցին «մահացու թռիչք»՝ «ամերիկյան իմպերիալիզմի դեմ պայքարը մինչև վերջ հասցնելու» կոչերից անցնելով հետևյալ լոզունգին. «Ընդդեմ սովետական գերպետական հեգեմոնիզմի ստեղծել ամենալայն միասնական ճակատ», որն ընդգրկի «երրորդ աշխարհը», «երկրորդ աշխարհը» և «առաջին աշխարհը» (ԱՄՆ):

Սակայն պեկինյան տակտիկայում կատարված 180 աստիճանի այդ շրջադարձը՝ նախկին հեգեմոնիստական նպատակների պահպանմամբ հանդերձ, մինչև օրս հասկացել են ոչ բոլորը: Արտասահմանյան որոշ քաղաքական գործիչներ ըստ սովորության, իսկ ոմանք էլ, ելնելով իրենց քաղաքական խաղի շահերից, հակառակ ակնհայտ փաստերի, շարունակում են պնդել կամ հայտարարել «Չինաստանը որպես իմպերիալիզմի դեմ պայքարի գործոն»:

Բժեզինսկու, Շտրաուսի, Տետչերի, Ջեքսոնի տիպի իմպերիալիստական ստրատեգներն ու քաղաքագետները հույս են տածում, որ Պեկինի քաղաքականության մեջ կատարված շրջադարձը Չինաստանը կդարձնի «հաղթաթուղթ» սոցիալիզմի և խաղաղության ուժերի հետ ունեցած իրենց քաղաքական խաղում: Նրանք պատրանքներ են հյուսում, որ այդ խաղաքարտը կարող է հաղթել հակաիմպերիալիստական բոլոր «հաղթաթղթերին»: Կոմունիզմի և Սովետական Միության նկատմամբ ատելությամբ կուրացած՝ նրանք չեն ցանկանում նկատել Պեկինի կողմից աշխարհին սպառնացող վտանգը և նույնիսկ պատրաստ են կոմունիզմի դեմ մղվող պայքարում զոհաբերել սեփական երկրների ու ժողովուրդների շահերը, նրանց անվտանգությունը՝ հանուն իրենց նեղ դասակարգային, շահադիտական նպատակների, հանուն այն բանի, որ իրենց կողմը գրավեն պեկինյան ռենեգատներին, որոնք, իրենց հերթին, հանուն շովինիստական հեգեմոնիստական նպատակների, պատրաստ են դաշինքի մեջ մտնել թեկուզ հենց սատանայի հետ, մարդկությանը ներքաշել համաշխարհային պատերազմի հորձանուտը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը 1978 թվականի հունիսի 25-ին ելույթ ունենալով Մինսկում, վճռական և սկզբունքային գնահատական տվեց Արևմուտքի որոշակի շրջանների այդպիսի գործողություններին: «Վերջին ժամանակներս ԱՄՆ-ում,— ասաց նա,— այն էլ բարձր մակարդակով և բավական անպատկառ ձևով, փորձեր են արվում ՍՍՀՄ-ի դեմ գործել «չինական խաղաքարտով»: Կարճատես և վտանգավոր քաղաքականություն: Տե՛ս, որ դրա հեղինակները չարաչար չզղջան դրա համար»:

Հակաճապոնական պատերազմի ժամանակաշրջանում և Չինաստանի ու Կորեայի դեմ ամերիկյան ագրեսիայի տարիներին (1946—1953) բուն իրադրությունը պահանջում էր ամենավճռական հակաիմպերիալիստական դիրք բռնել: Բայց նույնիսկ այն ժամանակ էլ Մաո Ցզե-դունը, խոսքով ամենայն սրությամբ մերկացնելով իմպերիալիզմը, իսկ գործով, երբ հարկ էր լինում անհրաժեշտ պրակտիկ ներդրում ունենալ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, տատա-



նումներ էր դրսևորում, կառչելով օպորտունիստական չարչիական սկզբունքներից: Երբ ամերիկյան իմպերիալիստներն ագրեսիա կատարեցին երիտասարդ կորեական պետության դեմ, Մաո Ցզե-դունը երկար ժամանակ դեմ էր կորեական ժողովրդին անմիջական աջակցության որոշում կայացնելուն և իմպերիալիզմի միավորված ուժերին ուղղակի դիմադրություն ցույց տալուն, ուժեր, որոնք Կորեայի տերիտորիայից սպառնում էին նաև Չինաստանի տերիտորիալ ամբողջությանն ու անվտանգությանը: Փաստորեն Մաոն համաձայնեց չինական կամավորներ ուղարկել Կորեա հանգամանքների ճնշման ներքո և լոկ այն բանից հետո, երբ Սովետական Միությունն ստանձնեց Չինաստանի երկնքի պաշտպանությունը:

Այն ժամանակ, 50-ական թվականներին Մաոն ասում էր. «Սովետական Միությունը խաղաղության պատվարն է ամբողջ աշխարհում, ամերիկյան ռեակցիայի համաշխարհային տիրապետություն հաստատելուն խոչընդոտող հզոր գործոնը: Սովետական Միության գոյությունը միանգամայն անիրագործելի է դարձնում ամերիկյան և համաշխարհային ռեակցիայի հավակնությունները»:

Մաո Ցզե-դունը և նրա կողմնակիցները, համաշխարհային հեգեմոնիա հաստատելու համար պայքարի մեծապետական-շովինիստական պլատֆորմ կազմավորելով, չէին կարող ամբողջովին հրաժարվել հակաիմպերիալիստական լոզունգներից: Բացի դրանից հարկավոր էին և այժմ էլ հարկավոր են վիթխարի հնարամիտ ջանքեր մեծապետական նպատակների քողարկման համար, որպեսզի ժամանակից շուտ չվախեցնեն, չլարեն նրանց ուշադրությունը, ում որ մաոականները «ժամանակավոր դաշնակիցների» դեր են հատկացրել իրենց երկարատև ստրատեգիայի ու տակտիկայի մեջ:

Տխրահռչակ «25 կետերում» պեկինյան գործիչները ձգտում էին նույնիսկ բոլոր ժողովուրդների ուսուցիչների կեցվածք ընդունել, թե ինչպես պետք է պայքարել իմպերիալիզմի դեմ, ինչպես օգնություն ցույց տալ ազգային-ազատագրական շարժմանը: Այս կապակցությամբ, մի կողմից չինական մաոական հեգեմոնիզմի ու մեծապետականության և մյուս կողմից՝ իմպերիալիզմի դեմ ժողովուրդների պայքարի, խաղաղության, սոցիալական առաջընթացի համար, իմպերիալիզմի և պատերազմի քաղաքականության դեմ հեղափոխական երեք հոսանքների պայքարի միջև եղած բախումը և անհաշտ հակասությունը պեկինյան լիդերները ճգնում էին ներկայացնել որպես «սկզբունքային տարաձայնություններ» լոկ ՉԿԿ-ի և ՍՄԿԿ-ի միջև: Այդ «սկզբունքային տարաձայնությունների» մասին մաոականները չեն դադարում պնդել մինչև օրս, հայտարարելով, որ պայքարն այդ «սկզբունքային հարցերի շուրջը իրենք կմղեն 10 հազար տարի»:

Եթե հավատալու լինենք չինական լիդերներին, «վերջին հաշվով» «սկզբունքային տարաձայնությունները» իբր հանգելու են այն բանին, որ «հարկավոր է, թե հարկավոր չէ» պաշտպանել 1957 թվականի դեկլարացիայի և 1960 թվականի հայտարարության հեղափոխական սկզբունքները», «պաշտպանել մարքսիզմ-լենինիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը», «անցկացնել հեղափոխություն», «պայքարել իմպերիալիզմի դեմ», «պաշտպանել սոցիալիստական լագերի համախմբվածությունը և միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը»:

«1957 թվականի դեկլարացիայի և 1960 թվականի հայտարարության հեղափոխական սկզբունքները պաշտպանելու» վերաբերյալ չինական գործիչների կոչերը ավելին չէին, քան պրոպագանդիստական հնարք, որովհետև այդ «25 կետերի» առաջադրման բուն փաստը նշանակում էր լիովին ժխտել միջազգային կոմունիստական շարժման՝ համատեղ մշակված փաստաթղթերը:

Ոչ պակաս երեսպաշտական ու կեղծ բնույթ էին կրում նաև Պեկինի երդումները՝ «պաշտպանել մարքսիզմ-լենինիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը»: Մի՞թե կարելի է «պաշտպանել» հեղափոխական ուսմունքը, այն նենգափոխելով մաոիզմի սոցիալ-շովինիստական գաղափարախոսությամբ: Այդ էլ իրականացվեց Չինաստանում, որը և ամրապնդվեց մաոական երեք համագու-

մարների՝ IX, X և XI համագումարների կողմից, իսկ այնուհետև արձանագրվեց երկու սահմանադրություններում։ Ինչ վերաբերում է «պրոլետարական ինտերնացիոնալիզմին», ապա մաոականների շուրթերին այս բառերի իսկական բովանդակությունն այժմ կասկածի տակ չի դնում նույնիսկ Ալբանական աշխատանքի կուսակցության ղեկավարությունը, որը մի որոշ ժամանակ Պեկինի կոնյունկտուրային աջակցությունն ընդունում էր որպես իսկական «պրոլետարական համերաշխության» արտահայտություն։

Ժամանակի դատարկ կորուստ կլիներ նաև մաոականների հետ վիճել այն հարցի շուրջը, թե «հարկավոր է, թե՞ հարկավոր չէ հեղափոխություն անցկացնել», եթե հատկապես նկատի ունենանք, որ որպես «հեղափոխության» օրինակ, որը «հարկավոր է անցկացնել», դիտվում է այսպես կոչված «կուլտուրական հեղափոխությունը», իսկ Պինոչետի խռովությունը մատուցվում է որպես մի «հեղափոխություն», որը «հարկավոր է պաշտպանել»։ Պեկինյան լիդերները պաշտպանում են իմպերիալիզմի և ռեակցիայի կողմից կոմունիստների և ձախ ուժերի ճնշումը Սուդանում ու Եգիպտոսում, ազգային-ազատագրական շարժումների ճնշումը Զաիրում, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում. հայտնի է նրանց դավաճանական դիրքը Անգոլայի, Եթովպիայի արդարացի պայքարի նկատմամբ։

Չինական ղեկավարներն իրենք պատասխանեցին սեփական հարցին՝ «Հարկավոր է, թե հարկավոր չէ պաշտպանել սոցիալիստական լագերի համախմբվածությունը և միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը»։ Ի հակադրություն հեղափոխական երեք հոսանքների միասնության մարքս-լենինյան կոնցեպցիայի, հոսանքներ, որոնցում վճռական և առաջատար դերը պատկանում է համաշխարհային սոցիալիստական սիստեմին, Պեկինը առաջադրեց «աշխարհը երեք աշխարհի բաժանելու» տխրահռչակ «տեսությունը»։ Պեկինյան գործիչները հայտարարեցին՝ սոցիալիստական լագեր «այլևս գոյություն չունի, բացի այդ, պատմական պայմանները չեն թելադրում կրկին սոցիալիստական լագեր կազմավորելու անհրաժեշտությունը»։

Դեռ 60-ական թվականների կեսերին համոզվելով, որ Պեկինին չի հաջողվի իր ազդեցությանը ենթարկել միջազգային կոմունիստական շարժման որևէ չափով խոշոր ջոկատներ, մաոականներն սկզբում կուրս վերցրին քայքայել մարքս-լենինյան կուսակցությունները և զանազան ռենեգատների ու ծախու ավանտյուրիստների՝ իրենց իսկ կազմավորած խմբավորումներից ու ֆրակցիաներից ստեղծել «պեկինյան ինտերնացիոնալ»։ Բայց իր ամբողջությամբ այդ «փունջը» այնքան անվայելուչ և տհաճ դուրս եկավ, որ նույնիսկ պեկինյան մաոականները բարվոք համարեցին այդ խառնամբոխի կազմակերպական ձևավորումը հետաձգել մինչև «լավագույն ժամանակները»։

Իսկ ինչ վերաբերում է մարքս-լենինյան կուսակցությունների հետ ունեցած հարաբերություններին, ապա դրանց մեծ մասը հայտարարվեց «ռեվիզիոնիստական» և խզվեցին նրանց հետ ունեցած բոլոր տեսակի կապերը։ Իսկ հետո կոմունիստական շարժման մեջ իրենց պլանների ձախողման համար Մաո Ցզեդունը կատաղությունը թափեց սեփական կուսակցության և նրա ղեկավար ակտիվի գլխին։ Չինաստանի կոմկուսը փաստորեն կազմալուծվեց, իսկ ավելի քան հինգ միլիոն կոմունիստներ «կուլտուրական հեղափոխության» ժամանակաշրջանում ենթարկվեցին ռեպրեսիայի, ցրվեցին ՉԿԿ Կենտկոմը և նրա բաժինները, վերացվեցին բոլոր կուսկոմները՝ սկսած պրովինցիալից մինչև ստորին կուսբջիջները։

Գրչի մի հարվածով «վերացնելով» սոցիալիստական սիստեմը, սոցիալիստական համագործակցությունը հայտարարելով «Սովետական Միության գաղութ», միջազգային կոմունիստական շարժումը կնքելով որպես «սև բանդա», մաոականները, սակայն, չհամարձակվեցին ասել, թե սոցիալիստական երկրներն առհասարակ դադարել են գոյություն ունենալուց։

Հանդես գալով ՉԿԿ XI համագումարում և ժողովրդական ներկայացուցիչների համաչինական ժողովի վերջերս կայացած նստաշրջանում, Խուա Գո-ֆենը հայտարարեց, որ չինական ղեկավարությունը մտադիր է «ամրապնդել համա-



խմբվածությունը սոցիալիստական երկրների հետ», բայց թե ինչ չափանիշներով է առաջնորդվում Պեկինը՝ մերթ «շնորհելով», «մերթ «խլելով» սոցիալիստական երկրի անունը, կարելի է լոկ կռահել։ Օրինակ, 1963 թվականի սեպտեմբերի 26-ին «Ժենմին ժիբաո»-ն հրապարակեց մի կեղտոտ հոդված, այն վերնագրելով «Արդյո՞ք Հարավսլավիան սոցիալիստական երկիր է»։ Այժմ, կատարելով հերթական շրջադարձը, Պեկինում համաձայնել են այն բանին, որ Հարավսլավիան սոցիալիստական երկիր է։

Բոլոր այն ճամարտակությունները, թե «Հարավսլավիայում վերականգնվել է կապիտալիզմը», «համաժողովրդական սեփականության վրա հիմնված սոցիալիստական էկոնոմիկան վերաճել է կապիտալիստականի», «պրոլետարիատի դիկտատուրան վերաճել է բուրժուական դիկտատուրայի», «ֆաշիստական տիպի դիկտատուրայի» և ՀՍՖՀ-ի մասին «տեսության» մակարդակի բարձրացված զրպարտչական այլ հերյուրանքներ գրչի մի հարվածով «վերացվեցին» և վերագրվեցին Սովետական Միությանը։ Այժմ Պեկինից իր որակավորմանն է սպասում Ալբանիան, որը դուրս է նետվել Եվրոպայում մաոական քաղաքականության «ամրակետի» շարքերից։

Ծգնելով անիրազեկ մարդկանց շշմեցնել իրենց «սկզբունքայնությամբ», «հեղափոխականությամբ», պեկինյան լիդերները, մոռանալով, որ իսկական դատը վճռում է ժամանակը, եղբայրական կուսակցություններին մեղադրում էին «ռևիզիոնիզմի» մեջ, «իմպերիալիզմի հանդեպ վախկոտության» մեջ։ Բայց պատմությանը խաբել չես կարող։ Այն ամենը, ինչ Մաոն և նրա օգնականները կեղծիքով ու զրպարտանքով վերագրում էին ՍՄԿԿ-ին, մարքս-լենինյան մյուս կուսակցություններին, ժամանակը վերահասցեագրեց հենց Մաո Ցզե-դունին ու նրա հետևորդներին։

Հանդես գալով ՍՄԿԿ XXV համագումարի ամբիոնից, ԱՄՆ-ի կոմկուսի գլխավոր քարտուղար Հես Հոլը ասաց. «Մաոիզմը կլասիկ օրինակն է այն բանի, թե ուր կարող է տանել օպորտունիզմի արահետը, եթե հակահարված չտան դրան։ Հակահեղափոխությունը գտնվում է օպորտունիզմի պղտոր ճահճի հատակին։ Եվ մաոիզմը հասել է այդ հատակին»։

III

Իմպերիալիզմի նկատմամբ մաոականների դիրքն անխզելիորեն կապված է պատերազմի և խաղաղության պրոբլեմի հետ, համաշխարհային պատերազմ հրահրելու նրանց քաղաքականության հետ։ Հիսունական թվականների վերջերին այն հարցին «հարկավո՞ր է, թե հարկավոր չէ պայքարել իմպերիալիզմի դեմ», չինական ղեկավարությունը պատասխանում էր ամենակտրուկ ձևով. «Այո՛, հարկավոր է»։ Ընդ որում, Պեկինը, ինչպես ասում են Չինաստանում, կոչնազանգ ու թմբուկ էր զարկում, կոչ անելով ամեն գնով «անհապաղ ոչնչացնել» իմպերիալիզմը։

Կանխազգալով, որ Սովետական Միությունը, ՍՄԿԿ-ն և խաղաղասիրական մյուս երկրներն ու եղբայրական կուսակցություններն այդպիսի կոչերը կհամարեն ավանտյուրիզմ, համաշխարհային պատերազմի հրահրում, չինական ղեկավարները, մի կողմից, սկսեցին զրպարտել ՍՍՀՄ-ին և ՍՄԿԿ-ին, նրանց մեղադրելով «կապիտուլյանտական», «ամերիկյան իմպերիալիզմից վախենալու», «ագրեսորներին հաշտեցնելու փորձերի» մեջ, իսկ մյուս կողմից ԱՄՆ-ը հայտարարեցին որպես «թղթե վագր, որին հրիր, և նա փուլ կգա»։ Մաոականները պնդում էին, թե «պատերազմներից չպետք է վախենալ»։ Նրանք նույնիսկ զբաղվեցին հաշվումներով, թե ինչքան զոհեր կլինեն համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի ծագման դեպքում։ 1957 թվականին հանդես գալով սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների մոսկովյան խորհրդակցությունում, Մաոն հայտարարեց.

«Կարելի՞ է, արդյոք, ենթադրել, թե մարդկային ինչքան զոհ կխլի ապագա պատերազմը։ Հավանաբար, դա կլինի ամբողջ աշխարհի 2.700 միլիոն բնակչության մեկ երրորդական մասը, այսինքն՝ սոսկ 900 միլիոն մարդ։ Ես կարծում եմ, դա դեռ քիչ է... եթե մարդկության կեսը ոչնչանա,— շարունակում էր

տրահեղափոխական ֆրազների և լոզունգների քողի տակ ՉԿԿ-ի մաոական ղեկավարությունն այժմ կատաղի գրոհի է ելել համաշխարհային սոցիալիզմի նվաճումների դեմ, գլխավոր կրակը կենտրոնացնելով ոչ թե իմպերիալիստների, այլ գերազանցապես ՍՄԿԿ-ի դեմ, մարքս-լենինյան մյուս կուսակցությունների դեմ»։

Այն ժամանակ էլ մեր կուսակցությունը կոչ արեց իմպերիալիզմի դեմ բոլոր մարտնչողներին՝ բարձրացնել զգոնությունը մաոականների մեքենայությունների նկատմամբ։ «Այնպես չստացվի, որ, ընթանալով իր ոչ ճիշտ, հակալենինյան ուղիով, չինական ղեկավարները փաստորեն միանան իմպերիալիզմի ռեակցիոն, մարտնչող տարրերի հետ»։ Այս նախազգուշացումը ժամանակին էր։

Պեկինի դավաճանական և դրդիչ քաղաքականությունը 1962 թվականի Կարիբյան ճգնաժամի ժամանակ, ամերիկյան իմպերիալիզմի հետ անպատկառ սակարկումը վիետնամական ժողովրդի արյամբ, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ միասնական գործողություններից մաոականների հրաժարումը Վիետնամում ամերիկյան ագրեսիայի դեմ մղվող պայքարում, քայքայիչ աշխատանքի ուժեղացումն ընդդեմ ՍՍՀՄ-ի, ընդհուպ մինչև զինված պրովոկացիաների կազմակերպումը սահմանի վրա, համերաշխությունը Ասիայի և Աֆրիկայի երկրների ամենառեակցիոն վարչակարգերի հետ,— այս ամենը ակնբախորեն ցույց տվեցին, թե մաոականներն ինչպես են թեք հարթությամբ գլորվում դավաճանության ճահիճը։

Հենց այն ժամանակ էլ եղբայրական կուսակցությունները 1969 թվականին Մոսկվայում կայացած կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում սկզբունքային գնահատական տվեցին այդ քաղաքականությանը։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը, հանդես գալով խորհրդակցությունում, խորը և բազմակողմանիորեն վերլուծեց Չինաստանի իրադարձությունների դասակարգային բովանդակությունը, պեկինյան քաղաքականության էվոլյուցիան, ցույց տվեց նրա հակալենինյան, շովինիստական բնույթը, բացահայտեց իմպերիալիզմի տակտիկան՝ Չինաստանը սոցիալիզմի և ազգային ազատագրության ուժերի դեմ պայքարում օգտագործելու առումով, շեշտեց ընդհանուր խաղաղության համար այն վտանգը, որ իր մեջ թաքցնում է Չինաստանը ռազմականացնելու՝ մաոականների կուրսը։ «Չինական լիդերների քաղաքական ավանտյուրիզմի և նրանց կողմից մշտապես շիկացվող պատերազմական հիստերիայի մթնոլորտի միացումը նոր տարրեր է մտցնում միջազգային իրադրության մեջ, որոնք մենք իրավունք չունենք հաշվի չառնել»,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարն այնուհետև նշեց, որ «իմպերիալիստները Պեկինի այժմյան արտաքին քաղաքական կողմնորոշումը օգտագործում են որպես ևս մի հաղթաթուղթ համաշխարհային սոցիալիզմի և ազատագրական շարժման դեմ մղվող քաղաքական պայքարում»։

ԱՄՆ-ի և Չինաստանի միջև տարիներ շարունակվող սակարկումը, չնայած այժմ էլ շարունակվում է այն, 1971—1972 թվականներին հանգեցրեց լուրջ պայմանավորվածությունների, որոնք կտրուկ շրջադարձ մտցրեցին Պեկինի քաղաքականության մեջ և հանգան հակաիմպերիալիստական պայքարից հրաժարումին։ Սա էլ սկիզբ դրեց այն բանին, որ ԱՄՆ-ը պաշտոնապես ճանաչեց Չինաստանը։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Նիքսոնի ՉԺՀ կատարած այցը (1972 թվականի փետրվարին) արտաքնապես ավարտվեց Շանհայի կոմյունիկեի ստորագրմամբ։ Բայց գլխավորը «ընդհանուր շահերի» վերաբերյալ սկզբունքային պայմանավորվածություններն էին, որոնք և հիմք ծառայեցին խաղաղության գործի, ազգային ազատագրության և սոցիալիզմի դեմ չին-ամերիկյան համաձայնության համար։ Այսպիսով, Պեկինի խոսքով «հակաիմպերիալիզմը» վերածվեց սկզբունքների առք ու վաճառքի, չինական և համաշխարհային հեղափոխության իդեալների դավաճանության։

Ազգային անվտանգության հարցերի գծով ԱՄՆ-ի պրեզիդենտի օգնական Զ. Բժեզինսկու՝ 1978 թվականի մայիսին Պեկին կատարած այցն առավել բնորոշ է այն տեսակետից, թե որքան հեռուն են գնացել մաոականները իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների հետ՝ ընդհանուր խաղաղության համար վտանգավոր իրենց համաձայնությամբ։ Ուղևորությունը կատարվում էր այնպիսի իրադրության պայմաններում, երբ զինաթափման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման, ազգային ազատագրության համար ժողովուրդների մղած պայքարն ընդունել էր արտասովոր թափ։ ԱՄՆ-ի և կապիտալիստական այլ երկրների իմպերիալիզմը տենդագին ուղիներ է փնտրում՝ թուլացնելու խաղաղասիրական ուժերի գործադրած ճնշումը։ Որպես այդպիսի միջոց նրանք ձգտում են օգտագործել «սովետական սպառնալիքի» վերաբերյալ հերյուրանքները։ Եվ այստեղ էլ պեկինյան հակասովետական տարրերը հակակոմունիստների անփոխարինելի օգնականներն ու խորհրդատուներն են։

Պատահական չէ, որ Բժեզինսկին, մինչև վերջ լսելով Խուա Գո-ֆենի ճամարտակությունները «սովետական սպառնալիքի», համաշխարհային պատերազմի անխուսափելիության մասին, նրա հարձակումները լարվածության թուլացման քաղաքականության վրա և ստրատեգիական սպառազինության կրճատման վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի բանակցությունների վրա, հիացավ և Խուա Գո-ֆենի այդ հայեցակետն անվանեց «փայլուն վերլուծություն»։ Իրենց հերթին, չինական ղեկավարները, լսելով ամերիկյան ադմինիստրացիայի հաշվետվությունը Ասիայում Վաշինգտոնի մտադրությունների և պլանների մասին, սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու վերաբերյալ ԱՄՆ-ի ձեռնարկած միջոցառումների և ՆԱՏՕ-ի երկարատև պլանների մասին, հանգեցին այն եզրակացության, որ «իրոք, արդի միջազգային իրադրության որոշ հարցերի վերաբերյալ ընդհանուր կամ մոտ բան կա երկու երկրների հայացքներում»։

Պեկինում ունեցած զրույցներից հետո Բժեզինսկին հայտարարեց, որ Մաո Ցզե-դունի ժառանգորդների մոտ իր ուղևորության նպատակն է «շեշտել Չինաստանի հետ Միացյալ Նահանգների հարաբերությունների երկարաժամկետ, ստրատեգիական բնույթը»։ Ըստ նրա արտահայտության, այդ հարաբերությունները «հիմնվում են գլխավոր հետաքրքրությունների որոշակի զուգադիպման վրա և արտահայտում փոխադարձ ըմբռնումն այն բանի, որ այդ հետաքրքրությունները հաստատուն են»։

Ելույթ ունենալով Բժեզինսկու պատվին կազմակերպված ընդունելության ժամանակ, Չինաստանի արտաքին գործերի մինիստր Խուան Խուան ոչ մի խոսք չասաց Ասիայում և Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների մասին, բայց, դրա փոխարեն, ընդարձակ դատողություններ արեց Սովետական Միության քաղաքականության մասին՝ զրպարտություն բարդելով նրան և աշխատելով ՍՍՀՄ-ը պատկերել որպես մեր մոլորակի տարբեր շրջաններում կատարվող անկարգությունների մեղավոր։ Խուա Խուան ԱՄՆ-ին կոչ արեց «վարել ակն ընդական քաղաքականություն» և, միանալով Չինաստանի հետ, «խափանել հեգեմոնիստների ստրատեգիական պլանները»։

Ամերիկյան և արևմտյան այլ երկրների մամուլում հրապարակված ինֆորմացիայից հետևում է, որ ԱՄՆ-ի առավել ագրեսիվ շրջանների և պատերազմի պեկինյան հրձիգների համաձայնությունն ավելի ու ավելի հստակորեն արտահայտված ձևեր է ընդունում։ Խոսքը ոչ միայն լարվածության թուլացումը և սոցիալիստական սիստեմի ազդեցության աճի դիմադրությունն ուժեղացնելու, ազգային-ազատագրական շարժման ձախողման նպատակին ուղղված քաղաքականությունը համաձայնեցնելու ու կոորդինացնելու մասին է, այլև, մի կողմից իմպերիալիզմի և, մյուս կողմից, Պեկինի վելիկոխանական հեգեմոնիստների միջև ազդեցության ոլորտների նոր բաժանման մասին։ Ամերիկյան որոշ թերթեր չէին բացառում, որ Բժեզինսկին և պեկինյան լիդերները խոսել են նաև հեռանկարում Վաշինգտոն—Պեկին—Տոկիո քաղաքական առանցքի ստեղծման հնարավորության մասին։

Հատկանշական է, որ Վիետնամում ամերիկյան ագրեսիայի մոլի կողմնակից Բժեզինսկու (նա նույնիսկ հանդես էր գալիս Վիետնամի ժողովրդի դեմ միջուկային զենք կիրառելու օգտին) հենց Պեկին այցելելու ժամանակաշրջա-

նում էր, որ մաոականներն ուժեղացրին լարվածության շիկացումը հերոսական Վիետնամի հետ ունեցած հարաբերություններում:

Մաոականներն իրենց դավաճանությամբ այնքան հեռուն էին գնացել, որ Վաշինգտոնցի հյուրին հորդորում էին «հաստատակամություն» դրսևորել ոչ միայն ՍՍՀՄ-ի, այլև Վիետնամի և Կուբայի նկատմամբ: Պեկինը հասկացրեց, որ ԱՄՆ-ի դիվանագիտական հարաբերությունների հաստատումը ՎՍՀ-ի և Կուբայի հետ ինքը գնահատում է որպես «ոչ բարեկամական քայլ Չինաստանի նկատմամբ»:

Ամերիկյան թերթերի հաղորդմամբ, Բժեզինսկին Խուա Գո-ֆենի և Դեն Սյաո-պինի հետ ունեցած զրույցներում համաձայնության են եկել միմյանց «փոխօգնելու» այն շրջաններում, որտեղ կողմերից յուրաքանչյուրն ունի առավել ազդեցություն: Ամերիկյան ներկայացուցիչը խոստացավ ՆԱՏՕ-ի երկրներին դրդել ավելի ակտիվորեն պաշտպանելու Չինաստանի ջանքերը բանակի վերազինման և երկրի էկոնոմիկայի մոդեռնացման գործում: Իր հերթին նա Չինաստանին խնդրեց աջակցել ամերիկյան ազդեցության ուժեղացմանը արաբական այն երկրներում, որոնց հետ Պեկինը լավ հարաբերությունների մեջ է, իսկ ԱՄՆ-ը այդպիսիք չունի:

Գնահատական տալով Պեկինի դիրքավորմանը, Վիետնամի կենտրոնական թերթերից մեկը գրել է. «Չինաստանը ամենուրեք զենք է հայթայթում, համաձայնության գալիս ամերիկյան իմպերիալիզմի և արևմտյան երկրների հետ: Չինաստանը հանդես է գալիս սոցիալիզմի դեմ, ազգային-ազատագրական շարժման դեմ, խաղաղության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի դեմ»:

Չինական ղեկավարության վերջին բոլոր գործողությունները, հակասովետական ալյանսի մեջ տարբեր երկրներ ներքաշելու փորձերը վկայում են այն մասին, որ Պեկինի լիդերները ձգտում են ամեն գնով ընդհանուր լեզու գտնել իմպերիալիստական շրջանների հետ, զոհաբերելով նույնիսկ ազգային շահերը:

ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Անգլիայի և ՆԱՏՕ-ի մի քանի այլ երկրների որոշակի շրջանների պատրաստակամությունը՝ նոր տեխնիկայի և զենքի մատակարարմամբ օգնելու Չինաստանին երկիրը ռազմականացնելու գործում, չի կարելի գնահատել ոչ այլ կերպ, քան որպես խոշոր պրովոկացիա խաղաղության ու լարվածության թուլացման դեմ, որպես կարճատես պոլիտիկանություն: Այդ գործողություններն իրենց մեջ մեծ վտանգ են թաքցնում ընդհանուր խաղաղության համար: Նույնիսկ ԱՄՆ-ում առավել զգաստ մտածող քաղաքագետները հասկանում են ամերիկյան ադմինիստրացիայի մտադրությունների անխոհեմությունն ու կարճատեսությունը Չինաստանին օգնելու գործում, որը, ըստ էության, աշխարհի միակ խոշոր տերությունն է, որ բացահայտորեն հարց է դնում «համաշխարհային նոր կարգ» հաստատելու մասին՝ ներառյալ աշխարհի քարտեզի տերիտորիալ վերաձևումը պատերազմի միջոցով, մի երկիր, որը հրապարակայնորեն պրոպագանդում է համաշխարհային պատերազմ և ամեն ինչ անում, որպեսզի ձախողի միջազգային լարվածության թուլացման պրոցեսը: Իրոք միջազգային լարվածության նոր օջախների ստեղծման նկատառումներով է թելադրված Խուա Գո-ֆենի ճամփորդությունը Ռումինիա, Հարավսլավիա, Իրան: Լարվածության թուլացման դեմ պայքարի, ամեն տեսակի հակասովետական առանցքների ստեղծման, Չինաստանը ռազմականացնելու համար զենքի աղբյուրներ որոնելու նպատակներին ևս համապատասխանում են պեկինյան գործիչների բազմաթիվ ուղևորությունները Արևմուտքի երկրներում:

Պեկինի հաշիվները հիմնվում են այն բանի վրա, որ օգտագործվեն ամերիկյան կառավարող շրջանների հակակոմունիզմը, ինչպես նաև ԱՄՆ-ի ռազմարդյունաբերական կոմպլեքսի շահագրգռվածությունը սպառազինության մրցավազքի հարցում՝ դիմադրելու համար սոցիալիստական պետությունների քաղաքականությանը, որն ուղղված է միջազգային լարվածության թուլացման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման նպատակին: Պեկինը հույս ունի հենվել ԱՄՆ-ի, Ֆրանսիայի և ՆԱՏՕ-ի մի քանի այլ երկրների, ինչպես նաև Ճապոնիայի վրա՝ նոր տեխնիկա ստանալու համար, որպեսզի արագացնի երկրի



էկոնոմիկայի մոդեռնացման տեմպերը, նյութատեխնիկական բազան ի սպաս դնի մեծապետական հեգեմոնիստական քաղաքականությանը: Եվ երբ ձեռք բերվի այս ամենը, Պեկինը մտադիր է այլ կերպ խոսել իր հովանավորների հետ:

Չինաստանի, ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի երկրների մարտնչող շրջանների ռազմաքաղաքական մերձեցման խորացումը չի կարող չզգաստացնել խաղաղասիրական ուժերին: Այս կապակցությամբ չի կարելի անցնել նաև ճապոնա-չինական պայմանագրի կնքման կողքով: Պայմանագրի ստորագրումը Պեկինի առաջարկած պայմաններով և այնպիսի իրադրության մեջ, երբ Չինաստանը թե՛ բուն Ճապոնիայի, թե՛ հարևան մյուս պետությունների նկատմամբ իր գործողություններով ցուցադրում է սեփական մեծապետական շովինիզմը, անտեսում միջազգային իրավունքի նորմերը, իր ներսում պոտենցիալ լուրջ վտանգ է թաքցնում՝ Ճապոնիան ընդգրկելու Պեկինի հեգեմոնիստական քաղաքականության մեջ, պետությունների սուվերենության ու տերիտորիալ ամբողջության դեմ նրա պրովոկացիաների մեջ: Այս ամենը կարող է խանգարել լարվածության թուլացման պրոցեսին և շիկացնել միջազգային լարվածությունը:

* * *

Եթե հանրագումարի բերենք Մաոյի կուրսի արտաքին քաղաքական ասպեկտները, ինչո՞ւմ է արտահայտվել Պեկինի քաղաքական շրջադարձը:

Եթե դեռ երեկ մաոականները ԱՄՆ-ը երեսպաշտորեն անվանում էին «ժողովուրդների գլխավոր թշնամի», «ագրեսոր և համաշխարհային պատերազմի աղբյուր», ապա այսօր նրանք ԱՄՆ-ը դիտում են որպես իրենց դաշնակիցը խաղաղության և միջազգային անվտանգության համար հանդես եկող գլխավոր ուժի՝ Սովետական Միության ու սոցիալիստական համագործակցության դեմ մղվող պայքարում:

Երբ 1963 թվականին ՉԿԿ Կենտկոմի և ՍՄԿԿ Կենտկոմի պատվիրակությունների հանդիպման ժամանակ Դեն Սյաո-պինը պնդում էր, թե «ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ էությունը երբեք չի փոխվի», «իմպերիալիստներին ոչ մի հարցում հավատալ չի կարելի՝ նրանք անպայման կխաբեն», ապա այսօր այդ նույն Դեն Սյաո-պինը և չինական մյուս ղեկավարները մոռացել են իրենց խոսքերը, ենթադրելով, որ իմպերիալիզմը «վերածվել է Բուդդայի», և Սովետական Միությունը հայտարարում են որպես «ժողովուրդների գլխավոր թշնամի», կոչ են անում նրա դեմ ստեղծել «ամենալայն միասնական ճակատ», որն իր մեջ ընդգրկի աշխարհի բոլոր երկրներին, այդ թվում և ԱՄՆ-ին:

Եթե դեռ երեկ նրանք նշավակում էին ՆԱՏՕ-ն և իմպերիալիստական մյուս ռազմական բլոկները, ապա այսօր հենց իրենք պատրաստ են դառնալ իմպերիալիստական բոլոր ագրեսիվ բլոկների «արտահաստիքային» անդամը, «կատարել Արևելքի ՆԱՏՕ-ի դեր»:

Դեռ երեկ Պեկինը որոտաձայն գոռում էր. «Ամերիկյան իմպերիալիզմ, կորի՛ր Ասիայից, կորի՛ր Եվրոպայից, կորի՛ր Լատինական Ամերիկայից, կորի՛ր Աֆրիկայից», իսկ այսօր, ընդհակառակն, մաոականները ԱՄՆ-ին հորդորում են մնալ և հիմնավորվել ամենուրեք, որտեղ միայն նրանք ցանկանում են:

Դեռ երեկ մաոականները ճապոնական միլիտարիզմի դեմ պայքարն անվանում էին «իսկական հեղափոխականության չափանիշ», իսկ այսօր Պեկինը, մոռանալով ճապոնական ռազմամոլության ագրեսիայի պատմությունը, հրավիրում է իր մոտ և որպես լավագույն բարեկամներ ու եղբայրներ է ընդունում ճապոնական նախկին գեներալներին ու ծովակալներին, որոնք 30—40-ական թվականներին Չինաստանում վարում էին «երեք իսպառի» քաղաքականություն (այսինքն՝ իսպառ այրել ու ոչնչացնել մարդկանց, բնակարանները, վարելահողերը), Ճապոնիային մղում է վերազինման և ձգտում է նրան ներքաշել չին-ճապոնական հակասովետական ալյանսի մեջ:

Դեռ երեկ Պեկինը կոչ էր անում «հաշվի չառնելով ազգային ոչ մի զոհ», օգնություն և աջակցություն ցույց տալ բանվոր դասակարգի հեղափոխական շարժմանը, ազգային-ազատագրական շարժմանը, իսկ այսօր հանդես է գալիս

որպես բոլոր ռեակցիոներների դաշնակից, որտեղ էլ որ նրանք հայտնվեն և հայտնեն իրենց մտադրությունը՝ «պայքարել Մոսկվայի բանսարկությունների դեմ», սոցիալիզմի և խաղաղության ուժերի դեմ։

Դեռ երեկ Պեկինը, ձգտելով ռազմական կոնֆլիկտի մղել ՍՍՀՄ-ին և ԱՄՆ-ին, ճգնում էր Սովետական Միությանը մեղադրել Կուբային, Վիետնամին «անբավարար» օգնելու մեջ, իսկ այսօր իմպերիալիստների հետ համատեղ մասնակցում է ոչ միայն Սովետական Միության, այլև Կուբայի, Վիետնամի և սոցիալիստական մյուս երկրների դեմ կազմակերպվող քայքայիչ աշխատանքին՝ կամփուչիական ղեկավարությանը ներքաշելով սոցիալիստական Վիետնամի դեմ նյութվող զինված պրովոկացիայի մեջ։ Ասենք, Պեկինը ինքը ևս որոշել է «ետ չմնալ» և ռազմական, քաղաքական, տնտեսական ճնշման ու շանտաժի միջոցների է դիմում, որպեսզի ձախողի կամ առնվազն արգելակի սոցիալիստական շինարարությունը Վիետնամում, խախտի նրա միջազգային հեղինակությունը։

Սովետական Միությունը, իր ինտերնացիոնալ պարտքին հավատարիմ, այս անգամ ևս ցուցադրեց իր համերաշխությունը Վիետնամի հերոսական ժողովրդի հետ։ Ընկեր Լ. Ի. Բրեժնևը, արտահայտելով մեր կուսակցության սկզբունքային կուրսը, հայտարարեց. «Այսօր, երբ Վիետնամի ժողովուրդն ստիպված է իր վրա զգալ դրսի կոպիտ և անարդարացի ճնշումը, մենք կրկին հավաստացնում ենք եղբայրական Վիետնամին, որ վճռական աջակցություն ցույց կտանք նրանց... Մենք եղել ենք, կանք և կլինենք Վիետնամի հետ։ Մեր ընդհանուր գործը՝ կայուն խաղաղության, ժողովուրդների անվտանգության և սոցիալական առաջադիմության գործը, համապատասխանում է աշխարհի միլիարդավոր մարդկանց կենսական շահերին»։

Այս ամենն ավելի քան համոզիչ կերպով ցույց է տալիս, որ մաոիզմը վերածվել է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի թշնամու, որ մաոականների քաղաքականությունը սպառնում է բոլոր ժողովուրդների անվտանգությանը։ Այսպիսի եզրակացություն արվեց ՍՄԿԿ XXV համագումարում։ Չինաստանի ներկայիս ղեկավարների քաղաքականությունը «բացահայտորեն ուղղված է սոցիալիստական պետությունների մեծամասնության դեմ։ Ավելին, այն ուղղակի շաղկապվում է ամբողջ աշխարհի ամենածայրահեղ ռեակցիայի դիրքավորման հետ...»։

Խաղաղասիրական բոլոր ժողովուրդների համար մեծ վտանգ են ներկայացնում Պեկինի՝ լարվածության թուլացումը ձախողելու, զինաթափման գործին խանգարելու, պետությունների միջև անվստահություն և թշնամանք սերմանելու անդադար փորձերը համաշխարհային պատերազմ հրահրելու և դրա վրա սեփական ձեռքերը տաքացնելու նրա ձգտումը։ Պեկինի այդպիսի քաղաքականությունը խիստ հակասում է բոլոր ժողովուրդների շահերին։

Սովետական Միությունը, ՍՄԿԿ-ն սոցիալիստական համագործակցության երկրների, բոլոր խաղաղասեր պետությունների հետ միասին հակազդում են մաոականների հրձիգային քաղաքականությանը, մերկացնում Պեկինի և հակակոմունիստների շրջանում զանազան տիպի «առանցքների» այլ սիրահարների փորձերը՝ ձախողելու լարվածության թուլացումը, մարդկությանը մղելու դեպի համաշխարհային պատերազմ։

Մարքս-լենինյան կուսակցությունների այս սկզբունքային դիրքն իր ակնառու արտացոլումը գտավ Ղրիմում եղբայրական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի բանակցությունների ժամանակ։ Այնտեղ շեշտվում էր, որ Պեկինի արտաքին քաղաքական կուրսը, «որը բացահայտորեն հույսը դնում է լարվածության սրման վրա», միախառնվում է ՆԱՏՕ-ի ուժերի գործողություններին, «որոնք ուղղված են սպառազինությունների մրցավազքի ուժեղացման, միջազգային լարվածության շիկացման նպատակին»։ Միաժամանակ Սովետական Միությունը բազմիցս հաստատել է իր պատրաստակամությունը՝ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա նորմալացնելու միջպետական հարաբերությունները Չինական Հանրապետության հետ։

«Партийная жизнь», № 17.

---



# ՔԱՂԱՔԸ ՍԻՐՈՒՄ Է ԻՐ ԴԵՌԱՀԱՍՆԵՐԻՆ

ԱԴԱ ԲԱՍԿԻՆԱ

**ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ** քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար Լևոն Հարությունյանն ինձ առաջնորդեց դպրոցականների՝ ոնկեյի թիմի մի խումբ տղաների մոտ. փնտրեց, գտավ աշխույժ աչքերով մի ամրակազմ տղայի ու ներկայացրեց՝ «Լավագույն հարձակվողն է», ապա դառնալով նրան՝ հարցրեց. «Ծա՞տ եք տուգանել»:

— Մի անգամ. ես ընկա, ասացի՝ սատանան տանի, իսկ դատավորը լսեց ու պատժեց,— պատասխանեց ռմբարկուն այն հնազանդ տղայի նման, որ շատ է ցանկանում դուր գալ ուսուցչուհուն:

— Ինչպիսի՞ տպավորություն ստացաք,— հարցրեց ինձ Հարությունյանը, երբ փոքր-ինչ հեռացել էինք:

Ասացի, թե իմ կարծիքով լավ տղա է, միայն թե շատ է օրինակելի, կամ ջանում է այդպիսին երևալ:

— Ջգտում է այդպիսին լինել,— ուղղեց ինձ քարտուղարը:— Մի քանի տարի շարունակ նա կատարյալ չարիք էր իր ուսուցիչների, ծնողների, հարևանների համար: Իսկ հետո նրան հրապուրեցինք ու տարանք ոնկեյի թիմը: Եվ այստեղ այնպիսի ընդունակություն դրսևորեց նա, որ ոչ ոք չէր սպասում:

Հասարակական ներգործությամբ այդ դժվար դաստիարակվող դեռահասին օրինակելի տղա դարձնելու այս պատմությունը կարող էր գրքային, քաղցր-մեղցր թվալ, եթե չլիներ երկու հանգամանք: Նախ՝ մի բան է նման կերպարանափոխության մասին կարդալը, այլ բան՝ աչքիդ առաջ տեսնել մարդկային հնարավորությունների համակողմանի, կենդանի մարմնացում: Այդպիսի հայտնագործությունը տպավորություն է գործում, անկախ քո կրթվածությունից: Այս պատմությունը պատահականություն չէ լենինականյան կյանքում: Այդ լավ մտածված, ամբողջական սիստեմի փոքրիկ մի օղակն է և որքան կուռ է կազմակերպված, նույնքան ոչ ձևական է, զգայուն: Առանց վերապահության կարող եմ ասել, որ այդ սիստեմ է ողջ Լենինական քաղաքի և ոչ թե նրա կյանքի մի առանձին ոլորտի համար: Իսկ այդ սիստեմը ղեկավարում է քաղաքային կոմերիտմիությունը:

Սկսվեց այսպես. երեկոները, արագ ավարտելով դպրոցական ու տնային գործերը, պատանի լենինականցիները խմբերով հավաքվում էին և թափառում բակերում ու փողոցներում, բարձրանում ձեղնահարկերը, թրև գալիս... Մի խոսքով, կրկնում այն ամենը, ինչ մյուս քաղաքների նրանց հասակակիցները:

Իհարկե, դպրոցում նրանք կողք-կողքի նստում էին այն դեռահասների հետ, ովքեր երեկոյան, այդ նույն ժամերին, շտապում էին հենց նույն փողոցներով, միայն թե նոտաների պայուսակը, նկարակալը, կամ էլ ցելոֆանե տոպրակներով մաշիկները ձեռքերին: Առաջինները երկրորդներից տարբերվում են տեական ու բարդ մի զգացումով, որի մեջ արհամարհանքը սերտորեն միաձուլված է նախանձի, իսկ գերազանցության զգացումը՝ լիովին չգիտակցված թերարժեքության հետ:

Այս բազմատարր զգացումը, զուգորդված անցման տարիքի անհավասարակշռությամբ, ստեղծում է բռնկվող, «պայթուցիկ» խառնվածք... Մի քանի տարի առաջ, քաղաքում, հանցագործների թվում կային և դեռահասներ: Դաստիարակության ասպարեզում շոշափելի հաջողություններ ունեցող նման քաղաքում, ցավոք, դեռևս կան պարապ թրևողներ, ոչնչի չձգտողներ, ոչնչով չզբաղվողներ: Ինչո՞ւ: «Որովհետև նրանց ոչինչ չի հետաքրքրում»— դառնորեն ախտորոշում են ծնողները, ուսուցիչները, պատահական անցորդները: Բայց

արդյո՞ք այդպես է: Մի՞թե չի կարելի ստուգել: Եվ ստուգեցին: Ծավալվեց անազին մի աշխատանք, որի մասին դժվար է պատմել մի քանի էջում: Հաշվառվեցին այն դեռահասները, որոնք դպրոցական ժամերից դուրս զբաղվում էին պիոներական տներում կամ երաժշտական դպրոցներում, սպորտհրապարակներում կամ գյուտարարական ստուդիաներում: Վերլուծվեց ազատ ժամանակն այն երեխաների, որոնք ընդգրկված չէին ոչ մի խմբակում, բայց տանը զբաղվում էին երաժշտությամբ կամ նկարչությամբ, կամ հանույքով մասնակցում տնային գործերին, խնամում փոքրիկներին, կարում, գործում, որևէ բան պատրաստում: Ապա խիստ հաշվառվեցին մնացածները:

Թող ընթերցողներին չշփոթեցնի «խիստ» բառը. այն, ինչպես ասացի, վերաբերում է միայն կազմակերպական կողմին, սիստեմի ճշգրտությանը, և բնավ ոչ այն միջոցներին, որոնք հետագայում ձեռնարկվեցին, իսկ այդ միջոցառումները չափազանց պարզ էին: Չզբաղվածներին հարցնում էին՝ ինչո՞վ կուզեիք զբաղվել: Եվ միայն այդքան: Իհարկե, այս «միայնը» քիչ ջանքեր չպահանջեց. ուսուցիչները, պիոներ-ջոկատավարները, կոմերիտական կազմակերպիչները կատարեցին սոցիոլոգիական շատ աշխատատար ուսումնասիրություն և՝ չափազանց մանրակրկիտ. քառասուն անգամ ստուգվեցին, վերանշտվեցին ցուցակները: Ստեղծվեց քաղաքի դեռահասների հետաքրքրասիրությունների յուրօրինակ քարտեզ, որի վրա առավել մեծ «տարածություն» գրավեց սպորտը, ապա՝ տարբեր տեսակի գեղարվեստական ինքնագործունեությունը— երաժշտությունը, տեխնիկական ստեղծագործությունը, գեղանկարչությունը և շատ այլ բաներ: Ուրախալի և բնական անակնկալ էր, որ շատ սակավաթիվ երեխաներ դժվարացան բացատրել, թե ինչով կցանկանային զբաղվել ժամանցի պահին:

Հեքիաթը շուտ է ասվում... Բայց այստեղ գործն էլ արագ էր արվում: Քաղաքում գտնվող բոլոր մանկական կազմակերպություններն ընդարձակվեցին, կազմակերպվեցին նորերը: Կրկնապատկվեց, եռապատկվեց սպորտային խմբերի թիվը: Հավաքագրվեցին նոր մարզիկներ, դաստիարակներ, խմբավարներ...

Ուրեմն՝ քաղաքի երեխաներն ամենից ավելի գերադասում են սպո՞րտը: Դե՛, ինչ կա որ, եկեք մտածենք օգնել նրանց: Ամռանը գործն ավելի հեշտ է: Պիոներական ճամբարներում, մարզադաշտերում, ուղղակի բակերում գնդակ են խաղում, այստեղ ամեն ինչ պարզ է. ճիշտ է, հետո պարզվեց, որ այս խաղերն էլ այնքան բարեհաջող չեն ընթանում, հարկ էր ստեղծել նոր թիմեր, բարելավել մարզումները:

Իսկ ի՞նչ անել ձմռանը:

Լենինականը գրեթե հարավային քաղաք է: Ձմեռային սպորտի և ոչ մի տեսակ այստեղ ավանդական չէ: Բայց Լենինականը «հայկական Սիբիրն է», ձմռանն այստեղ ցուրտ է, ջրափոսերը սառչում են, և տղաները, թիմերի բաժանվելով, սառույցի վրայով գլորում են պահածոյի տուփերը: Ի՞նչ է հիշեցնում դա: Դե, իհարկե, հոկեյ: Շատ էլ թե մինչև օրս այն ընդունված խաղ չի եղել: Իսկ ընդունվա՞ծ էր միթե այսպես հետաքրքրվել երեխաների ազատ ժամանակով, թափանցել նրանցից յուրաքանչյուրի հակումների, հետաքրքրասիրությունների աշխարհը: Փոխվում է կյանքը, փոխվում են սովորույթները:

Կոմերիտմիության քաղաքային կոմիտեն տեղական թերթում հայտարարություն տվեց. կազմակերպվում են տափօղակով հոկեյի թիմեր: Ընդունվում են բոլոր ցանկացողները, բայց, առաջին հերթին՝ այն «չզբաղվածները», որոնք, մեծերի համոզմամբ, ոչնչով չեն հետաքրքրվում: Քաղաքային գործկոմի սպորտի կոմիտեն սարքավորեց մարզահրապարակները. տեքստիլ կոմբինատը և տրիկոտաժի փաբրիկան օգնեցին խաղացողների համար սպորտային համազգեստ կարելու: Քաղաքի մյուս ձեռնարկությունները ֆինանսապես օգնեցին: Մի խոսքով, երեխաների ժամանցի կազմակերպման դժվարագույն գործում ներգրավվեց ողջ քաղաքը: Եվ, ի դեպ, քաղաքի ո՛չ միայն հիմնական բնակչությունը, ռուս զինվորները ևս հրավիրվեցին՝ կովկասցի տղաներին սովորեցնելու իրենց մանկության սիրելի խաղը:

...ՀԼԿԵՄ քաղաքային կոմիտեում դիտում եմ բյուրեղապակյա գավաթները, ալ-կարմիր հուշադրոշները, դիպլոմները:

Քաղաքի լավագույն թիմերից են 8-րդ բնակկառավարչության «Գյումրի» բակային ֆուտբոլային թիմը, որը 1976 և 1977 թթ. անընդմեջ հանրապետություն բերեց «Կաշվե գնդակի» համամիութենական մրցույթների ոսկե մեդալները: Լենինականը ո՛չ միայն մասնակցեց հոկեյի մրցումներին, այլև Վորոնեժի համամիութենական պատանեկան մրցաշարում գրավեց պատվավոր 5-րդ տեղը: Մարզիկների այս հաղթանակները ծնեցին մի նոր նախաձեռնություն. Գոգոլի անվան դպրոցում բացվեց 2 դասարան՝ ֆուտբոլի և հոկեյի թեքումով:

Բնականաբար, այս գավաթներն ու մրցանակներն ինձ ցույց տվին հպարտությամբ: Բայց միաժամանակ ակնհայտ էր, որ նրանք դա ինքնանպատակ չէին համարում: «Մեր գլխավոր նպատակը մեկն է՝ մասսայականությունը»,— ասում էին և՛ կոմերիտական ղեկավարները, և՛ մարզիչները: Չնայած, ինչպես կռահե-



ցիք, գավաթը որևէ իրական, ինչ-որ շոշափելի բան չէ, դրան հաջորդում են շնորհակալությունը, փառքը, ապա՝ մասսայականությունը... և, եթե խնդիրը պատանու կյանքը հետաքրքրական դարձնելն է, ձանձրույթը թոթափելը, աննպատակայնությունից, անգործությունից նրան դուրս բերելը, ապա դրանից ավելի ազնիվ բան, անշուշտ, չի կարող լինել:

Նույնպիսի եռանդով քաղաքն սկսեց զբաղվել նաև դպրոցականների գեղագիտական դաստիարակությամբ: Ակտիվ գործունեություն ծավալեցին ակումբները: Լենինականի գուլպանասկեղենի արտադրամիավորման «Արշալույս» ֆիրմայի ակումբ գնացինք աշխատանքային մի օր, առանց զգուշացնելու, այն ժամին, երբ երեխաներն արդեն վերադարձել էին դպրոցից, իսկ մեծերը դեռ չէին ավարտել աշխատանքը: Երեք հարկերում էլ հնչում էին մանկական ձայներ:

Դահլիճներից մեկում փորձ էր անում «Կումայրի» վոկալ-գործիքային նվագախումբը, մյուսում սովորում էին ժողովրդական պարեր. բնորոշ շարժումներից իմացա, որ այդ հարևան Վրաստանի ազգային մի պար էր: Քանի որ բոլոր փակ սենյակները գրավել էին երգիչներն ու պարողները, դրամատիկական խմբակն ընտիպված զբաղեցրել էր ճեմասրահը: Ես երկար նայում էի. փորձը վարում էր Լենինականի դրամատիկական թատրոնի լավագույն արտիստներից մեկը՝ Խաչիկ Ասատրյանը: Բայց չէ՛ որ նա ինքն էլ և՛ խաղափորձեր ունի թատրոնում, և՛ պատասխանատու ներկայացումներ, և՛ սեփական երեխաներ... Ի՞նչն է ստիպում դերասանին աշխատել տրիկոտաժագործների երեխաների հետ: Այդ հարցին նա պատասխանեց հանգիստ, անպաճույճ:

— Քսաներեք տարի է թատրոնում եմ: Ինձ միշտ հուզում է նրա ապագան: Այստեղ եկա, որպեսզի ինքնագործ խմբակում գտնեմ տաղանդավոր երեխաներ, սովորեցնեմ նրանց և ժամանակին տանեմ թատրոն: Այժմ ինձ ոգևորում է ոչ միայն այդ: Ինձ համար շատ հետաքրքիր է պատանիների հետ: Աստիճանաբար ավելի պարզորոշ է դրսևորվում յուրաքանչյուրի անհատականությունը, բացահայտվում ներաշխարհը...

Ես զրուցեցի խմբակների, սեկցիաների տասնյակ ղեկավարների հետ, որոնք, անվճար են աշխատում և լսեցի գրեթե համանման պատասխաններ: Նրանք, իհարկե, էնտուզիաստներ են: Բայց չէ՛ որ էնտուզիազմը խարսխվում է հեղինակության վրա: Իսկ հեղինակություն ստեղծել, ձևավորել մարդկանց հասարակական կարծիքն այնպես, որ մանկական ժամանցի ղեկավարները համարվեն ամենահարգելի, ամենապատվելի մարդիկ (լրագրերի, ռադիոյի, հեռուստացույցի միջոցով), այդ արդեն քաղաքի գործն է:

Բայց վերադառնանք գուլպա-նասկեղենի արտադրամիավորման աշխատակիցների երեխաներին: Նախքան նրանց խմբակներում ընդգրկելը, ակումբի աշխատակիցները հանգամանալի զրուցում են ծնողների հետ, պարզում, թե ինչո՛վ են հետաքրքրվում երեխաները, ինչպիսի՛ հակումներ ունեն: Այդ վերաբերում է հիմնականում դեռահասներին, բայց, այսպես կոչված, «մանկական մյուզիկ-հոլում» ընդունում են մինչև ութ տարեկաններին: Փոքրիկները բավական երկար ժամանակ են զբաղեցնում ակումբների սենյակները: Եվ մենք մի փոքր վիճեցինք. արդյո՞ք այդքան հարկավոր է զբաղվել նախադպրոցականներով: Ի՛նչ խոսք, անշուշտ, շա՛տ լավ է, երբ բեմ են դուրս գալիս գույնզգույն, վառ հագուստներով փոքրիկները, դահլիճում հրճվում են ծնողները: Բայց փոքրիկի նկատմամբ ուշադրությունն առանց այդ էլ շատ է. ծնողներ ու դաստիարակներ, պապիկներ ու տատիկներ... Իսկ դեռահասները...

— Չէ՛ որ մի քանի տարի անց նրանք ևս կդառնան դեռահասներ,— ինձ հետ չհամաձայնեց կոմերիտական ղեկավար աշխատողը:— Եվ որքան շուտ սովորեցնենք նրանց երգել, գեղեցիկ պարել, երաժշտություն ունկնդրել, հետագայում այնքան ավելի շատ նրանց մատչելի կլինի արվեստը, այնքան ավելի բովանդակալից կլինի նրանց ազատ ժամանակը:

Եվ ամեն ինչում այսպիսի լրջություն, հեռանկարային հաշվարկներ: Ինձ ծանոթացրին անչափահասների գիտական ակումբների աշխատանքին. դրանք չորսն էին՝ համապատասխան քաղաքի գիտական հաստատությունների թվին: Երեխաների հետ պարապում էին վաստակաշատ գիտնականներ, ներգրավում նրանց ստեղծագործական հետազոտությունների ոլորտը:

— Գիտական հերթափո՞խ եք պատրաստում,— հարցրի ես:

— Ամենևին պարտադիր չէ,— պատասխանեց Հարությունյանը: Համոզված եմ, որ էլեկտրոնիկայի, կիբեռնետիկայի հիմունքներին պետք է ծանոթ լինեն մեր օրերի բոլոր մասնագետները, իսկ եթե մարդը հաղորդակցվում է առաջավոր գիտատեխնիկական մտածողությանը, նա անմիջապես կհասկանա, կորսա նորը, և ոչ թե ի միջի այլոց կասի՝ լա՛վ է, չարժե՛: Մի խոսքով, ամեն կերպ կատարի առաջընթացին:

...Բայց այդ ո՞ր նորն է դյուրությամբ ձեռք բերվում: «Ուշադրության կենտրոնում դեռահասն է» սիստեմը նոր էր սկզբնավորվում, երբ տեղի ունեցավ չնախատեսվածը: Խմբակներից կամաց-կամաց հեռացան մասնակիցները: Ին-

չո՞ւ: Նոր ուսումնասիրություններ, հարցումներ, և ամեն ինչ սկսեց պարզվել: Այո, նրանք ցուցակագրվել էին պիոներ տանը, կամ պատանի տեխնիկի կայանում, կամ մարզադաշտում, բայց չէ՞ որ նրանք կենդանի մարդիկ են: Մեկին դուր չեկան տվյալ խմբակի պարապմունքները, մյուսին՝ հեռավորությունը: Երրորդը ժամանակ չուներ: Եվ քաղաքը կրկին սկսեց եկք որոնել ու կրկին գտավ: Օգնության հասավ կուսակցության քաղաքային կոմիտեն: Քաղաքը բաժանվեց 10 միկրոշրջանների՝ ամեն մի միկրոշրջանն իր մանկավարժական խորհրդով, ծնողական պարեկներով: Եվ մի կարևոր հանգամանք. քաղաքի բնակկառավարչությունները դարձան կենտրոններ, որոնց, բնականաբար, օգնում էին շեֆ կազմակերպությունները: Ցուտով ամեն ինչ կարգավորվեց, երեխաների հանգիստը կազմակերպվեց ըստ բնակավայրի: Ես բնավ չեմ կամենում ասել, թե այդ Լենինականի հայտնագործությունն է: Մանկական սենյակ, հասարակական միավորներ, դաստիարակներ ունեն գրեթե բոլոր բնակգրասենյակները:

Բայց արդյոք ամե՞ն տեղ են աշխատողներն այնպես ուշադիր, ինչպես Լենինականում: Այստեղ ստեղծվում է ներկայացուցչական ժյուրի՝ քաղաքի ամենապատասխանատու աշխատողներից: Կազմակերպվում են մրցույթ-ստուգատեսներ: Նախապատրաստվել դրանց մի քանի օրում հնարավոր չէ: Հաշվի է առնվում այն ամենը, ինչ արվել է միայն ամենօրյա աշխատանքում— մանկական սենյակների խմբակներում ներգրավված երեխաների, ինչպես և միլիցիայում հաշվառված դեռահասների թիվը, կառուցված խաղահրապարակներն ու կազմակերպված էքսկուրսիաները, մասնակցությունը սպորտային մրցումներին: Եվ, եթե առաջին տեղը գրավում է № 3 բնակկառավարչությունը, ապա, անտարակույս, այն արժանի է: Կառուցվել է 16 սպորտհրապարակ, խմբակների մասնակիցներն ավելի շատ են, քան մյուս բնակկառավարչություններում: Իսկ միլիցիայի բաժանմունքում հաշվառման մեջ են ընդամենը վեց հոգի:

Ի դեպ, ինչպե՞ս վարվել միլիցիայի մանկական սենյակի պատանի կարգազանցների հետ. այս հարցը երկար ժամանակ չէր լուծվում:

— Եվ, գիտե՞ք ինչ, սկսեցինք այսպես դատել,— ասաց Լևոն Հարությունյանը,— չէ՛ որ այս երեխաները պասսիվ, նախաձեռնությունից զուրկ չեն: Ավելի շուտ հակառակը, եռանդը չափից ավելի է: Բայց որտե՞ղ է օգտագործվում. անկարգ, խուլիգանական արարքներում, այն ամենում, ինչ հարուցում է սուր զգացողություն, և պահանջում համարձակություն, ճարպկություն, հնարամտություն: Եվ ահա այդ դժվար դաստիարակվողներին՝ եռանդուն, առողջ 80 պատանիների առաջարկեցինք մեկնել զինվորական-սպորտային ճամբար:

Հանգստի ռեժիմն այստեղ նման է սովորական պիոներական ճամբարի ռեժիմին, միայն ծրագրում գերակշռում են ռազմական խաղերը (այստեղ դարձյալ օգնության հասան կայազորի զինվորներն ու սպաները) և աշխատանք մոտակա կոլտնտեսությունում: Օգտակար գործում ներդրված եռանդը հրաշալի արդյունք տվեց. մեկ տարում նրանցից և ոչ մեկը կարգ չխախտեց: Չորս տարիների ընթացքում (1974—1978 թթ.) մանկական հասարակական իրավախախտումների թիվը նվազել է երկու անգամ:

«Իրավախախտման կանխարգելում», «Աշխատանք դժվար դաստիարակվող դեռահասների հետ». հաճախ լսվում էին այս խոսքերը: Եվ այդ բնական է: Դեռահասների ազատ ժամանակի կազմակերպման սիստեմն ստեղծվել է հենց դրա համար— զբաղեցնել երեխաներին, կտրել «փողոցից», մի խոսքով՝ օգնել միլիցիային: Բայց այժմ, երբ այդ սիստեմն արդեն 4 տարի գործում է, դրա խնդիրները շատ են ընդլայնվել: Նոր, ավելի ճիշտ, կարևոր նպատակն այժմ լավագույն պայմանների ստեղծումն է մարդկային հնարավորությունների առավելագույն զարգացման համար: Եվ այդ մարդու կյանքի այն շրջանում, երբ սկսվում է անհատականության առավել արագ ձևավորումը:

Մենք՝ մեծերս, հաճախ ենք կրկնում, թե անհատը պետք է զարգանա համակողմանի, ներդաշնակ: Բայց հաճա՞խ ենք արդյոք անում ամեն բան, որպեսզի լավագույն պայմաններ ստեղծենք դրա համար: Իսկ լենինականցիները ջանում են այդ պայմաններն ստեղծել: Ստեղծել ո՛չ միայն հաշվետվության, ձևականության համար, այլ մեծապես շահագրգռված երեխաների ապագայով:

Ահա մի պարզ օրինակ. դեռահասների ընկերախումբ բակում, փողոցում, զբոսայգում: Ի՜նչ հանույք է անգործ դոփել տեղում, փնթփնթում ենք հաճախ: Իսկ Լենինականում այլ կերպ են նայում դրան: Ընկերախումբ. ինչո՞վ է դա վատ: Չէ՛ որ երեխաներին իրար է կապում միմյանց հաղորդակցվելու մարդկային բնական պահանջը: Մարդիկ ցանկանում են հանդիպել իրար, հանգիստ զրուցել, կամ պարզապես լռել: Ինչո՞ւ չխրախուսել այդ ցանկությունը:

Մի՞թե ավելի լավ չէ հակառակը— հնարավորություն տալ երեխաներին՝ հաղորդակցվելու հարմար միջավայրում, մեղմ երաժշտության ներքո: Եվ բացվում է երիտասարդական սրահը, որտեղ ցերեկվա բոլոր ժամերին իրենց կազմակերպված ժամանցն են անցկացնում դեռահասները: Կազմակերպված մրցույթներում ելույթներ են ունենում պատանի դաշնակահարներն ու ջութակահարները: Իսկ պատանի նկարիչների ցուցահանդեսը դարձավ վերջերս կազմակերպված մանկական պատկերասրահի բացման նախապայմանը:

Լենինականում գործում են մանկական և երիտասարդական սրճարաններ, ուր, համեստ հյուրասիրության պայմաններում, դեռահասները հավաքվում են, մտերմիկ զրուցում, վիճաբանում... Մանկական սրճարանները բաց են միայն ցերեկվա ժամերին, իսկ պլանը, այնուամենայնիվ, կատարվում է: Ինչպե՞ս: Ցատ պարզ. դրանց ֆինանսական նորմաները զգալիորեն կրճատված են: «Բայց այդ անհնա՛ր է»,— բազմիցս լսում էի հասարակական սննդի տարբեր ղեկավարներից: Մինչդեռ Լենինականի հասարակական սննդի քաղաքային վարչությունը հնարավոր համարեց այդ՝ լիովին համոզված, որ երեխաների դաստիարակությունը ո՛չ միայն մանկավարժների ու կոմերիտականների գործն է, այլև, իհարկե, նաև իրենցը:

Լենինականում ձեռնամուխ են լինում նաև նորանոր, դեռևս տեսականորեն իսկ չլուծված խնդիրների: Հայտնի է, օրինակ, թե հումորի զգացումը որքան է օգնում մարդուն՝ նորմալ մթնոլորտ ստեղծելու կոլեկտիվում, ընտանիքում: Հայտնի չէ միայն, թե ինչպե՛ս համակել մարդուն այդ զգացումով, եթե այն չի անցել ժառանգաբար, ինչպե՛ս զարգացնել այն: Եվ լենինականցիները որոշեցին փորձել: Կոմերիտմիության քաղկոմի դպրոցական բաժինը տեղական թերթում հայտարարություն հրապարակեց. «Քաղաքի դպրոցականնե՛ր, հավաքե՛ք ժողովրդական հումորը, անեկդոտներ, հումորեսկներ, կատակներ...»: Այստեղ, ճիշտ է, պետք է վերապահությամբ ասել, որ Լենինականն իր հումորով հանրաճանաչ է, հռչակված: Կատակասերների ու սրախոսների քաղաք է այն, նման բուլղարական Գաբրովոյին, կամ հայրենական Օդեսային: Երկրորդ տարին է, ինչ Լենինականում ևս ապրիլի 1-ը հայտարարված է ծիծաղի օր:

Իհարկե, լենինականցիները դժվարություններ շատ ունեն՝ կապված շենքերի, դրամական և այլ միջոցների, հասարակական միավորների հետ: Խանդավառությունը՝ խանդավառություն, բայց ՀԼԿԵՄ քաղկոմին կից մի քանի հասարակական դաստիարակների ու մարզիչների հաստատումը զգալիորեն կդյուրացներ դեռահասների շրջանում տարվող աշխատանքը:

Այստեղ դեռևս չեն կարողանում բացել «Պատանի տեխնիկ» խանութը, որը մեծապես կօգներ պատանի տեխնիկների քաղաքային կայանին, ինչպես խոստովանեց դրա ղեկավար Անուշավան Պետրոսյանը: Բայց դժվարությունների հաղթահարումը ավելի հեշտ է ողջ քաղաքի համատեղ ջանքերով. քաղաք, որը շատ է սիրում իր երեխաներին՝ և՛ փոքրերին, և՛ մեծերին:

19 օգոստոսի, Մոսկվա

յան ռազմաճակատի հայկական հինգ դիվիզիաների մարտիկներին հաղորդել, թե ինչպես են մարտնչում իրենց և հարևան ստորաբաժանումները, տեղյակ պահել նրանց պատերազմական իրադարձություններին: Հայ քաջորդիները կռվում էին ո՛չ միայն վերոհիշյալ հինգ դիվիզիաներում, այլև սովետական շատ ռազմաճակատներում և հայրենասիրության, անձնվիրության բազում էջեր գրեցին պատերազմի հերոսական տարեգրության մեջ:

1942 թվականի մարտի 27-ի թվակիր նամակում ճակատային «Վո սլավու Ռոդինի» թերթի խմբագիրը Հայաստանի կոմկուսի Կենտկոմին հաղորդել է, որ ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմի հրամանով Հարավային ռազմաճակատում լույս տեսնող թերթերի հետ պետք է տպագրվեն նաև հայերեն, վրացերեն, ադրբեջաներեն թերթեր: Դրանց խնդիրն է՝ մարտիկների մայրենի լեզվով հայրենասիրական պրոպագանդա մղել, մոբիլիզացնել նրանց ուժերը՝ ֆաշիստական հորդաների դեմ մղվող պայքարում: Բոլոր թերթերում հաջորդաբար պետք է հրապարակվեն եղբայրական հանրապետություններին նվիրված նյութեր, ինֆորմացիաներ այն մասին, թե հանրապետությունն ինչպե՛ս է օգնում ռազմաճակատին, ինչպե՛ս են զարգանում արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, կուլտուրան[2]: Ռազմաճակատներում և առանձին զինվորական միավորումներում ստեղծվեցին 16 հայերեն զինվորական լրագրեր, որոնցից 7-ը ռազմաճակատային թերթերի թարգմանական տարբերակն էին: Զինվորական մամուլի բաղկացուցիչ մասն էին ստորաբաժանումներում լույս տեսնող «Մարտական թերթիկները» կոչերը, «Կարմիր բանակայինի ուղեցույց» գրքույկները, որոնք Հայրենական պատերազմի տարիներին դարձան ֆաշիզմի դեմ մարտնչող հրապարակախոսության հզոր միջոց:

***

Մամուլի և պատերազմի առնչությունների ուսումնասիրման համար էական նշանակություն ունի թիկունքի ու ռազմաճակատի լրագրերում և ամսագրերում սովետական բանակի հերոսամարտերի պատմության հետազոտությունը: Թեև Հայաստանը համարվում էր թիկունքային հանրապետություն, ուր շնորհիվ սովետական բանակի հերոսական մարտերի թշնամին ոտք չդրեց, մարդիկ վառոդի հոտ չառան, սակայն նրանք կրում էին պատերազմական շատ դժվարություններ. ժողովուրդը կատարում էր ռազմաճակատի պատվերները, նրանց զավակները մեկնել էին կռվի դաշտ: Թիկունքայիններին ռազմաճակատի թեժ առօրյային հաղորդակից էր անում մամուլը, դառնալով թիկունքն անմիջականորեն ռազմաճակատին կապող յուրատեսակ օղակ:

Մամուլում պարբերաբար տպագրվում էին ռազմական գործողությունների վերաբերյալ սովետական ինֆորմբյուրոյի ամփոփագրերը, ՏԱՍՍ-ի հաղորդումները, ռազմաճակատներից խմբագրությունների հասցեներով ստացված նամակները, ակնարկները, ինֆորմացիաները և այլն:

1941 թվականի հոկտեմբերի 21-ի համարներում թերթերը տպագրել են Պաշտպանության պետական կոմիտեի որոշումը Մոսկվա քաղաքում և մերձակա շրջաններում պաշարողական դրություն հայտարարելու մասին: Զետեղված են նաև բազմաթիվ նյութեր, որոնց հեղինակներն արտահայտում են իրենց անսահման սերը մայրաքաղաքի նկատմամբ և այն պաշտպանելու վճռականությունը: Այդ մասին է գրում Ավետիք Իսահակյանը «Հարազատ Մոսկվայի համար» հոդվածում: Այդ օրերին մեր հայրենիքի սրտին՝ Մոսկվային, անկեղծ ներշնչանքով գրված բանաստեղծություններ են ձոնել Նաիրի Զարյանը, Գեղամ Սարյանը, Սարմենը և ուրիշներ:

Արտահայտելով հանրապետության աշխատավորների կամքը՝ Լեռնային Զանգեզուրից կոլտնտեսականները գրում են.

«Թանկագին մոսկվացինե՛ր, մենք ձեզ հետ ենք... կռվեցե՛ք արիաբար: Մենք երդվում ենք, որ ձեզ հետ պատրաստ ենք ուսուսի տված պաշտպանել մեր երկիրը, մեր սքանչելի Մոսկվան»:

Ճակատային հայերեն թերթերը, պրոպագանդելով ռուս ժողովրդի հերոսական անցյալը և Հայրենական պատերազմում նրա մարտական ավանդույթները, նրա առաջատար դերը, իրենց էջերում կոչ են արել սովորել ռուս մեծ ժողովրդի լեզուն: Առանձնապես պատերազմի պայմաններում այդ կենսական նշանակություն ուներ: Հայկական հրաձգային 409-րդ դիվիզիայի «Մարտական դրոշ» թերթի համարներից մեկը (1942, մարտի 7) երկու առաջնորդող ունի: Մեկը վերնագրված է. «Սովետական ռազմիկի երդումը», իսկ մյուսը՝ «Սովորենք ռուս մեծ ժողովրդի լեզուն»: «Օգնություն մարտիկին» խորագրով թերթը հաճախ է տպագրել ռուս-հայերեն բառարան, ուր առաջին հերթին թարգմանված են մարտիկներին խիստ անհրաժեշտ բառերը: «Սովորենք ռուս մեծ ժողովրդի լեզուն, Լենինի լեզուն», «Ռազմական գործին ավելի լավ տիրապետելու համար հարկավոր է իմանալ ռուսաց լեզուն»— կոչ է անում «Մարտ հանուն հայրենիքի» լրագիրը:

2 Տե՛ս ՄԼԻ-ի հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1—31, գ. 299, թ. 40։



***

1942 թվականի հուլիս—օգոստոս ամիսներին մեր հայրենիքի հարավում մղվում էին կատաղի ճակատամարտեր. թշնամին ամբողջ ուժով շարժվում էր առաջ. սև ամպեր էին կուտակվել հինավուրց Կովկասի երկնակամարում. «Պրավդան» այդ օրերին տագնապալից կոչ էր անում.

«Ո՛չ մի քայլ ետ— այս է հայրենիքի հրամանը բոլոր հրամանատարներին, կարմիրբանակայիններին և քաղաշխատողներին, այս է պահանջվում բոլոր նրանցից, ում համար թանկ են մեր հայրենիքի շահերը»:

Թբիլիսիում տեղի ունեցավ անդրկովկասյան ժողովուրդների հակաֆաշիստական միտինգ: Վրաստանի «Զարյա Վոստոկան», «Կոմունիստին», Ադրբեջանի «Բակինսկի ռաբոչին», Հայաստանի «Սովետական Հայաստանը», «Կոմունիստը» և մյուս պարբերականները հրապարակեցին միտինգի մասնակիցների դիմումը և դրա արձագանքները, որոնք արտացոլում էին եղբայր ժողովուրդների պատրաստակամությունը մեկ մարդու պես դիմագրավելու թշնամուն:

Հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթը, այդ միտինգի նյութերը հրապարակելուց հետո, առանձին թերթիկով լույս է ընծայել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Երևանի կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի, քաղաքային սովետի դեպուտատների, հասարակական կազմակերպությունների ու զորամասերի ներկայացուցիչների հանդիսավոր նիստի նամակը՝ ուղղված Կովկասի պաշտպաններին: Թերթն առանձին հրապարակել է նաև 89-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատարության ու քաղբաժնի դիմումը մարտիկներին, հրամանատարներին, քաղաշխատողներին, ուր կոչ է արվում համատեղ խփել գերմանական սողունին՝ մինչև նրա լիակատար ջախջախումը:

Ժողովուրդների դարավոր բարեկամությանը և ֆաշիզմի դեմ նրանց հերոսական պայքարի կազմակերպմանը նվիրված նպատակային էջեր ու համարներ է հրապարակում Անդրկովկասյան ռազմաճակատի «Բանվորագյուղացիական կարմիր բանակի մարտիկ» թերթը[3]: Համարներից մեկի հայերեն և վրացերեն լոզունգ-խորագիրն է «Գաումարջոս Սաբճոթա Սաքարթվելոս»— «Կեցցե՛ Սովետական Վրաստանը» լոզունգը, որի ներքո տպագրված նյութերը պատմում են, որ ռուս մեծ ժողովրդի, քաջարի Կարմիր բանակի օգնությամբ Վրաստանը դարձավ Սովետական բազմազգ Միության հանրապետություններից մեկը՝ առաջավոր-ինդուստրիալ-ագրարային երկիր՝ զարգացող գիտությամբ, արվեստով ու գրականությամբ: Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից Վրաստանի քաջարի զավակները մեկնեցին ռազմաճակատ՝ գերմանաֆաշիստական հորդաների դեմ կռվելու:

Թերթի մի այլ համարում հրապարակվել է ադրբեջանական ժողովրդի նամակը, որն ստորագրել են Ադրբեջանական ՍՍՀ 897.146 աշխատավորներ:

«Սովետական Հայաստանը», «Կոմունիստը», «Սովետ Էրմանիստանին», «Բանվորը», «Սովետական դպրոցը», շրջանային ու ճակատային թերթերը մշտապես հիշեցնում էին ընթերցողներին, որ իրենց զավակներին հայրենական պատերազմ ճանապարհելով, Հայաստանի աշխատավորները պատվիրում էին անձնվիրաբար պաշտպանել սոցիալիստական հայրենիքը:

Ինչպես Մոսկվայի հերոսական պաշտպանության օրերին, այնպես էլ 1942 թվականի աշնանը, երբ ամբողջ աշխարհի ուշադրությունը բևեռված էր Ստալինգրադին, Հայաստանի մամուլն ազդարարում էր, որ Վոլգայի ափերին ծավալվող ահեղ ճակատամարտի դրվագները ներկայացնող հաղորդումներն անմիջապես թռչում, տարածվում են աշխարհով մեկ: Թերթերում տպագրվել են սովետական ինֆորմբյուրոյի, ՏԱՍՍ-ի ամփոփագրերը, ինչպես նաև շատ այլ նյութեր: Գրող-հրապարակախոս Հրաչյա Քոչարը, որ պատերազմի սկզբից իսկ գործող բանակում էր, իր «Ստալինգրադի հայ պաշտպանները» ակնարկում գրում է, որ այս քաղաքի համար մղվող ճակատամարտերում հերոսի մահով ընկան և շատ հայ պայազատներ, իսկ ողջ մնացածները ռազմաճակատներում նորանոր սխրագործություններով պանծացնում են իրենց ժողովրդի անունն ու փառքը[4]:

«Պրավդա» թերթի 1943 թվականի մարտի 2-ի համարում, ապա՝ Հայաստանի մամուլում հրապարակվեց հայ ժողովրդի նամակը՝ ուղղված հայ ռազմիկներին: 335.016 հոգի էին ստորագրել այդ նամակը, որը պարտավորեցնում էր ռազմիկներին՝ լիովին ջախջախել ֆաշիստական հրոսակախմբերը, անձնվիրաբար պաշտպանել սրբազան հայրենիքը: Նամակը հասավ ճակատայիններին. մարտիկները երդվեցին կատարել հարազատ ժողովրդի պատվիրանը:

«Կոմունիստը» հրապարակել է մի խումբ

3 «ԲԳԿԲ մարտիկ», 1943, փետրվարի 27, ապրիլի 29, մայիսի 22։

4 Տե՛ս «Սովետական Հայաստան», 1943, ապրիլի 15 ։

ճակատային հրամանատարների ու զինվորների պատասխան-նամակը հայ ժողովրդին, որով երդվում են չվերադառնալ տուն, մինչև վերջին ֆաշիստը չվռնդվի մեր հողից[5]:

Ռազմաճակատի ու թիկունքի մամուլի էջերում ցույց են տրվել ինտերնացիոնալ բարեկամությամբ զոդված սովետական բոլոր ազգերի զավակների մասսայական հերոսությունները, դրսևորվել է անսասան հավատը գերմանաֆաշիստական զավթիչների պարտության անխուսափելիության, մեր արդար գործի հաղթանակի նկատմամբ:

«Առաջ հանուն հայրենիքի» թերթի «Կովկասի քաջարի զավակները» առաջնորդողում կարդում ենք, որ Կուբանում ընթացող մարտերի ամեն մի օրը նոր լույս է բերում վրացիների, հայերի, ադրբեջանցիների, դաղստանցիների և Կովկասում բնակվող մյուս ազգությունների մարտիկների մասին, իրենց եղբայրների, ռուսների, ուկրաինացիների հետ միաձույլ, նրանք մարտնչում են համարձակ ու անձնազոհ[6]:

Ներկայացնելով ռազմաճակատային իրադարձությունները, մեր բազմազգ ժողովրդի զավակների հերոսագործությունները՝ ռազմաճակատային թերթերը մի անգամ ևս հաստատում են այն ճշմարտությունը, որ սովետական քաղաքացու հայրենիքը մեր ողջ Միությունն է, որ պաշտպանելով մեր երկրի մայրաքաղաք Մոսկվան, ապա՝ Լենինգրադը, Կիևը, Օդեսան, Ստալինգրադը, Սևաստոպոլը, Մինսկը, սովետական յուրաքանչյուր թիզ հողը, նրանք պաշտպանում են իրենց հանրապետությունը, շրջանը, քաղաքը, գյուղը, հայրենի տունը, իրենց ընտանիքի պատիվը: Սովետական ռազմիկի հայրենասիրության բնորոշ առանձնահատկությունն է այս, որն այնպես ցայտուն արտահայտվել է այդ տարիների մամուլի էջերում:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին թերթերում ու ամսագրերում լայնորեն արտացոլվում էր բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորականության անձնուրաց, անդուլ աշխատանքը: Մեր երկրի աշխատավորները պատերազմի սկզբից իսկ իրենց գործունեության, աշխատանքի ու կյանքի խորհրդանիշ ընտրեցին «Ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար» լոզունգը: Մամուլը բազմակողմանի արտացոլում էր կուսակցության ղեկավարությամբ բանվորների, կոլտնտեսականների ու մտավորականների ծավալած անդուլ պայքարը ռազմաճակատի ու թիկունքի պատվերները ժամկետից շուտ կատարելու համար: Ինչպես մարտնչող հրապարակախոսությանը, երկրի տնտեսական կյանքը լուսաբանող նյութերին ևս բնորոշ էին քաղաքական նպատակասլացությունը, սոցիալիստական հասարակարգի առավելությունների պրոպագանդումը: Պատերազմի տարիներին մամուլը խոշոր դեր խաղաց արտադրության, կոլտնտեսային դաշտերի առաջավորների փորձի մասսայականացման գործում:

Պատերազմի տարիներին լայնորեն են օգտագործվել կոմունիստական մամուլի այնպիսի փորձված միջոցներ, ինչպիսին են կոչը, դիմում-հորդորը: Թերթերի խաղաղ, նկարագրական վերնագրերն իրենց տեղը զիջել էին կռվի ու մաքառման բոցաշունչ կոչերին: 1941 թվականի հունիսի 23-ին՝ պատերազմի երկրորդ օրը, «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմանիստանի» թերթերն իրենց արտահերթ համարներում, պատերազմական դրությանը վերաբերող տագնապալի նյութերի հետ մեկտեղ, պայքարի կոչող լոզունգների ներքո հրապարակել էին Երևանի Ս. Մ. Կիրովի անվան կաուչուկի կոմբինատի բանվորների, ինժեներների, տեխնիկների, ծառայողների ժողովի բանաձևը: Հանրապետության քիմիական հսկայի մեծ կոլեկտիվի խոսքն էր այդ, վրեժի կոչող ցասման ձայնը: Քիմիագործները երդվում են լարել բոլոր ուժերը և ռազմաճակատին տալ այնքան արտադրանք, որքան անհրաժեշտ է հաղթանակն ապահովելու համար:

Երկու ամիս անց թերթերը հրապարակեցին Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանի առաջավորների նամակը, որով նրանք պարտավորվել էին ավելի ուժեղացնել օգնությունը ռազմաճակատին, տարեկան պլանը գերակատարել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 24-րդ տարեդարձի օրը: Այդ նպատակով մեքենաշինարարները պարտավորվել էին բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել ինքնարժեքը, խնայել էլեկտրաէներգիան:

Կյանքից վերցրած համոզիչ փաստերով մամուլը ցույց է տվել, թե ինչպես աշխատանքային հերոսությունը դարձել է մասսայական, համընդհանուր: Մեր երկրում լայնորեն տարածվել էր երկուհարյուրականների շարժումը, որն սկիզբ էր առել պատերազմի ծանր օրերին Մոսկվայի, Լենինգրադի, Ուրալի և արդյունաբերական այլ խոշոր կենտրոնների ձեռնարկություններում: «Երկուհարյուրականների շարժումը» վերնագիրը կրող առաջնորդողում «Պրավդան» գրում է, որ խորապես հայրենասիրական այդ շարժումը հղի է աշխատանքի

5 Տե՛ս «Կոմունիստ» 1943, մարտի 1:

6 Տե՛ս «Առա՜ջ հանուն հայրենիքի», 1943 մայիսի 27:



արտադրողականության բարձրացման վիթխարի հնարավորություններով և անհրաժեշտ է գլխավորել այն, ապահովել այդ շարժման մասսայականացումը[7]:

Մամուլը դարձավ այդ գործի կազմակերպիչն ու պրոպագանդիստը: Թերթերում լուսաբանվում էր Ղափանի պղնձահանքերի հերոսներ Իվան Ռոժկովի, Սերյոժա Ազարյանի, Սուրեն Պողոսյանի, Անդրեյ Տոլստիկովի, Կոլյա Բաբայանի, Երեմ Սարգսյանի, Արամ Մարտիրոսյանի, Սուրեն Հակոբյանի աշխատանքի փորձը: Աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ նրանք հասել էին առավելագույն ցուցանիշների, դարձել սոցիալիստական մրցության առաջավորներ:

Մամուլը պրոպագանդում էր աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորության վերաբերյալ լենինյան ուսմունքը, ներկայացնելով առաջավոր բանվորների ու ձեռնարկությունների դրական փորձը, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման օրինակները: Հայրենիքի կոչով բանակ էր մեկնել որակյալ բանվորների, ինժեներատեխնիկական անձնակազմի և արտադրության հրամանատարների մեծ մասը: Ակներև դժվարություններ կային հումքի և նյութատեխնիկական միջոցների հայթայթման ասպարեզում, ուստի անհրաժեշտ էր ուժերի առավելագույն լարումով, անհամեմատ սակավաթիվ մարդկանցով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, կատարել ռազմաճակատի ու թիկունքի պատվերները:

«Ստեղծենք պատերազմի ժամանակվա արտադրական նորմաներ»— կոչ է անում «Սովետական Հայաստանի» առաջնորդողը: Արդյունաբերության աշխատողների առջև թերթը խնդիր է դնում. սահմանել խաղաղ տարիների բնագծերն առնվազն երկուսից-երեք անգամ գերազանցող նորմաներ: Օրինակներ բերելով Երևանի Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանից, Ղափանի հանքերից, Լենինականի շոգեքարշային դեպոյից, որտեղ առաջավոր բանվորներն օրական մի քանի արտադրական նորմա են կատարում, առաջնորդողը կոչ է անում հետևել նրանց: Հետագա համարներում թերթը հաղորդում է, թե հանրապետության արտադրական ձեռնարկություններում ինչպիսի գործնական քայլեր են արվում նոր նորմաներ մշակելու նպատակով:

«Հայրենիքին տանք այնքան պղինձ, ինչքան անհրաժեշտ է հաղթանակն ապահովելու համար», «Յուրաքանչյուր կիլոգրամ պղինձը մահացու հարված է ֆաշիստական գազանին», «Ավելի շատ հանքաքար ու պղինձ երկրին» խորագրերի ներքո զետեղված նյութերում ցույց է տրված պղնձի բացառիկ նշանակությունը մեր հայրենիքի ռազմատնտեսական հզորության համար:

ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն իր որոշումներում և նամակ-շրջաբերականներում բազմիցս անդրադարձել է պատերազմի պայմաններում մամուլի գործունեությանը, օգնել խմբագրություններին ու հեղինակներին՝ ճիշտ կողմնորոշվելու բարդ իրադրություններում, օգնելու կուսակցական ու սովետական կազմակերպություններին՝ մոբիլիզացնելու բոլոր ուժերը, ամեն ինչ անելու ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը բազմապատկելու նպատակով: Գնահատելով մամուլի գործունեությունը՝ կուսակցությունը միաժամանակ բացահայտում էր այդ ասպարեզի թերությունները, միջոցներ ձեռնարկում գրավոր խոսքն առավել ներգործուն, դիպուկ դարձնելու նպատակով: «Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի լուսաբանման հարցերում թերթերի թերությունների մասին» ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի վարչության՝ 1943 թվականի մարտի նամակում (ուղղված քաղաքային, մարզային, երկրամասային, հանրապետական թերթերի խմբագիրներին) էական թերություն է համարվում այն, որ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը մամուլը լուսաբանում է մակերեսորեն, առանց գործիմացության, առանց ձեռնարկությունների վիճակի խոր վերլուծության: Շատ թերթերում գրեթե ամենևին չեն քննադատվում թերությունները: Կենտրոնական կոմիտեի վերոհիշյալ նամակում ո՛չ միայն վերլուծված է մի շարք թերթերի գործունեությունը, բացահայտված են թերությունները, այլև հանգամանորեն շարադրված է աշխատանքի գործնական պլան, առաջադրված են հրատապ խնդիրներ ըստ թերթերի բաժինների:

Կենսագործելով կուսակցության ցուցումները՝ ՀԿ(բ)Կ Կենտկոմը պարբերաբար քննարկել է արդյունաբերական կյանքի լուսաբանման վիճակը Հայաստանի մամուլում: Այդ առումով ուշագրավ է Կենտկոմի 1944 թվականի դեկտեմբերի 12-ի որոշումը «Սովետական Հայաստան» թերթի աշխատանքի մասին[8]:

Ուսումնասիրելով Հայաստանի ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերի՝ քիմիական, մեքենաշինական, մետաղամշակման, տեքստիլ արդյունաբերության, երկաթուղային տրանսպորտի այդ տարիների աշխատանքի արտացոլումը մամուլում, կարելի է ասել, որ գրեթե բոլոր նյութերում զգացվում է պատերազմի

7 Տե՛ս «Պրավդա», 1941, հոկտեմբերի 15:

8 Տե՛ս ՄԼԻ հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1—33, գ. 36, թ. 81—83:

զարկերակը, զգացվում է, որ ինչպես մեր ողջ երկիրը, Հայաստանը ևս ամեն ինչ արել է պատերազմի հաղթական ավարտը մոտեցնելու համար:

Հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս բնագավառի՝ գյուղատնտեսության պրոբլեմները, կոլտնտեսականների հերոսական մաքառումը պատերազմի տարիներին՝ մամուլում ներկայացված են լրագրային բոլոր ժանրերով: «Ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար» նշանաբանն այստեղ լրացվել է «Ռազմաճակատին տանք այնքան սննդամթերք, որքան անհրաժեշտ է թշնամու դեմ հաղթանակն ապահովելու համար» լոզունգով: Գյուղատնտեսության աշխատողներին մոբիլիզացնող շատ էջերի բնորոշ խորագրերից էին՝ «Ավելի շատ մթերքներ ռազմաճակատին», «Յուրաքանչյուր կիլոգրամ հացը, յուղը, միսը մահացու հարված է թշնամուն», «Ռազմական տարվա գյուղատնտեսական աշխատանքները կատարենք բոլշևիկորեն»: «Գյուղի կոմունիստնե՛ր, եղեք գյուղատնտեսական առաջադրանքների կատարման համար պայքարի ավանգարդում», «Մեխանիզատո՛ր, քո տրակտորն ու կոմբայնը հավասար են տանկին ու գնդացրին», «Գործի՛ր համարձակ, գրոհի՛ր այնպես, ինչպես գրոհում են Կարմիր բանակի մարտիկները», «Հաղթանակը թիկունքում հաղթանակ է ռազմաճակատում» և այլն:

Վար ու ցանքի, բերքահավաքի ու հացահատիկի մթերումների եռուն օրերին «Կոմունիստը» և «Սովետական Հայաստանը» կազմակերպում էին շրջիկ խմբագրություններ, հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում լույս ընծայում թերթերի հավելվածներ: Շրջիկ վագոն-խմբագրությունները հաճախ են եղել Հոկտեմբերյանի, Արտաշատի, Էջմիածնի, Գորիսի, Ղափանի, Ստեփանավանի և մյուս շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում, լուսաբանել գյուղատնտեսական աշխատանքների ընթացքը, մասսայականացրել լավագույն դաշտավարների, անասնապահների, բրիգադավարների, առաջավոր կոլտնտեսությունների փորձը: Միաժամանակ խարազանել են ետ մնացողներին, հանրօգուտ աշխատանքից խուսափողներին:

Կուսակցությունն անդադրում հիշեցնում էր մամուլի աշխատողներին, որ պատերազմական դրության առնչությամբ առավել մեծանում են մամուլին առաջադրվող պահանջները: Այդ բնագավառի աշխատողները, բոլոր լրագրողները պետք է օգնեն կուսակցական կազմակերպություններին՝ համախմբելու գյուղի մարդկանց ուժերը, ավելի մեծացնելու ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը:

Հայրենական պատերազմի տարիներին աշխատունակ մարդկանց մեծ մասը մեկնեց բանակ: Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ վճռական ուժը դարձան երիտասարդներն ու կանայք: Մամուլը հանգամանորեն արտացոլում էր նրանց կյանքն ու պայքարը, ցույց տալիս, թե ինչպես պատանիներն ու աղջիկները փոխարինում են զորակոչված հայրերին ու եղբայրներին, կարճ ժամանակում դառնում տրակտորիստ ու կոմբայնավար, նրանք պատրաստ են, եթե հարկ լինի, տրակտորն ու կոմբայնը փոխարինել տանկով:

«Երիտասարդ հայրենասերնե՛ր, բազմապատկեցե՛ք ձեր սխրագործությունները ռազմաճակատում և թիկունքում». կոչ է անում «Սովետական Հայաստանը»: Թերթի էջի կենտրոնական մասում հրապարակված է Կարմիր դրոշի և Կարմիր աստղի շքանշանակիր 89-րդ Թամանյան դիվիզիայի կոմերիտականների դիմումը՝ ուղղված Հայաստանի կոմերիտականներին ու կոմերիտուհիներին: Երիտասարդ թամանցիները պատմում են, թե ինչպես են մասնակցել Կերչ և Սևաստոպոլ քաղաքների համար մղված մարտերին: Խոստանալով առաջիկայում ևս բարձր պահել կոմունիստական կուսակցության հավատարիմ օգնականի՝ կոմերիտականի վեհ կոչումը, թամանցիները կոչ են անում թիկունքայիններին՝ լարել ուժերը, Կարմիր բանակին, հայրենիքին տալ ավելի շատ արդյունաբերական ապրանքներ և գյուղատնտեսական մթերքներ:

Մամուլի էջերում հաճախ են երևան գալիս գյուղատնտեսական տարբեր հարցեր շոշափող նամակներ: Մասնավորապես գյուղատընտեսական բաժնում զետեղվող նամակների հեղինակներն անկեղծ զրուցում են գյուղացու հետ նրան հուզող թեմաների շուրջ:

Հայաստանի մամուլը Հայրենական մեծ պատերազմի տարիներին մարտնչող հրապարակախոսության միջոցով օգնեց կուսակցական ու սովետական կազմակերպություններին՝ ռազմական պահանջներին համապատասխան վերակառուցելու ամբողջ ժողովրդական տընտեսությունը: Ընդհանրացնելով պայքարի ու հաղթանակների փորձը՝ մամուլը շեշտել է, որ պատերազմի տարիներին մեր երկրի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ դաշինքի շնորհիվ ամրապնդվում էր մեր հայրենիքի պաշտպանունակությունը, մեծանում նրա ռազմական հզորությունը:



# ՊԱՏՈՒՄՆԵՐ ՄԵԾ ԿՅԱՆՔԻ ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ֆաշիզմի ռազմական ուժերի լիակատար ջախջախման գործում ասպարեզ եկան սովետական զինված ուժերի շնորհալի ստվարաթիվ զորավարներ, որոնք արժանացան կուսակցության ու սովետական կառավարության մեծագույն գնահատականին ու բարձրագույն պարգևների:

Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանի հրամանատարական տաղանդն ու կազմակերպական ձիրքը գնահատվել ու դրվատվել են զինված ուժերի պատմությանը նվիրված ուսումնասիրություններում, նրա մարտական զինակիցների, լրագրողների հրապարակումներում: Այդ ամենով հանդերձ փառաբանված զորավարին նվիրված ամեն մի նոր գործ անմիջապես գրավում է ընթերցողների ուշադրությունը: «Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել Ա. Մնացականյանի Մարշալ Բաղրամյան (Կյանքի և գործունեության ուրվագիծ) մենագրությունը, որտեղ հանգամանորեն բնութագրված են սովետական բանակի ականավոր գործչի մարտական ուղին, ծառայությունները կուսակցության ու հայրենիքի հանդեպ:

Ընթերցողի առջև հառնում են տաղանդավոր զորավարի ռազմական գործունեության հիմնական փուլերը: Տասնութ տարեկան հասակում (1915 թ.) Հ. Ք. Բաղրամյանը կամավոր համալրում է ռուսական էքսպեդիցիոն կորպուսը, որի կազմում և Պարսկաստանի վրայով մեկնում է ռազմաճակատ՝ կռվելու թուրքական զորքի դեմ: Մարտադաշտում, թշնամու դեմ մղված կռիվներում զինվոր Հ. Բաղրամյանի ցուցաբերած հնարամտությունն ու քաջագործությունները չեն վրիպում հրամանատարության ուշադրությունից. նրան ուղարկում են Թիֆլիս՝ սովորելու պրապորշչիկների դըպրոցում:

Դասընթացն ավարտելուց հետո Հ. Բաղրամյանին նշանակում են դասակապետ՝ հայկական 3-րդ գնդում, որը գտնվում էր Կովկասյան ռազմաճակատի Խոյ-Ուրմիա հատվածում: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի լուրը հասնում է հեռավոր ռազմի դաշտ: Ջգայուն, հոգատար էր երիտասարդ սպան ենթակաների նկատմամբ և շատ շուտով վայելում է զինվորների սերն ու համակրանքը: Զորամասի անձնակազմը Հ. Բաղրամյանին ընտրում է զինվորական կոմիտեի կազմում:

Առաջին էսկադրոնի հեծյալ հետախույզների դասակի հրամանատար Հ. Բաղրամյանը 1918 թ. Կարսից մեկնում է Էրզրում: Մայիսին Սարդարապատի ճակատամարտում հայ զորականները փակում են թուրք ոսոխների առաջխաղացման ճանապարհը դեպի Երևան ու Էջմիածին, ետ մղում նրանց դեպի Ալեքսանդրապոլ: Այդ կռվում աչքի է ընկնում նաև Հ. Բաղրամյանի հեծյալ հետախուզական դասակը:

...Հ. Բաղրամյանի կյանքի բեկումնային շրջանն են 1918—1920 թվականները: Այդ մղձավանջային տարիներին նա սթափ է գնահատում ստեղծված հասարակական-քաղաքական վիճակը և հարում է նրանց, ովքեր պայքարում էին հայ ժողովրդի ազատագրության, սովետական պետության ստեղծման համար: Եվ պատահական չէ, որ 1920 թվականին, երբ Հայաստանում բռնկվել էր Մայիսյան ապստամբությունը, Հ. Բաղրամյանն անցնում է ապստամբների կողմը:

Սովետական Հայաստանի ստեղծման առաջին տարիներին Հ. Բաղրամյանը աշխատել է ՀՍՍՀ ռազմական գործերի ժողկոմատի շտաբում: Երկու ժողկոմների, սկզբում Ալ. Մյաս-

նիկյանի, ապա Հ. Բժշկյանի ղեկավարությամբ նրա գործունեության ժամանակաշրջանը դարձավ շտաբային օպերատիվ աշխատանքի փորձ ձեռք բերելու առաջին դպրոցը: Կարմիր բանակի այդ ականավոր զորավարները նրա համար եղել են ընդօրինակման տիպար:

Քսանհինգ տարեկան հասակում Հ. Բաղրամյանը նշանակվում է հայկական հրաձգային դիվիզիայի հեծյալ գնդի հրամանատար, այդ պատասխանատու աշխատանքում դրսևորելով հրամանատարական ունակություններ, կազմակերպչական ձիրք, զինվորներին ուսուցանելու հմտություն:

Լենինգրադի բարձրագույն հեծելազորային դպրոցն ավարտելուց հետո վերադառնալով գունդ՝ նա նորագույն հիմունքներով է վարում զորախաղերը, դաշտային պարապմունքները, օրինակելիորեն կազմակերպում հրամանատարների ու բանակայինների ուսուցումն ու քաղաքական դաստիարակությունը:

1931 թվականին նա մեկնում է Մոսկվա՝ ուսանելու Մ. Վ. Ֆրունզեի անվան զինվորական ակադեմիայում: Սովետական հրամանատարական կազմի պատրաստման նշանավոր դարբնոցում Բաղրամյանն ուսումնասիրում է ժամանակակից ռազմական արվեստը, մարքս-լենինյան տեսությունը: Գերազանցության դիպլոմով ավարտելով ակադեմիան, Հ. Բաղրամյանը նշանակվում է հեծյալ դիվիզիայի շտաբի պետ՝ Կիևի հատուկ զինվորական օկրուգում: 1936 թվականին նա նորաստեղծ Կարմիր բանակի գլխավոր շտաբի ակադեմիայի առաջին ունկնդիրներից է, որոնցից շատերը հետագայում դարձան ճանաչված զորավարներ: Ուսումն ավարտելուց հետո նրան թողնում են տեղում՝ որպես ավագ դասախոս:

1940 թվականի կեսերին Բաղրամյանը նշանակվում է 12-րդ բանակի շտաբի օպերատիվ բաժնի պետ, ապա՝ Կիևի հատուկ զինվորական օկրուգի շտաբի պետի տեղակալ և օպերատիվ բաժնի պետ: 1941 թվական, գարուն: Կիևից Տերնոպոլ է փոխադրվում օկրուգի դաշտային հրամանատարական կետը: Ահա թե ինչ է գրել այդ օրերի մասին ինքը՝ Հ. Ք. Բաղրամյանը. ««Մենք այնքան էլ անհոգ չէինք, ինչպես ոմանք պնդում էին վերջերս... Կուսակցությունը մեր երկիրը նախապատրաստում էր հասունացող ռազմական վտանգից պաշտպանելու համար, ակտիվ պաշտպանության համար»:

Սկսվում է Հայրենական մեծ պատերազմը. Կիևի զինվորական օկրուգը վերածվում է Հարավ-արևմտյան ռազմաճակատի: Սկսվում է գնդապետ Հովհաննես Բաղրամյանի պատերազմական կյանքը, որը տևում է 1.418 օր:

...Հակառակորդի գերակշռող ուժերի դեմ արիաբար են կռվում Հարավ-արևմտյան ռազմաճակատի զորամիավորումները: Օպերատիվ բաժինը, Հ. Բաղրամյանի գլխավորությամբ, ամեն միջոց գործադրում է ժամանակին ապահովելու ստորաբաժանումների ռազմական գործողությունների կոորդինացումը, սերտ կապ հաստատելու հարակից միավորումների միջև, հետևելու վերադաս հրամանատարության կարգադրությունների կատարմանը:

Ծանր մարտեր են մղվում Կիևի պաշտպանության համար: Հ. Բաղրամյանը ռազմաճակատի դժվարին հատվածներում միշտ կատարում է ռազմաճակատի հրամանատարի ու Կարմիր բանակի գլխավոր շտաբի առաջադրանքները: Նրան շնորհվում է գեներալ-մայորի կոչում: Պատերազմական այդ ծանր օրերին նա ընդունվում է կուսակցության շարքերը:

Քառասունմեկ թվականի վերջերին հարավ-արևմտյան ուղղությամբ գործող զորքերից ըստեղծվում է հարվածային շարժուն զորախումբ, որի հրամանատար է նշանակվում գեներալ Ֆ. Յա. Կոստենկոն, շտաբի պետ՝ Բաղրամյանը: Զորախմբի առջև խնդիր է դրվում՝ հակառակորդին հակահարված տալ Ելեց քաղաքի շրջանում: Զորամիավորումը հաջողությամբ է կատարում մարտական առաջադրանքը, հարևան բանակի հետ ջախջախում է Ելեցի շրջակայքում գործող հիտլերականների ուժերը:

1942 թվականի գարնանը Հ. Բաղրամյանը նշանակվում է հարավ-արևմտյան ուղղությունում գործող սովետական զորքերի օպերատիվ խմբի պետ: Այդ տարվա ամռանը հակառակորդը մեծ ուժեր կենտրոնացնելով սովետա-գերմանական ռազմաճակատի հարավ-արևելյան ուղղությամբ, ձգտում էր զավթել Վոլգայի շրջանը, շարժվել դեպի Կովկասյան լեռները: Մարտական գործողություններ էին տեղի ունենում Մոսկվայի մատույցներում: Գերագույն գլխավոր հրամանատարի տեղակալ Գ. Կ. Ժուկովի առաջարկությամբ գեներալ-լեյտենանտ Բաղրամյանը նշանակվում է արևմտյան ռազմաճակատի 16-րդ բանակի հրամանատար, որի զորքերը համառ մարտեր են ծավալում թշնամու դեմ, հուժկու հարվածներով հարկադրում ֆաշիստներին՝ թողնել իրենց դիրքերը, նահանջել: Մարտերում 16-րդ բանակի զորամասերը ցույց են տալիս հարձակողական կռիվներ վարելու հիանալի օրինակ, բարձր կազմակերպվածություն, զորքերի բոլոր տեսակների համագործակցությամբ թշնամուն խորտակիչ հարված հասցնելու վարպետություն: Մարտական առաջադրանքի փայլուն կատարման համար 16-րդ բանակը վերանվանվում է 11-րդ գվարդիական բանակ. գեներալ-լեյտենանտ Հ. Բաղրամյանը պարգևատրվում է Կուտուզովի 1-ին աստիճանի շքանշանով:



Կուրսկի ճակատամարտում սովետական ռազմիկներն իրենց սխրանքներով փառահեղ էջեր գրեցին Մեծ հայրենականի պատմության մեջ: 1943 թվականի հուլիսի 12-ին հարձակման անցած 11-րդ գվարդիական բանակի զորամիավորումները կոտրում են հակառակորդի զորագնդերի համառ դիմադրությունը, ստիպում նրանց նահանջել: Բանակի դիվիզիաները, մեծ կորուստ պատճառելով հիտլերականներին, հինգ օրում առաջ են շարժվում 70 կիլոմետր, ապա շարունակում կրնկակոխ հետապնդել թշնամուն:

Մարտական օպերացիաներում բանակի գործողությունները փայլուն ղեկավարելու համար Հ. Բաղրամյանին շնորհվում է գեներալ-գընդապետի կոչում:

Քառասուներեքի երկրորդ կեսին Բաղրամյանը նշանակվում է Մերձբալթյան 1-ին ռազմաճակատի հրամանատար: Գերագույն գլխավոր հրամանատարությունը մարտական խնդիր է դնում այդ ռազմաճակատի առջև՝ ջախջախել հակառակորդի Գորոդոկյան զորախումբը և ապա գրավել Վիտեբսկը: Այդ ժամանակ նրան շնորհվում է բանակի գեներալի կոչում: Ստանձնելով ռազմաճակատի հրամանատարությունը՝ Հ. Բաղրամյանը ռազմաճակատի ռազմական խորհրդի անդամ Դ. Լեոնովի, շտաբի պետ, գեներալ Վ. Կուրասովի հետ կազմում է մարտական գործողությունների պլան: 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը հարձակման են անցնում 1943 թ. վերջերին: Հակառակորդը նոր ուժեր է կենտրոնացնում պաշտպանության առաջին գծում և համառորեն դիմադրում է: Հ. Բաղրամյանի կարգադրությամբ հրետանավորները թշնամու վրա կրակի տարափ են տեղում մեծ տրամաչափի թնդանոթներից:

Մի քանի օրվա հարձակողական մարտերի ընթացքում 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը ճեղքում են հակառակորդի ուժեղ ամրացված պաշտպանությունը, ազատագրում 500 բնակավայր: Առաջապահ զորամիավորումները սրընթաց հարձակումով գրավում են Վիտեբսկի ուղղությամբ հակառակորդի պաշտպանության կարևոր հենակետ Գորոդոկ քաղաքը և երկաթուղային խոշոր կայարանը, որով և խզվում է թշնամու զինված ուժերի «Հյուսիս» և «Կենտրոն» խմբավորումների կապը:

1944 թվականին սովետական զինված ուժերի առջև խնդիր դրվեց՝ լիովին ազատագրել հայրենի հողը ֆաշիստական զավթիչներից, օգնության ձեռք մեկնել հիտլերյան լծի տակ հեծող ժողովուրդներին: 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը, ջախջախելով հակառակորդի զորամիավորումները, անցնում են Արևմտյան Դվինա գետի ձախ ափը: Մարտական առաջադրանքներն օրինակելիորեն կատարելու և այդ ժամանակ ցուցաբերած խիզախության ու արիության համար 1944-ի հուլիսի 29-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը բանակի գեներալ Հովհաննես Բաղրամյանին շնորհեց Սովետական Միության հերոսի կոչում:

Բելոռուսիան ազատագրելուց հետո, 1944 թ. ամռանը 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը մարտական գործողությունները շարունակում են Շաուլյայ—Ելգավա ուղղությամբ: 1944 թ. հոկտեմբերի 15-ին ազատագրվում է Լատվիայի մայրաքաղաքը: Մի քանի ամիս անց ազատագրվում են Մերձբալթյան հանրապետությունները:

Պրուսական ռեակցիայի միջնաբերդի՝ Քյոնիգսբերգի գրոհումն ու գրավումը Հ. Բաղրամյանի զորավարական արվեստի վառ դրսևորումն էր: 1-ին Մերձբալթյան ռազմաճակատը վերակազմվում է Զեմլանդյան զորախմբի, որի հրամանատար է նշանակվում բանակի գեներալ Հ. Բաղրամյանը: Նրա մտահղացմամբ մշակվում է Քյոնիգսբերգ բերդաքաղաքի գրավման պլանը: 1945 թ. ապրիլի 5-ին սկըսվում է գրոհը: Գործում են հրետանին, ավիացիան, հետևակը: Քաջաբար կռվող կարմիրբանակայինները Քյոնիգսբերգում են: Երեքօրյա համառ մարտերը ապրիլի 9-ին պսակվում են սովետական զորքերի հաղթանակով: Գրավված էր գերմանացիների ստրատեգիական կարևոր պատվարը Բալթիկ ծովում: 134 հազարանոց կայազորից 42 հազարը սպանվել, մնացածները գերվել են:

Քյոնիգսբերգից հետո պետք էր ջախջախել հակառակորդի զինված ուժերը Զեմլանդյան թերակղզում: Բանակի գեներալ Հ. Բաղրամյանը նշանակվում է 3-րդ բելոռուսական ռազմաճակատի հրամանատար:

1945 թ. մայիսի 5-ն է: 3-րդ բելոռուսական ռազմաճակատի զորքերը ֆաշիստական զորքերի մնացորդներին դուրս են քշում Լանգխակին, Շելմյուլ, Շմերգել, Շուլանդ բնակավայրերից: Թշնամին խուճապահար նահանջում է: Հ. Ք. Բաղրամյանը, իր օգնականների հետ միասին, կազմում է Վիսլայի գետաբերանին գտնվող գերմանացի գեներալներին, սպաներին ու զինվորներին ուղղված վերջնագիրը, որով առաջարկվում է անմիջապես զենքը վար դնել, դադարեցնել ռազմական գործողությունները:

Այնուհետև գրքի հեղինակը նշում է, որ Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից հետո Հովհաննես Բաղրամյանը նշանակվեց Մերձբալթյան զորքերի զինվորական օկրուգի հրամանատար, գլխավոր շտաբի ռազմական ակադեմիայի պետ, ՍՍՀՄ պաշտպա-

նության մինիստրի տեղակալ: 1955 թվականին Բաղրամյանին շնորհվում է Սովետական Միության մարշալի կոչում, իսկ ծննդյան 80-ամյակի կապակցությամբ նա պարգևատրվում է Լենինի շքանշանով և «Ոսկե աստղ» երկրորդ մեդալով: Այժմ մարշալ Բաղրամյանը պաշտպանության մինիստրության գլխավոր տեսուչների ավագն է:

Գրքում լուսաբանված է նաև մարշալ Բաղրամյանի գիտական, հասարակական-քաղաքական գործունեությունը: Տաղանդավոր զորավարի գրչին են պատկանում ռազմական արվեստի տեսությանը նվիրված ուսումնասիրություններ, պատմական ու հրապարակախոսական գրքեր ու հոդվածներ:

Մարշալ Հ. Բաղրամյանը ջերմ ընկերական ու մարտական կապեր է պահպանել մեր ժամանակի նշանավոր զորավարներ Ս. Տիմոշենկոյի, Գ. Ժուկովի, Ա. Վասիլևսկու, Կ. Ռոկոսովսկու, Ի. Իսակովի, Ի. Կոնևի, Լ. Գովորովի հետ: Նա նրանց կողքին, կոմունիստական կուսակցության առաջնորդությամբ, սովետական զորքերին գրոհի է տարել հիտլերյան զավթիչների դեմ՝ հանուն մեր հայրենիքի ազատության ու անկախության:

Մարշալը վայելում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների սերն ու համակրանքը, ժողովուրդներ, որոնց զավակները նրա հրամանատարության ներքո գործող զորամիավորումների շարքերում ուս-ուսի տված մարտնչել են ոսոխի դեմ: Նա ընտրվել է Լատվիական ՍՍՀ Գերագույն սովետի և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ: 1946 թվականից ընտրվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի բոլոր գումարումների դեպուտատ:

ՍՄԿԿ XIX և XX համագումարներում Հ. Բաղրամյանն ընտրվել է ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, իսկ XXII—XXV համագումարներում՝ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ:

Սովետական Միության մարշալ Հ. Ք. Բաղրամյանը անող սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակության կազմակերպիչներից է, այդ գործի կրքոտ ջատագովը: Իր դասախոսություններում, հրապարակային ելույթներում, գրույցներում փառաբանված զորավարը մշտապես կոչ է անում՝ աչքի լույսի պես պահպանել մեծ Հոկտեմբերի նվաճումները, անդուլ ամրապնդել մեր հայրենիքի պաշտպանունակությունը:

Գրախոսվող մենագրությունը պատշաճ ընդունելություն կգտնի ընթերցողների շրջանում:

---

# «Լենինյան ուղիով» ամսագրի 1978 թ. համարներում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ (ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՎՈՐՄԱՆ 150-ԱՄՅԱԿԸ)









## ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ

(Հանրապետական գիտագործնական կոնֆերանսի նյութերը)



## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐՈՎ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՆՆ էջ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ՈՒ ՊՐԱԿՏԻԿԱ









### ՄՐՑՈՒԹՅՈՒՆ. ՓՈՐՁ ԵՎ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՍՈՑԻԱԼԻԶՄ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔ



### ԸՆԴԴԵՄ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԿԱՊԵՐԸ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ





Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 07844 Պատվեր 2396 Թղթի չափսը 70×108¹/₁₆ Տիրաժ 15.600 Գինը՝ 20 կոպ.:
Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 24/XI-1978 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ուղևորությունը Սիբիր և Հեռավոր Արևելք (1978 թվականի մարտ—ապրիլ): «Հայաստան» հրատ., 1978:

ՀՍՍՀ գործող օրենսդրության համակարգված ժողովածու: Հատված 1: Հասարակական և պետական կառուցվածքի վերաբերյալ օրենսդրություն: Գիրք 1: Հ. 1: «Հայաստան» հրատ., 1978:

Լ. ՄԻՐԶՈՅԱՆ— Վիկտոր Համբարձումյան: «Հայաստան» հրատ., 1978:

Ջ. ՂԱՍԱԲՅԱՆ— Հայ-բուլղարական բարեկամության պատմությունից: «Հայաստան» հրատ., 1978:

Գ. ԳԵՂԱՄՅԱՆ— Սոցիալ-տնտեսական փոփոխությունները Հայաստանում ՆԷՊ-ի տարիներին: Ե., ԳԱ հրատ., 1978:

Հ. ՍԵՎՈՅԱՆ— Սոցիալիստական մրցությունը որպես տնտեսական օրենք: Ե., «Գիտելիք» հրատ., 1978:

Կ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Ճարտարապետական հուշարձանների վերանորոգումը Սովետական Հայաստանում: «Հայաստան» հրատ., 1978:

Ս. ԱՎԱԳՅԱՆ— Հայ ազգագրություն և բանահյուսություն: Ե., ԳԱ հրատ., 1978:

Ռ. ՆԱՆՈՒՄՅԱՆ— Ստեփանոս Նազարյան: Կյանքը և գործունեությունը: Ե., ԳԱ հրատ., 1978:

Մ. ՇԻՄՇԱՐՅԱՆ— ՍՍՀՄ պատմության աղբյուրագիտություն (1800—1917 թթ.): ԵՊՀ հրատ., 1978:

Ս. ԶԱՐԵՆՑ— Զարենցի ձեռագրերի աշխարհում: Ե., ԳԱ հրատ., 1978:

Ռ. ՈՒՌՈՒՏՅԱՆ— Կիբեռնետիկան և լեզվաբանությունը: «Գիտամասսայական սերիա»: Ե., ԳԱ հրատ., 1978:

Л. И. БРЕЖНЕВ—**Актуальные вопросы идеологической работы КПСС.** Т. 2. М., Политиздат, 1978.

В. ЩЕРБИЦКИЙ—**Избранные речи и статьи.** М., Политиздат, 1978.

А. ПЕЛЬШЕ—**Избранные речи и статьи.** М., Политиздат, 1978.

О. СОЛОВЬЕВ—**Триумф Ленина и банкротство его критиков.** М., Политиздат, 1978.

П. УКРАИНЕЦ—**Боевое оружие партии.** Некоторые вопросы теории и практики устной политической агитации. М., Политиздат, 1978.

В. ШЕВЦОВ—**Государство развитого социализма.** М., Политиздат, 1978.

Л. ОЗЕРОВ—**Дело трудящихся всех стран.** Международная солидарность трудящихся СССР и зарубежных стран в период строительства социализма в СССР. М., Политиздат, 1978.

К. ТАРАСОВ— **Тайная война империализма США в Латинской Америке.** М., Политиздат, 1978.

В. ДМИТРЕНКО, Л. МОРОЗОВ, В. ПОГУДИН — **Партия и кооперация.** М., Политиздат, 1978.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿՈՆՏԱԿՏԱՅԻՆ ՈՍՊՆՅԱԿ

Ադրբեջանի ակնաբուժության գիտահետազոտական ինստիտուտին կից ստեղծված տեսողության կոնտակտային շտկման լաբորատորիան ընդունեց առաջին այցելուին։ Այստեղ հավաքում և պատրաստում են կոնտակտային ոսպնյակներ, որոնք փոխարինում են խիստ կարճատեսության և տեսողության այլ լուրջ խանգարումների ժամանակ օգտագործվող ակնոցներին։ Դրանք ուղղակի «հագնում են» եղջերաթաղանթի վրա։

Լաբորատորիայի մասնագետները որոշ ժամանակ օգնում են հիվանդներին հարմարվելու անսովոր ոսպնյակին, տալիս խորհուրդներ, սահմանում դիսպանսերային հսկողություն։ Մինչև հնգամյակի վերջը նման լաբորատորիաներ կբացվեն նաև Կիրովաբադում, իսկ տեսողության կոնտակտային շտկման կաբինետներ՝ Նախիջևանում և Ստեփանակերտում։

## ՈՒԼՏՐԱՄԱՆՈՒՇԱԿԱԳՈՒՅՆ ԼՈՒՍԱՐԿԻՉ

Սերմերի, հանքաքարերի, քիմիկատների տարրալուծում կարելի է կատարել ուլտրամանուշակագույն լուսարկիչի օգնությամբ։ Այն ստեղծել են Լենինգրադի ֆիզիկատեխնիկական տեխնիկումի ուսանողները։ Որպես գլխավոր բանող մաս այստեղ օգտագործվում է սնդիկակվարցային լամպը՝ УФС—6 լուսաֆիլտրով։ Դրա միջոցով կարելի է որոշել սերմի ծլունակության տոկոսը, բույսերի կամ անասունների մաշկի վրա մանրէների առկայությունը։ Եթե սարքի լուսավորված սեղանին դնենք նյութի կամ չափանմուշի որևէ լուծույթով լցված փոքրիկ վաննա, ապա հնարավոր կլինի տարրալուծել առկա քիմիական տարրերը։ Նման լուսարկիչը կիրառվում է ինչպես լաբորատորիաներում, նույնպես և գործարանային արտադրամասերում։

## ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ՓՐՓՐԱՄԱՐԻՉ

Կենցաղում և արտադրության մեջ լվացքի, հրդեհամարման, հանքերի հարստացման համար լայնորեն կիրառվում են բազմազան փրփուրներ։ Վերջերս Սոֆիայի քիմիական և կաուչուկի արդյունաբերության գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է բարձրմոլեկուլային միացություն՝ «Վերին—Տ» պատրաստուկը։

Փորձերը ցույց են տվել, որ այն լիովին փոխարինում է արտասահմանյան պատրաստուկներին, չի հարուցում կոռոզիա, չի աղտոտում շրջակա միջավայրը և դյուրավառ չէ։ Սոֆիայի քիմիական «Վերիլա» կոմբինատում «Վերին—Տ»-ի արտադրության համար հարկ չեղան ներդնել նոր սարքեր և լրացուցիչ կապիտալ միջոցներ։ Այժմ այն լիովին բավարարում է երկրի պահանջարկը, սակայն նախապատրաստվում է ընդլայնել «Վերին—Տ»-ի արտադրությունը, քանի որ պատրաստուկը հետաքրքրել է նաև այլ երկրներին՝ ՍՍՀՄ-ին, Լեհաստանին, Չեխոսլովակիային, Ֆինլանդիային։ «Վերին—Տ»-ն կիրառվում է պարարտանյութերի արտադրության մեջ, բայց այժմ մշակվում են պատրաստուկներ արդյունաբերության այլ ճյուղերի համար։

## ԵՐԿՆԱՔԵՐԵՐ՝ ԲԱՐՁԵՐԻ ՎՐԱ

ԳՖՀ-ում ամենաբարձր շենքի՝ Մայնի Ֆրանկֆուրտի վարչական շենքի (166 մետր) կառուցման ընթացքում կիրառվել է հիմքը գցելու յուրօրինակ եղանակ։ Թույլ բնահողը (ավազ, մանրախիճ և կավ) բացառում է հենասյուներ խփելու ավանդական մեթոդը։ Շենքի հիմքում գրվեց խոր փոսորակում ձուլված 4 մետր հաստությամբ երկաթբետոնե հոծ սալիկ։ Շենքի բարձրության աճին համապատասխան՝ դրա ծանրության կենտրոնը տեղաշարժվում է։ Որպեսզի այդ ընթացքում սալիկը չծռվի, նրա տակ պարագծով տեղադրվել է ջրով լի պլաստիկական 22 մեծ բարձ։ Բարձերի փականների միջոցով թափվում է ջրի մի մասը՝ թեքվելու դեպքում շենքը հավասարեցնելու համար։ Շինարարության ավարտին հիմքը տվել է 20 սմ նստվածք։